Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

8
ՕԳՈՍՏՈՍ
1986 Թ.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ
ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ
ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ԼՈՒՅՍ Է
ՏԵՍՆՈՒՄ
ԱՄԻՍԸ ՄԵԿ
ԱՆԳԱՄ
ՀԱՅԵՐԵՆ
ԵՎ
ՌՈՒՍԵՐԵՆ

## Բովանդակություն



ՀԱՅԱՍՏԱՆԻ
ԿՈՄԿՈՒՍԻ
ԿԵՆՏԿՈՄԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

ԵՐԵՎԱՆ

**Խմբագրության հասցեն՝**

*375023, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա № 2*

**ՀԵՌԱԽՈՍՆԵՐ**

| | |
|---|---|
| գլխավոր խմբագիր | 52—89—93 |
| գլխավոր խմբագրի տեղակալ | 52—99—06 |
| պատասխանատու քարտուղար | 52—99—22 |
| պատասխանատու քարտուղարի տեղակալ | 56—59—93 |

**Բաժիններ**

| | |
|---|---|
| մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի | 52—05—58 |
| կուսակցական կյանք | 52—25—43 |
| սոցիալ-տնտեսական պրոբլեմների | 52—57—56 |
| գիտության և կուլտուրայի | 52—99—34 |
| գրական աշխատողներ | 52—66—77 |
| | 56—59—94 |
| թողարկիչ, սրբագրիչ | 53—86—11 |
| | 52—99—36 |




# ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

1986 թվականի հուլիսի 10-ին տեղի ունեցավ Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի պլենումը:

Պլենումը քննարկեց «ՍՄԿԿ Կենտկոմի 1986 թվականի հունիսյան պլենումի արդյունքները և հանրապետական կուսակցական կազմակերպության խնդիրները տասներկուերորդ հնգամյակի տնտեսական և սոցիալական զարգացման պլանների իրականացման ուղղությամբ» հարցը:

Զեկուցումով հանդես եկավ Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի առաջին քարտուղար ընկեր Կ. Ս. Դեմիրճյանը:

Զեկուցման շուրջը ծավալված մտքերի փոխանակությանը մասնակցեցին ՀԿԿ Երևանի քաղկոմի առաջին քարտուղար ընկ. Լ. Գ. Սահակյանը, բանվորուհի ընկ. Մ. Թ. Մկրտչյանը, Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի նախագահի առաջին տեղակալ, հանրապետության պետպլանի նախագահ ընկ. Վ. Մ. Մովսիսյանը, ՀԿԿ Կիրովականի քաղկոմի առաջին քարտուղար ընկ. Հ. Ա. Օհանյանը, ՀԿԿ Իջևանի շրջկոմի առաջին քարտուղար ընկ. Զ. Գ. Անանյանը, Կալինինոյի շրջանի Կալինինի անվան սովխոզի բանվոր ընկ. Պ. Զ. Կոնովալովը, ՀԿԿ Սևանի շրջկոմի առաջին քարտուղար ընկ. Ֆ. Ա. Մելքումյանը, Հայկական ՍՍՀ թեթև և փայտամշակման արդյունաբերության մինիստր ընկ. Ս. Խ. Օհանյանը, ՀԿԿ Ապարանի շրջկոմի առաջին քարտուղար ընկ. Ճ. Հ. Ալեքսանյանը, Մեղրու շրջանի Լեհվազ գյուղի կոլտնտեսության կթվորուհի ընկ. Թ. Հ. Համիդովան, Հայկական ՍՍՀ հացամթերքների մինիստր ընկ. Ռ. Թ. Ծաղբազյանը, ՀԿԿ Արագածի շրջկոմի առաջին քարտուղար ընկ. Զ. Գ. Գևորգյանը, «Նաիրիտ» գիտաարտադրական միավորման կուսկոմիտեի քարտուղար ընկ. Հ. Ա. Հախինյանը, Հայկական ՍՍՀ պրոֆտեխկրթության պետական կոմիտեի նախագահ ընկ. Հ. Ս. Քոթանջյանը, Լենինականի Մայիսյան ապստամբության անվան բամբակագործվածքային արտադրական միավորման գլխավոր դիրեկտոր ընկ. Ա. Թ. Աղուզումցյանը:

Եզրափակման խոսքով պլենումում հանդես եկավ Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը:

Քննարկված հարցի առթիվ պլենումն ընդունեց որոշում:

Պլենումը քննարկեց և հավանություն տվեց Հայկական ՍՍՀ տասնմեկերորդ գումարման Գերագույն սովետի երրորդ նստաշրջանի անցկացման հետ կապված կազմակերպական հարցերի վերաբերյալ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոյի առաջարկություններին:

Պլենումը քննարկեց կազմակերպական հարց:

Պլենումը ընկ. Վ. Բ. Ղալումյանին ազատեց ՀԿԿ Կենտկոմի քարտուղարի և բյուրոյի անդամի պարտականություններից, այլ աշխատանքի անցնելու կապակցությամբ:

ՀԿԿ Կենտկոմի քարտուղար և բյուրոյի անդամ ընտրվեց ընկ. Թ. Ա. Դիլանյանը, որն աշխատում էր ՍՄԿԿ Կենտկոմի հրահանգիչ:

Դրանով պլենումը ավարտեց աշխատանքը:

# ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ 1986 ԹՎԱԿԱՆԻ ՀՈՒՆԻՍՅԱՆ ՊԼԵՆՈՒՄԻ ԱՐԴՅՈՒՆՔՆԵՐԸ ԵՎ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ԽՆԴԻՐՆԵՐԸ ՏԱՍՆԵՐԿՈՒԵՐՈՐԴ ՀՆԳԱՄՅԱԿԻ ՏՆՏԵՍԱԿԱՆ ԵՎ ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՊԼԱՆՆԵՐԻ ԻՐԱԿԱՆԱՑՄԱՆ ՈՒՂՂՈՒԹՅԱՄԲ

## Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկեր Կ. Ս. ԴԵՄԻՐՃՅԱՆԻ զեկուցումը ՀԿԿ Կենտկոմի պլենումում

Ընկերնե՛ր:

Հանրապետության, ինչպես մեր ամբողջ երկրի հասարակական-քաղաքական կյանքն ընթանում է ՍՄԿԿ XXVII պատմական համագումարի որոշումների չթուլացող ներգործության ներքո:

Համագումարից հետո անցած ժամանակաշրջանը ցույց տվեց այդ որոշումների ճշտությունն ու համապատասխանությունը մեր ապրած ժամանակի բեկումնային բնույթին: Սովետական հասարակությունը շարժման մեջ է բոլոր ոլորտներում. քաղաքական, տնտեսական, հոգևոր: Տեղի է ունենում վերակառուցում: Համագումարի գաղափարները հաստատ մուտք են գործում մեր մարդկանց հասարակական գիտակցության մեջ, նրանք վճռականորեն հանդես են գալիս այն բանի օգտին, որ վերակառուցումն ընդգրկի կենսագործունեության բոլոր ոլորտները և կրի գործարար բնույթ:

Հունիսի 16-ին տեղի ունեցավ ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը, որը ելնելով ներքին խնդիրներից և արտաքին պայմաններից, քննարկեց երկրի տնտեսական ու սոցիալական զարգացման տասներկուերորդ հնգամյակի պլանի հանգուցային հարցերը: Պլենումում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Մ. Ս. Գորբաչովի զեկուցման մեջ խոր ու համակողմանի վերլուծության հիման վրա ցույց է տրված, թե ինչպես է կենսագործվում երկրի սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու և խաղաղությունն ամրապնդելու ՍՄԿԿ XXVII համագումարի նախանշած գիծը, համագումարի են բերված ետհամագումարյան աշխատանքի արդյունքները: Առնվել են վերակառուցման առաջին դասերը, որոշվել են կուսակցության հերթական խնդիրները: Ամփոփված են քաղաքական կոնսուլտատիվ կոմիտեի Բուդապեշտի խորհրդակցության արդյունքները:

Պլենումի որոշումները կուսակցական կազմակերպություններին զինում են ՍՄԿԿ XXVII համագումարի կանխագծումների հաջող կենսագործման հստակ ծրագրով:

Պլենումը միահամուռ ընդունեց Սովետական Միության աշխատավորներին ուղղված ՍՄԿԿ Կենտկոմի դիմումը՝ տասներկուերորդ հնգամյակի պլանների կա-

* Տպագրվում է կրճատումներով:



տարման ու գերակատարման համար համաժողովրդական սոցիալիստական մրցություն ծավալելու մասին:

Մեր հանրապետության կոմունիստները, բոլոր աշխատավորները, ինչպես բոլոր սովետական մարդիկ, ամբողջությամբ ու լիովին հավանություն են տալիս ՍՄԿԿ Կենտկոմի 1986 թվականի հունիսյան պլենումի որոշումներին, ՍՍՀՄ տասնմեկերորդ գումարման Գերագույն սովետի հինգերորդ նստաշրջանի արդյունքներին, լի են վճռականությամբ՝ կենսագործելու արագացման ստրատեգիան, ակտիվորեն աշխատելու կուսակցության կանխանշած նոր վիթխարի պլանների իրագործման համար:

## I

1986 թվականի հունիսյան պլենումը պահանջեց մեր մտահղացումներն ու պլանները մշտապես համադրել կյանքի ռեալ ընթացքի հետ, որոշել, թե մտահղացումների էներգիան ինչպես վերածել գործողությունների էներգիայի:

Կուսակցության համագումարից հետո կատարված աշխատանքի առաջին արդյունքները ցույց են տալիս, որ ինչպես ամբողջ երկրում, այնպես էլ մեր հանրապետությունում ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թվականի ապրիլյան պլենումի, կուսակցության XXVII համագումարի որոշումները խոր ազդեցություն են ունեցել ինչպես տնտեսական, սոցիալական ու քաղաքական կյանքի, այնպես էլ մասսաների ստեղծագործության՝ արագացման գլխավոր նախապայմանի, զարգացման վրա: Համագումարից հետո ստեղծված պահանջկոտության, խստապահանջության, ճշմարտացիության մթնոլորտը մոբիլիզացնող ներգործություն է ունենում պրակտիկ գործերի վրա:

Ընթացիկ տարվա 6 ամսում ապրանքային արտադրանքի իրացման պլանը կատարվել է 101,8 տոկոսով, արտադրության ծավալն աճել է 5 տոկոսով: Տեղաշարժեր կան նաև ագրոարդյունաբերական համալիրում: Առաջին կիսամյակում պետությանը վաճառվել է 3,6 տոկոսով ավելի կաթ, 13,4 տոկոսով՝ միս, 5,9 տոկոսով՝ ձու: Ընդլայնվել է կապիտալ շինարարությունը, արագացել են ապրանքաշրջանառության, բնակչության սպասարկման ծավալների աճի տեմպերը: Կոնկրետ քայլեր են արվել կենսագործունեության բոլոր ոլորտներում կուսակցության առաջադրած նոր խնդիրների իրագործման ճանապարհին:

Այս ամենը վատ չէ, սակայն մեզ բավարարել չի կարող: Չի կարող, նախ և առաջ, այն պատճառով, որ ժողովրդական տնտեսության մի շարք ճյուղերում աճի ձեռք բերված տեմպերը, չնայած գերազանցում են պլանային ցուցանիշները, սակայն ավելի դանդաղ են, քան մենք կարող էինք ունենալ և անցյալում ունեցել ենք: Երկրորդ՝ ամենուրեք չէ, որ արտադրության մեջ և սոցիալական ոլորտում տեղի են ունենում այն որակական վերափոխումները, որոնց անհրաժեշտությունն ընդգծվեց կուսակցության համագումարում:

Ինչպես նշվեց հունիսյան պլենումում, մենք թևակոխել ենք ետհամագումարյան գործունեության մի այնպիսի փուլ, երբ պարտավոր ենք ցույց տալ վերակառուցվելու և կառուցելու, նոր ձևեր ու մեթոդներ որոնելու, ձեռք բերվածով ոչ մի րոպե չհրապուրվելու կարողություն:

Տասներկուերորդ հնգամյակը վճռական փուլ է կուսակցության տնտեսական ստրատեգիայի իրագործման ճանապարհին: Մեր առջև ծառանում են երկրի կյանքի բեկումնային ժամանակաշրջանի բարդ ու մասշտաբային խնդիրները: Ուստի և անհրաժեշտ է, որ մենք քննադատաբար գնահատենք մեր աշխատանքի արդյունքները, մեր նվաճումները, բացահայտենք ժողովրդական տնտեսության ճյուղերում, առանձին ուղղություններում ետ մնալու և առկա թերությունների պատճառները, հստակորեն որոշենք հետագա առաջընթացի հնարավորությունները: Տասներկուերորդ հնգամյակը դինամիկ, բարձրարդյունավետ, գիտատեխնիկական առաջադիմության նկատմամբ առավելագույն չափով զգայուն էկոնոմիկայի անհրաժեշտաբար անցնելու հնգամյակ է: Դա հանրային աշխատանքի արտադրողականության շեշտակի բարձրացման, ռեսուրսների տնտեսման, թողարկվող արտադրանքի և կատարվող աշխատանքների որակի արմատական բարելավման հնգամյակ է:

Սոցիալ-տնտեսական զարգացման տեմպերը, ժողովրդի բարեկեցության մակարդակը կախված կլինեն այն բանից, ընդգծվեց ՍՄԿԿ Կենտկոմի պլենումում, թե մենք այդ տարիներին ինչպիսի հիմք կդնենք ժողովրդական տնտեսության մեջ ար-

մատական վերափոխումների իրականացման, գիտատեխնիկական առաջադիմության արագացման համար:

Հանրապետության տնտեսական ու սոցիալական զարգացման հնգամյա պլանի մեր կողմից քննվող նախագիծը ամբողջությամբ վերցված համապատասխանում է ՍՄԿԿ XXVII համագումարի ու Հայաստանի կոմկուսի XXVIII համագումարի պահանջներին և տասներկուերորդ հնգամյակի հիմնական ուղղություններով սահմանված առաջադրանքներին:

Նախատեսվում է հանրապետությունում կատարելագործել ժողովրդատնտեսական համամասնությունները: Պլանավորվում է տասներկուերորդ հնգամյակում միագումար հանրային արտադրանքի ծավալը մեծացնել 24 տոկոսով, արտադրված ազգային եկամտինը՝ 26, արդյունաբերության արտադրանքինը՝ 28,2, գյուղատնտեսության արտադրանքինը՝ 12 տոկոսով (միջին տարեկան հաշվարկմամբ): Հարկ է նշել, որ արդյունաբերական արտադրության զարգացումը նախատեսված է ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1986—1990 թվականների հիմնական ուղղություններով Հայկական ՍՍՀ-ի համար ընդունված աճի տեմպի վերին սահմանի (26 տոկոս) գերազանցումով 2,2 նիշով, և ամենաբարձրներից մեկն է ամբողջ երկրում:

Ժողովրդական տնտեսության զարգացման մեջ կապիտալ ներդրումների ծավալը կաճի 33 տոկոսով՝ անցած հնգամյակի 20 տոկոսի դիմաց: Գործող ձեռնարկությունների տեխնիկական վերազինմանն ու վերակառուցմանը կհատկացվեն գրեթե 1,5 անգամ շատ կապիտալ ներդրումներ, քան տասնմեկերորդ հնգամյակում:

Պլանով նախատեսված է արագացնել գործող հիմնական փոնդերի նորացումը, դրանց երիտասարդացումը: Երկու անգամ ավելացվում է հնացած հիմնական արտադրական փոնդերի դուրսգրումը:

Հնգամյակի ընթացքում հանրային աշխատանքի արտադրողականության աճը կկազմի 17,1 տոկոս: Արդյունաբերության մեջ աշխատանքի արտադրողականության աճի տեմպերը կկազմեն 18,5 տոկոս, շինարարության մեջ՝ 20,5 տոկոս:

Պլանի նախագծով նախատեսված է իրականացնել արտադրության մեքենայացման ու ավտոմատացման, արտադրության մեջ ռոբոտատեխնիկայի ու մանիպուլյատորների օգտագործմամբ արտադրության ճկուն համակարգերի արմատավորման ծրագիր, որը թույլ կտա տասներկուերորդ հնգամյակում ձեռքի աշխատանքի բաժինը կրճատել 10—15 տոկոսով: Աշխատանքի մեքենայացման աստիճանը հանրապետության արդյունաբերական արտադրության մեջ 1990 թվականին կհասնի 60,5 տոկոսի՝ 1985 թվականի 54,4 տոկոսի դիմաց:

Կշարունակվի արդյունաբերության նվազ նյութատար և նվազ էներգատար ճյուղերի գերադաս զարգացման, ռեսուրսախնայողության ակտիվ քաղաքականության վարման հանրապետությունում վերցված կուրսը, որի շնորհիվ կապահովվի ազգային եկամտի առաջանցիկ աճ՝ համախառն հանրային արտադրանքի աճի համեմատությամբ: Ընդլայնվում են գիտության ու տեխնիկայի նվաճումների արմատավորման մասշտաբները, արագանում արտադրատեսակների նորացման, նորերի ստեղծման և յուրացման տեմպերը: Հանրապետության արդյունաբերության մեջ նոր տեխնիկայի ներդրման հետ կապված միջոցառումներից ստացվող ընդհանուր տնտեսական արդյունքը տասներկուերորդ հնգամյակում 1,3 անգամ բարձր կլինի, քան նախորդում:

Պետական որականիշով արտադրանքի ծավալը հնգամյակի ընթացքում կմեծանա 85 տոկոսով: «Ն» ինդեքսով և պայմանգրային գներով արտադրանքի տեսակարար կշիռը արտադրության ընդհանուր ծավալի մեջ հնգամյակի վերջում կկազմի 40,6 տոկոս:

Տասներկուերորդ հնգամյակի պլանի նախագծում նախատեսվում է հանրապետության բնակչության կենսամակարդակի հետագա բարձրացումն ապահովող միջոցառումների կոմպլեքս: Ազգային եկամտի ընդհանուր ծավալի երեք քառորդը կհատկացվի անմիջականորեն ժողովրդի բարեկեցության բարձրացման նպատակներին, որը բնակչության մեկ շնչի հաշվով 16,2 տոկոսով ավելի է, քան տասնմեկերորդ հնգամյակում: Բնակչության մեկ շնչին ընկնող ռեալ եկամուտները կաճեն 14,6 տոկոսով՝ տասնմեկերորդ հնգամյակի 9,9 տոկոսի դիմաց: Հետևողականորեն կզարգանան և ավելի արդյունավետ կօգտագործվեն սպառման հանրային փոնդերը:



Դրանց ծավալը հնգամյակի ընթացքում կաճի 24,5 տոկոսով և բնակչության մեկ շնչի հաշվով 1990 թվականին կկազմի 480,2 ռուբլի:

Նյութական ու ֆինանսական մեծ ռեսուրսներ կտրամադրվեն բնակարանների և սոցիալական ինֆրակառուցվածքի մյուս օբյեկտների շինարարությանը:

Մեր հանրապետության համար առանձնակի կարևորություն ունի սոցիալական ինֆրակառուցվածքի զարգացման առանձին ցուցանիշների գծով ընդհանուր միութենական մակարդակից ետ մնալու հաղթահարումը: Հնգամյա պլանով կոնկրետ միջոցառումներ են նախատեսված այդ ուղղությամբ: Օրինակ, հնգամյակի վերջին նախադպրոցական հիմնարկներում կընդգրկվի համապատասխան տարիքի երեխաների 53,6 տոկոսը՝ 1985 թվականի 37,3 տոկոսի դիմաց: Մեծ ուշադրություն է նվիրվում առողջապահության ցանցի հետագա ընդլայնմանն ու նրա համակարգի բարելավմանը, մշակույթի հիմնարկների աշխատանքների կատարելագործմանը, ֆիզիկական կուլտուրայի և սպորտի զարգացմանը:

Տնտեսական և սոցիալական զարգացման նախանշված բնագծերը ապահովում են հանրապետության հետագա առաջընթացը, երկրի միասնական ժողովրդատնտեսական համալիրում նրա ավանդի բարձրացումը: Սա հիմք է ծառայում, ընկերներ, որ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումը հավանություն տա այդ պլանին և հանրապետության Մինիստրների խորհրդին հանձնարարի այն ներկայացնել Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նստաշրջանի քննարկմանը:

# II

Տասներկուերորդ հնգամյակի առաջադրանքների հաջող կատարումը, արագացման ստրատեգիայի հիմնական սկզբունքների կենսագործումը մեծապես կախված են էկոնոմիկայի մեջ և սոցիալական ոլորտում եղած անմպաստ միտումների ժամանակին հաղթահարումից, թույլ տրված սխալների պատճառների պարզորոշ ըմբռնումից, դրանց վերացման նպատակով վճռական միջոցների ձեռնարկումից, մասսաների աշխատանքային ակտիվության բարձրացման անհրաժեշտ պայմանների ստեղծումից:

Վերակառուցվելու, արդյունավետ զարգացման նոր ուղիներ գտնելու, ռեզերվները լավագույնս օգտագործելու կարողության լավ օրինակներ կան հանրապետության ժողովրդական տնտեսության շատ ճյուղերում, միավորումներում, ձեռնարկություններում ու կազմակերպություններում: Եվ դա, բնականաբար, նպաստում է աշխատանքի արդյունքների լավացմանը:

Բայց տևական ու կայուն հաջողության ապահովումը պահանջում է ձեռնարկել ավելի արմատական միջոցներ, ընթանալ որակական խոր վերափոխումների ուղիով: Սա հաստատվում է և նրանով, որ ոչ միայն տասնմեկերորդ հնգամյակի, այլև տասներկուերորդ հնգամյակի առաջին տարվա անցած ամիսներին որոշակի դժվարություններ են ծագել ժողովրդական տնտեսության շատ ճյուղերում: Մեզանում դեռևս շատ են ետ մնացող, պլանային առաջադրանքները չկատարող ձեռնարկությունները ու կազմակերպությունները: Լիովին չեն օգտագործվում էկոնոմիկայի ինտենսիվացման, գիտատեխնիկական առաջադիմության արագացման, տնտեսական գործունեության որակական ցուցանիշների արմատական բարձրացման բոլոր առկա հնարավորությունները: Մի շարք ճյուղերում անբավարար է հանրային արտադրության արդյունավետությունը, առայժմ պես ռացիոնալ չեն օգտագործվում հիմնական փոնդերը, նյութական ռեսուրսները: Շրջադարձը դեպի որակ, արդյունավետություն, դեպի ղեկավարման նոր մեթոդներ՝ տեղի է ունենում դժվար ու հիվանդագին:

Ինչի՞ մասին է դա խոսում: Առաջին հերթին այն մասին, որ դանդաղ է ընթանում աշխատանքի վերակառուցումը նոր սկզբունքներով: Մեզանում ամենուրեք չէ, որ մտածում և գործում են նորովի, արագացման կատեգորիաներով և արդյունավետ աշխատում դրա իրականացման նպատակով: Կաշկանդում են հին մոտեցումները, դեռևս ուժեղ է իներցիան:

Իրենց աշխատանքը դանդաղ են վերակառուցում Կենտկոմի, հանրապետության կառավարության, կուսակցական, սովետական մարմինների որոշ պատասխանատու աշխատողներ, մինիստրությունների ու գերատեսչությունների ղեկավարներ:

Մենք առաջին հերթին պետք է հասնենք նրանց աշխատանքի արագ վերակառուց-
ման:
Հարկավոր է արագացնել վերակառուցումը նաև տեղերում՝ արտադրական միա-
վորումներում, ձեռնարկություններում, սովխոզներում ու կոլտնտեսություններում, բո-
լոր աշխատանքային կոլեկտիվներում: Շատ կազմակերպություններում դանդաղ են
հաղթահարվում աշխատանքում տեղ գտած անտարբերությունը, ձևականությունն ու
շաբլոնը: Առանձին ղեկավարներ վերակառուցման ռեալ աշխատանքը փոխարինում
են նրա կարևորության մասին խոսակցություններով: Խոսելով լրացուցիչ իրավունք-
ների ձեռքբերման, ինքնուրույնության ընդլայնման անհրաժեշտության մասին՝ մո-
ռանում են պատասխանատվության, ընդհանուր գործի արդյունքների մասին:
Արագացման ստրատեգիան վճռականորեն մերժում է ամեն պասիվություն և
անտարբերություն, միևնույն ժամանակ նաև ամեն շտապողականություն, հախուռն
կամպանիականություն գործունեության ցանկացած ոլորտում: Մենք պետք է որքան
կարելի է արագորեն վերացնենք աշխատանքում եղած թերությունները, կուսակ-
ցական, սովետական, տնտեսական, հասարակական կազմակերպությունների, աշ-
խատավորական բոլոր կոլեկտիվների ջանքերը ակտիվորեն նպատակամղենք էկո-
նոմիկայի զարգացման դինամիկ տեմպերի, արդյունավետության բարձր ցուցանիշ-
ների ձեռքբերմանը, սոցիալական ոլորտում դրական լուրջ փոփոխությունների իրա-
կանացմանը:
Այսօր հանգուցային խնդիրներից մեկը ինվեստիցիոն և ստրուկտուրային քա-
ղաքականության վերակողմնորոշումն է, գործող ձեռնարկությունների վերակառուց-
ման ու տեխնիկական վերազինման մեջ կապիտալ ներդրումների բաժնի մեծացու-
մը, մեքենաշինության զարգացման արագացումը, ինվեստիցիոն ցիկլի կրճատումը:
Հանրապետությունում վերջին տասնամյակում ապահովված են ժողովրդական
տնտեսության բոլոր ճյուղերում հիմնական արտադրական ֆոնդերի արագ աճ և
կուտակում: Եվ դա մեր խոշոր նվաճումն է: Բայց միշտ չէ, որ քանակական աճն ու-
ղեկցվել է անհրաժեշտ որակական փոփոխություններով: Լավ է, որ մեզանում ապա-
հովվել է արդյունաբերության գիտատեխնիկական առաջադիմությունը որոշող ճյու-
ղերի առաջանցիկ զարգացումը: Բայց դրանով հանդերձ հանրապետության Պետ-
պլանը (ընկ. Հ. Սաղոյան) պատշաճ կերպով չի հետևել գործող շատ ձեռնարկու-
թյունների վերակառուցմանն ու տեխնիկական վերազինմանը, որի հետևանքով դրան-
ցում հիմնական ֆոնդերի նորացման պրոցեսն ընթացել է դանդաղ, վատացել է
նրանց տարիքային ստրուկտուրան:
Կենտկոմը գտնում է, որ հնգամյա պլանի նախագիծը այդ պրոբլեմը չի լուծում
այն մասշտաբներով ու տեմպերով, ինչպես դա պահանջում են կուսակցության հա-
մագումարի որոշումները: Նախագծում վերակառուցման և տեխնիկական վերազին-
ման համար նախատեսվող կապիտալ ներդրումների ավելացման բարձր ցուցանիշը
(1,5 անգամ) բարեհաջող վիճակի պատրանք է ստեղծում, քանի որ բացարձակ չա-
փերով վերոհիշյալ կապիտալ ներդրումները տասնմեկերորդ հնգամյակում փոքր էին:
Ասենք, նրանց տեսակարար կշիռն էլ տասներկուերորդ հնգամյակում կապիտալ ներ-
դրումների ընդհանուր ծավալում կազմում է ընդամենը 36,5 տոկոս: Բայց չէ որ խըն-
դիր է դրված այդ նպատակներին հատկացնել առնվազն 50 տոկոս: Այնպես որ տա-
րեկան պլանները մշակելիս անհրաժեշտ կլինի շտկել վիճակը: Մենք չենք կարող
հաշտվել այն բանի հետ, որ տեխնիկատնտեսական մակարդակով և հիմնական ֆոն-
դերի վիճակով շատ ձեռնարկություններ, այդ թվում նաև առաջատարները, չեն հա-
մապատասխանում արդի պահանջներին, ինչը, բնականաբար, բացասաբար է անդ-
րադառնում արտադրության տեխնիկատնտեսական ցուցանիշների, թողարկվող ար-
տադրանքի որակի վրա:
«Հայէլեկտրամեքենա» արտադրական միավորումում սարքավորումների ավելի
քան 40 տոկոսն այսօր քաշն և ավելի տարեկան է: Անթույլատրելիորեն ցածր է
հագեցվածությունը թվածրագրային կառավարման հաստոցներով, ռոբոտացված հա-
մալիրներով. միավորումում այդպիսիք փաստորեն բացակայում են:
Տասնմեկերորդ հնգամյակում միավորումը սարքավորումների նորոգման վրա
ծախսել է ավելի քան 13 միլիոն, իսկ նոր տեխնիկայի ներդրման միջոցառումների
վրա՝ 6,6 միլիոն ռուբլի: Արտադրանքի նշանակալի մասը չի համապատասխանում
համաշխարհային մակարդակին, յուրացվել է ավելի քան 10 տարի, առանձին տե-



սակներ՝ ավելի քան 20 տարի առաջ: Միավորման արտադրած գեներատորները,
ոչսինքրոն շարժիչներն իրենց մասսայով, օգտակար գործողության գործակցով չեն
համապատասխանում համաշխարհային մակարդակին, միշտ չէ, որ ունենում են
պատրաստման բարձր որակ:
Տասներկուերորդ հնգամյակում նախատեսվում է սարքավորումների համակազ-
մը նորացնել 28 տոկոսով, որը չի կարելի բավարար համարել: Իսկ ինչպե՞ս է կա-
տարվում նախանշվածը: Ընթացիկ տարվա առաջին կիսամյակում սարքավորումնե-
րի ձեռքբերման և տեխնիկական վերազինման՝ պլանով հատկացված միջոցները
իրացվել են 62,2 տոկոսով: Նորացվել է ընդամենը 30 միավոր սարքավորում: Դան-
դաղ են ծավալվում նոր արտադրատեսակների յուրացման աշխատանքները: Միա-
վորման ղեկավարությունն ու կուսակցական կոմիտեն (գլխավոր դիրեկտոր՝ ընկ.
Պ. Մանվելյան, կուսկոմիտեի քարտուղար՝ ընկ. Լ. Սիմոնյան) պետք է կտրուկ փո-
խեն վերաբերմունքը այդ գործի նկատմամբ, վերակառուցեն իրենց աշխատանքը: Չէ
որ տխուր փորձ կա, երբ ձեռնարկության վերակառուցման ու տեխնիկական վերա-
զինման նախկինում կազմված պլանը, որի մասին խոսում էին հպարտությամբ, այդ-
պես էլ լրիվ չիրականացվեց:
«Էլեկտրասարք» արտադրական միավորումում (գլխավոր դիրեկտոր՝ ընկ.
Ս. Կիլիկյան, կուսկոմիտեի քարտուղար՝ ընկ. Ա. Մովսիսյան) նախատեսված է նո-
րացնել թողարկվող արտադրանքի ընդամենը 30 տոկոսը, որը նույնպես չի կարելի
բարձր ցուցանիշ համարել: Իսկ ինչպե՞ս է իրականացվում այդ խնդիրը: Առաջին
կիսամյակում պլանավորված ինը նոր արտադրատեսակներից լրիվ իրացվել է ըն-
դամենը չորսը: Նորացվել է տարվա համար պլանավորված սարքավորումների ըն-
դամենը 21 տոկոսը:
Արդյոք կարելի՞ է սա լավ մեկնարկ համարել:
Վերոհիշյալ միավորումները, մեր կարծիքով, արժանի էին, որպեսզի կուսակ-
ցության Լենինյան և Շահումյանի շրջկոմները (ընկ. ընկ. Ռ. Հակոբյան և Ռ. Թով-
մասյան) հետաքրքրվեին, թե այդտեղ ինչպե՞ս են իրականացվում գիտատեխնի-
կական առաջադիմությունը, արտադրության վերակառուցումն ու տեխնիկական վե-
րազինումն արագացնելու կուսակցության պահանջները:
Չի կարելի նաև քննադատական խոսք չասել Կենտկոմի արդյունաբերության
բաժնի (ընկ Վ. Մեհրաբյան), հանրապետության Մինիստրների խորհրդի հասցեին:
Չէ որ Հայաստանի կոմկուսի համագումարում ուղղակի նշվեց. ձեռնարկությունների
վերակառուցման ու տեխնիկական վերազինման, գիտատեխնիկական առաջադիմու-
թյան արագացման հարցերը պահել չթուլացող վերահսկողության ներքո, ժամանա-
կին պահանջել և օգնել, որ ձեռնարկությունները լայնորեն և մասշտաբայնորեն իրա-
կանացնեն դրանք:
Անհետաձգելի լուծման կարիք ունի նաև քիմիական, նավթաքիմիական արդյու-
նաբերության, հանրապետության ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերի ձեռ-
նարկությունների վերակառուցման ու տեխնիկական վերազինման հարցը:
Չնայած վերջին տարիներս մենք շատ ու շատ ենք խոսում գիտատեխնիկական
առաջադիմությունն արագացնելու մասին, մշակում ենք նոր տեխնիկայի արմատա-
վորման տարբեր կարգի պլաններ, սակայն վերջիններս շարունակաբար չեն կա-
տարվում: Վերակառուցվա՞ծ է արդյոք աշխատանքն այդ ուղղությամբ: Առաջին կի-
սամյակի աշխատանքի արդյունքները չեն հաստատում դա: Ամբողջությամբ վերց-
րած հանրապետությունում, օրինակ, միութենական առաջադրանքներով, նոր տեխ-
նիկայի արմատավորման կիսամյա պլանը կատարվել է 83,7 տոկոսով, առաջադի-
մական տեխնոլոգիայի արմատավորմանը, արտադրական պրոցեսների մեքենայաց-
մանն ու ավտոմատացմանը՝ 71,4 տոկոսով: Առավել մեծ քանակությամբ չիրակա-
նացված միջոցառումներ կան ավտոմոբիլային արդյունաբերության, անտառային և
փայտամշակման, շինանյութերի, թեթև արդյունաբերության, արդյունաբերական շի-
նարարության մինիստրությունների ձեռնարկություններում:
Իսկ հիմա՝ նոր տեխնիկայի վրա կատարվող ծախսումների արդյունավետության
մասին: Վերջերս Կենտկոմի բյուրոյում լսվեց գիտատեխնիկական առաջադիմության
նվաճումների արմատավորումն արագացնելու հիման վրա արտադրության արդյու-
նավետության բարձրացման ասպարեզում հանրապետության տարածքում գտնվող
ՍՍՀՄ կապի միջոցների արդյունաբերության մինիստրության ձեռնարկությունների

կուսակցական կազմակերպությունների ու ղեկավարության աշխատանքի մասին հարցը: Եվ ի՞նչ պարզվեց: Տասնմեկերորդ հնգամյակի տարիներին այդ ձեռնարկություններում նոր տեխնիկայի և առաջավոր տեխնոլոգիայի ներդրման միջոցառումների վրա կատարված ծախսումները նշանակալիորեն գերազանցել են տնտեսական արդյունքը:

Մի՞թե սա թույլատրելի է: Եթե մենք գիտատեխնիկական առաջադիմության վրա ավելի շատ միջոցներ ծախսենք, քան տնտեսական արդյունք ստանանք, ապա ինչպե՞ս կկարողանանք բարձրացնել արտադրության արդյունավետությունը: Մի՞թե այսպես էր հարցը դրված ՍՄԿԿ Կենտկոմում 1985 թվականի հունիսին կայացած խորհրդակցությունում: Կենտկոմի բյուրոն անբավարար համարեց այդ ձեռնարկություններում արտադրության արդյունավետության բարձրացման ուղղությամբ տարվող աշխատանքը: Խոսելով այս մասին՝ հարկ է ուշադրություն հրավիրել մի հետաքրքրական հանգամանքի վրա: Այդ գնահատականը հարուցեց հարցի քննարկմանը մասնակցող ձեռնարկությունների ղեկավար աշխատողների՝ ընկ. ընկ. Հ. Սուլթանյանի, Մ. Ասլանյանի, Ա. Թորոսյանի, զարմանքը՝ թե ի՞նչ է պատահել, չէ՞ որ բոլոր երեք ձեռնարկություններն էլ կատարում են պլանները, ունեն աճի բարձր տեմպեր և այլն: Ինչի՞ մասին է դա խոսում: Այն մասին, որ նշված ընկերները չեն վերակառուցվել, առայժմ դեռ չեն մտածում արդյունավետության ինտենսիվացման կատեգորիաներով, լիովին չեն տիրապետել ղեկավարման տնտեսագիտական մեթոդներին: Մինչդեռ վաղուց ժամանակն է: Հիշյալ ձեռնարկությունների ղեկավարների հետ մեկտեղ 26 կոմիսարների անվան կուսշրջկոմի քարտուղար ընկ. Ա. Հովհաննիսյանը, Աբովյանի կուսշրջկոմի քարտուղար ընկ. Հ. Ավագյանը, Դիլիջանի կուսքաղկոմի քարտուղար ընկ. Ռ. Վարդանյանը խորհե՞լ են արդյոք, թե ինչպես են իրենք աշխատում էկոնոմիկայի արդյունավետության բարձրացման կուսակցության պահանջների իրականացման վրա:

Արդյոք կարո՞ղ էր նման վիճակ ստեղծվել, եթե Կենտկոմի բաժինը (ընկ. Ռ. Ստեփանյան) ավելի մեծ պահանջկոտություն և հետևողականություն հանդես բերեր այդ գործում: Իհարկե՝ ոչ:

Սարքավորումները փոխելը, ձեռնարկությունների տեխնիկական վերազինումը միշտ պետք է ուղեկցվեն արտադրանքի նորացումով, նրա որակի, տեխնիկական մակարդակի և աշխատանքի արտադրողականության բարձրացմամբ, ձեռքի աշխատանքի նվազեցմամբ, աշխատանքի տնտեսական ցուցանիշների բարձրացումով, արտադրության կազմակերպման բարելավմամբ: Սակայն միշտ չէ, որ այդպես է լինում:

Վերջին երեք հնգամյակների տարիներին թեթև արդյունաբերության մինիստրության արդյունաբերական ձեռնարկություններում սարքավորումների փոփոխմանը հատկացված կապիտալ ներդրումները մեծացել են 15 անգամ, որը վատ չէ: Բայց համարժեք հատույց չկա: Ճյուղում ցածր է հերթափոխայնության գործակիցը: Ձեռքի աշխատանքի մեքենայացման մակարդակը կազմում է 63,4 տոկոս, իսկ օժանդակ արտադրություններում՝ 41,1 տոկոս:

Կիրովականի Կամոյի անվան տրիկոտաժեղենի արտադրական միավորումում տասնմեկերորդ հնգամյակի ընթացքում ներդրվել է ավելի քան 9 միլիոն ռուբլի, իսկ գործերի վիճակը վատացել է: Այնտեղ սիստեմատիկաբար ձախողում են պլանային առաջադրանքները, պայմանագրային պարտավորությունները, ցածր է թողարկվող արտադրատեսակների որակը: Միավորումում կուտակվել է պահանջարկ չվայելող 19 միլիոն ռուբլու արտադրանք: Համանման վիճակ է ստեղծվել նաև Չարենցավանի Նաիրի ֆաբրիկայում: Տասնմեկերորդ հնգամյակի տարիներին այստեղ իրացվել է շուրջ 3,5 միլիոն ռուբլու կապիտալ ներդրում, աճել են հիմնական ֆոնդերը, բայց դրանց արդյունավետ օգտագործման մասին ո՛չ ֆաբրիկայի կուսակցական կազմակերպությունը, ո՛չ էլ ղեկավարությունը չեն հոգացել: Արտադրական կարողությունները ծանրաբեռնված են ընդամենը 45 տոկոսով, գրեթե երկու անգամ ընկել է աշխատանքի արտադրողականությունը, կուտակվել է պահանջարկ չվայելող 4,5 միլիոն ռուբլու արտադրանք:

Իսկ ի՞նչ են ձեռնարկել կուսակցության Կիրովականի քաղկոմը (ընկ. Հ. Օհանյան) և Հրազդանի շրջկոմը (ընկ. Ս. Դանիելյան): Նրանք տարվել են հիշյալ ձեռնարկությունների ղեկավարների հաճախակի փոփոխումով: Միայն այդքանը: Իսկ ի՞նչ վերաբերմունք է ցույց տվել Կենտկոմի թեթև արդյունաբերության և ժողովրդ-



դական սպասման ապրանքների բաժինը (ընկ. Ա. Պյատկովա). սահմանափակվել է մշտական հորդորներով նման դրության անթույլատրելիության վերաբերյալ:

Մարտունու շրջանի Գեղհովիտի սովխոզում (դիրեկտոր՝ ընկ. Վ. Մարտիրոսյան, կուսկազմակերպության քարտուղար՝ ընկ. Տ. Սաֆարյան) հանրային հոտի ցածր մթերատվությունը տարիներ շարունակ բացատրում էին անասունների պահպանության համապատասխան շինությունների բացակայությամբ: Ընդառաջելով սովխոզի ղեկավարության, կուսակցական կազմակերպության խնդրանքին՝ շրջանային մարմինների առաջարկությամբ կառուցվեց կաթնահամալիր 800 կովի համար: Վեց տարի է անցել դրա գործարկումից և ահա աշխատանքի արդյունքները: Այդ ժամանակամիջոցում սովխոզում կաթնատվությունը իջել է 265 կիլոգրամով և 1985 թվականին կազմել է 1369 կգ: Համալիրն աշխատում է թերբեռնված, պահվում է ընդամենը 552 կով, արտադրվում է կաթի նախագծային ծավալի միայն մեկ երրորդը: Արդեն որերորդ տարին է, որ անասունները պահվում են բերովի ծղոտով, թեպետ սովխոզն ունի 1.400 հեկտար վարելահող, 800 հեկտար խոտհարք, 3.732 հեկտար արոտավայր:

Ահա թե ինչպիսին է պետական միջոցների «հատույցը»:

Համանման վիճակ գոյություն ունի Վարդենիսի շրջանի Վարդենիսի սովխոզում, Մասիսի շրջանի Արարատի համալիրում, Թումանյանի շրջանի Օձունի սովխոզում:

Հարց տանք համապատասխան կուսշրջկոմների քարտուղարներ ընկ. ընկ. Ա. Ազիզյանին, Մ. Գրիգորյանին, Պ. Սաֆյանին, Ա. Ծահվերդյանին. մի՞թե դա նորմալ է: Իսկ եթե՝ ոչ, ապա ինչո՞ւ միջոցներ չեն ձեռնարկվում պատասխանատվության ենթարկելու նրանց, ովքեր մեղավոր են:

Նույն հարցը կարելի է հասցեագրել նաև Կենտկոմի գյուղատնտեսության և սննդի արդյունաբերության բաժնին (ընկ. Ն. Այվազյան):

Բերված օրինակները մի կողմից վկայում են, որ հանրապետության ձեռնարկություններում ու կազմակերպություններում վերակառուցման ու տեխնիկական վերազինման պրոցեսը դեռևս դանդաղ և անբավարար է ընթանում, էկոնոմիկայի ճյուղերի մեծ մասում գիտատեխնիկական առաջադիմությունը առայժմ հիմնականում ընթանում է էվոլյուցիոն կարգով, իսկ մյուս կողմից՝ որ այդ միջոցառումների հատույցը ցածր է արդեն արդիականացված հիմնական ֆոնդերի անբավարար օգտագործման պատճառով:

Այս հանգամանքը պետք է լրջորեն անհանգստացնի թե՛ Կենտկոմի բյուրոյին ու քարտուղարությանը և թե հանրապետության Մինիստրների խորհրդին: Նախ և առաջ նրանք պետք է ավելի մեծ հետևողականություն ցուցաբերեն ինչպես նախատեսված միջոցառումների իրագործման, այնպես էլ արտադրական պոտենցիալի արդյունավետ օգտագործման հարցերում, լինեն ավելի պահանջկոտ, բարձրացնեն կուսակցական կոմիտեների ու կազմակերպությունների, սովետական ու տնտեսական մարմինների պատասխանատվությունն այդ գործում:

Հանրապետության պետպլանը պետք է մեծացնի գործող ձեռնարկությունների վերակառուցմանն ու տեխնիկական վերազինմանը հատկացվող կապիտալ ներդրումների բաժինը: Անհրաժեշտ է միջոցներն առաջնահերթ կարգով ուղղել այնտեղ, որտեղ դրանք կիրառվեն նորագույն տեխնիկայի բազայի վրա և կապահովեն պահանջվող տնտեսական հատույցը:

Եթե ձեռնարկությունների վերակառուցումը կատարվի ամենաառաջադիմական տեխնիկայի ու տեխնոլոգիայի օգտագործումով, ասվեց հունիսյան պլենումում, ապա, ինչպես ցույց են տալիս հաշվարկները, մենք կարող ենք դրանց արդյունավետությունը բարձրացնել 30—40 տոկոսով: Ակներև է, որ անհրաժեշտ է վարվել հետևյալ կերպ. այնտեղ, ուր կան այդպիսի սարքավորումներ, եռանդագին անցկացնել վերակառուցում, իսկ որտեղ այդպիսիք չկան՝ 2—3 տարով հետաձգել վերակառուցումը, կազմակերպել արդյունավետ սարքավորումների թողարկում և ապա արտադրական նոր բազայի հիման վրա լրացնել բաց թողնվածը:

Նույնը վերաբերում է նոր շինարարությանը: Հանրապետության պետպլանը և կապի մինիստրությունը (ընկ. Հ. Միրզոյան) պետք է մեկ անգամ էլ խորամուխ լինեն այն խնդրում, թե որքանով է ճիշտ ու արդյունավետ հանրապետությունում 150 հազար համարով հեռախոսակայանների կարողություններ գործարկելու որոշումը, երբ դրանցից միայն 40 հազարն են արդիական էլեկտրոնային համակարգի:

Անհրաժեշտ ենք համարում նրանց, ովքեր պլանավորում և իրագործում են նոր օբյեկտների շինարարությունը կամ գործող օբյեկտների վերակառուցումն ու տեխնիկական վերազինումը, մեկ անգամ ևս հիշեցնել Կենտկոմի հունիսյան պլենումի այն հիմնադրույթը, որ «հարկավոր է անհապաղ, ամենակարճ ժամկետներում փորձաքննության ենթարկել տեխնիկական վերազինման ու վերակառուցման այն բոլոր նախագծերը, որոնք նախատեսված են իրականացնել տասներկուերորդ հնգամյակում: Եվ վճռականորեն մերժել, արգելել այն նախագծերի իրականացումը, որոնք չեն համապատասխանի գիտատեխնիկական առաջադիմության արագացման խնդիրներին, իսկ ազատված ռեսուրսները հատկացնել առաջադիմական տեխնիկայի արտադրության զարգացմանը»:

Այդ նախագծերի մակարդակի համար, ինչպես ասվեց պլենումում, առաջին հերթին պետք է պատասխանատվություն կրեն մինիստրությունները, որոնք կոչված են լինելու ճյուղերի իսկական տեխնիկական շտաբները: Նախ և առաջ հենց նրանց էլ պետք է պահանջներ ներկայացնել: Հավասարապես պետք է պատասխանատվություն կրեն նաև հանրապետության պետպլանը, մյուս համապատասխան հիմնարկները:

Կուսակցական կոմիտեների ու կազմակերպությունների խնդիրն է մշտական վերահսկողություն սահմանել այդ գործի նկատմամբ, աշխատավորական կոլեկտիվներին մոբիլիզացնել լիովին և ժամանակին կատարելու գիտատեխնիկական առաջադիմության արագացման, արտադրության ինտենսիվացման մակարդակի բարձրացման նախատեսված ծրագրերը:

Անհրաժեշտ է գործուն վերահսկողություն ապահովել գիտատեխնիկական մշակումների որակի, արտադրության մեջ դրանք ժամանակին ներդնելու նկատմամբ: Այս գործում ևս մենք լուրջ թերություններ ունենք: Հայտնի է, որ հանրապետության շատ հաստոցաշինական ձեռնարկություններում օգտագործվում են նվազ արդյունավետ տեխնոլոգիա և հնացած տեխնիկա: Սակայն հատկապես այդ նպատակների համար ստեղծված «Հայհաստոց» ԳԱ միավորման մեքենաշինության գիտահետազոտական և կոնստրուկտորատեխնոլոգիական ինստիտուտը (դիրեկտոր՝ ընկ. Ն. Հովսեփյան, կուսկազմակերպության քարտուղար՝ ընկ. Է. Փարսյան) առաջադիմական տեխնոլոգիական պրոցեսների, մետաղամշակման առաջադիմական մեթոդների, սակավաթափոն և անթափոն տեխնոլոգիաների առաջնային մշակմամբ զբաղվելու փոխարեն զբաղված է տաշեղի հավաքման, վերամշակման և բրիկետավորման գծի ներդրումով: Իսկ չէ՞ որ այսօր հանրապետության հաստոցաշինական գործարաններում պողպատե դետալների ավելի քան 50 տոկոսը պատրաստվում է մետաղի օգտագործման 0,5 տոկոսից էլ պակաս գործակցով: Ընդհանուր առմամբ ճյուղերում սպառվող մետաղի 34 տոկոսը թափոն է դառնում:

Ցածր է գիտական շատ մշակումների տեխնիկական մակարդակը: Օրինակ, Կիրովականի «Պոլիմերսոսինձ» գիտաարտադրական միավորումում 52 գիտական մշակումներից և ոչ մեկի տեխնիկական մակարդակը չի համապատասխանում հայրենական ու արտասահմանյան լավագույն մշակումների մակարդակին:

Գիտատեխնիկական մշակումների ցածր մակարդակի շատ փաստեր կան «Էլեկտրամեքենա» գիտահետազոտական ինստիտուտում, կոմպլեքսային էլեկտրամեքենաշինության համամիութենական գիտահետազոտական ինստիտուտում և այլ հիմնարկներում:

Դեռևս շարունակվում է պրակտիկան, երբ վաղուց ավարտված մշակումները երկար ժամանակ չեն ներդրվում: Դանդաղ է կրճատվում գիտական մշակումների տևողությունը: Օրինակ, պոլիմերների համամիութենական գիտահետազոտական ինստիտուտում այն կազմում է 4 տարի, «Պլաստպոլիմեր» գիտաարտադրական միավորման Երևանի բաժանմունքում՝ 5 տարի, «Էլեկտրամեքենա» գիտահետազոտական ինստիտուտում՝ 3,5 տարի: «Էլեկտրասարք» արտադրական միավորման որոշ մշակումների տևողությունը հասնում է 3—5 տարվա, միջին հաշվով ևս 2—3 տարի էլ ծախսվում է յուրացման և սերիական արտադրության վրա:

Կուսակցական ու տնտեսական մարմինները և կազմակերպությունները, արտադրության բոլոր աշխատողները պետք է հատուկ ուշադրություն դարձնեն աշխատանքի արտադրողականության աճի և ֆոնդազինվածության ճիշտ հարաբերակցության ապահովմանը: Նոր հնգամյա պլանով ևս չի հաջողվել ապահովել աշխատան-



քի արտադրողականության աճի գերազանցում նրա ֆոնդազինվածության աճի նկատմամբ:

Մենք պետք է հատուկ զբաղվենք ինչպես սարքավորումների, այնպես էլ ամբողջ ձեռնարկությունների աշխատանքի հերթափոխայնության գործակցի բարձրացումով: Հանրապետությունում մետաղամշակման սարքավորումների հերթափոխայնության գործակիցը կազմում է 1,38 և 1980 թվականի համեմատությամբ ավելացել է ընդամենը 0,08 նիշով: ՍՍՀՄ սարքաշինության ավտոմատացման միջոցների և կառավարման համակարգերի մինիստրության ձեռնարկություններում այդ գործակիցը կազմում է 1,26, ՍՍՀՄ ավտոմոբիլային արդյունաբերության մինիստրության ձեռնարկություններում՝ 1,16, ՍՍՀՄ շինարարական, ճանապարհային և կոմունալ մեքենաշինության մինիստրության ձեռնարկություններում՝ 1,27, ՍՍՀՄ թեթև ու սննդի արդյունաբերության և կենցաղային սարքերի մեքենաշինության մինիստրության ձեռնարկություններում՝ 1,05 և վերջին տարիներին էապես չի փոխվում:

Հանրապետության արդյունաբերական պոտենցիալի օգտագործումը բարելավելու, հիմնական արտադրական ֆոնդերի օգտագործման մակարդակը բարձրացնելու, արագացման անհրաժեշտ նախադրյալներ ստեղծելու, ինչպես նաև աշխատունակ բնակչությանը էկոնոմիկայի հանրային սեկտորում լրացուցիչ կերպով ներգրավելու նպատակով անհրաժեշտ է կոնկրետ միջոցներ ձեռնարկել արդյունաբերական արտադրության հետագա ինտենսիվացման և երկհերթ աշխատանքի անցնելու՝ Լենինգրադի մարզային կուսակցական կազմակերպության նախաձեռնությունը հանրապետությունում ներդնելու համար, որի կարևորությունն ընդգծվեց ՍՄԿԿ Կենտկոմի 1986 թվականի հունիսյան պլենումում: Հաշվարկները ցույց են տալիս, որ 1990 թվականին հանրապետության միայն մեքենաշինության մեջ հերթափոխայնության գործակիցը 1,7-ի հասցնելը հնարավորություն կընձեռի լրացուցիչ թողարկել գրեթե 800 միլիոն ռուբլու արտադրանք, ստեղծել ավելի քան 40 հազար աշխատատեղ և տնտեսել 636 միլիոն ռուբլի կապիտալ ներդրում: Այդ միջոցները կարող են հատկացվել ձեռնարկությունների տեխնիկական վերազինմանը և բնակարանային, կոմունալ ու սոցիալ-կուլտուրական շինարարության մեծացմանը:

Յուրաքանչյուր քաղաքում ու շրջանում, ամբողջությամբ վերցված հանրապետությունում անհրաժեշտ է մշակել և իրականացնել արդյունաբերությունը, նախ և առաջ մեքենաշինությունը, Լենինգրադի մարզի օրինակով 2—3 հերթի աշխատանքի փոխադրելու միջոցառումների կոմպլեքս: Դրանով անհապաղ պետք է զբաղվեն հանրապետության կառավարությունը, պետպլանը, մինիստրություններն ու գերատեսչությունները, կուսակցական, սովետական մարմինները: Անհրաժեշտ է նաև լրացուցիչ միջոցառումներ իրականացնել սպասարկման ոլորտի աշխատանքը բարելավելու, մանկական նախադպրոցական և ուսումնական հաստատությունների, բժշկական հիմնարկների, տրանսպորտի, ամբողջ սոցիալական ոլորտի աշխատանքը վերակառուցելու համար՝ նպատակ ունենալով երկրորդ և երրորդ հերթափոխերում ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի աշխատողների համար ստեղծել արդյունավետ աշխատանքի անհրաժեշտ պայմաններ:

Ընկերնե՛ր: Տասներկուերորդ հնգամյակի հիմնական խնդիրների լուծման գործում առաջատար դեր է պատկանում մեքենաշինությանը: Ինչպես նշվեց ՍՄԿԿ Կենտկոմի 1986 թվականի հունիսյան պլենումում. «հենց այստեղ են այսօր կիզակետված էկոնոմիկայի բոլոր հրատապ պրոբլեմները»:

Մեքենաշինական համալիրը մեզանում զարգանում է դինամիկորեն, արագ տեմպերով: Եթե 1975—1985 թվականներին հանրապետությունում արդյունաբերական արտադրանքի ընդհանուր ծավալի աճի տեմպը կազմել է 195,3 տոկոս, ապա մեքենաշինությանը կազմել է 294 տոկոս: Արդյունաբերության արտադրանքի ճյուղային ստրուկտուրայում մեքենաշինության և մետաղամշակման տեսակարար կշիռը այդ նույն ժամանակաշրջանում 19,9 տոկոսից հասել է 30,3 տոկոսի: Զարգացման այսպիսի համեմատաբար կարճ ժամանակամիջոցի համար սա կարելի է խոշոր նվաճում համարել: Հնգամյա պլանի նախագծում ևս նշված են մեքենաշինության (1,7 անգամ) և հատկապես նրա առաջադիմական ճյուղերի՝ ռադիոէլեկտրոնիկայի արդյունաբերության ու սարքաշինության (1,9 անգամ) զարգացման բարձր բնագծեր: Վերջիններիս բաժինը մեքենաշինության մեջ 1985 թվականի 43,7 տոկոսի փոխարեն 1990 թվականին կհասնի 50,5 տոկոսի, իսկ ամբողջությամբ վերցրած մե-

քենաշինության ճյուղի բաժինը արդյունաբերական արտադրության ընդհանուր ծավալում կկազմի 39 տոկոս:

Կարելի է ասել, որ տասներկուերորդ հնգամյակը հանրապետության մեքենաշինության մեջ արմատական, որակական վերափոխումների հնգամյակ է:

Նախատեսվում է կառուցել ամենաժամանակակից արտադրանք թողարկող նոր մեքենաշինական ձեռնարկություններ: Կկատարվեն տեխնիկական վերազինման, արտադրական ապարատի նորացման, առաջադիմական էներգախնայողական և ռեսուրսախնայողական տեխնոլոգիաների արմատավորման, գիտության և արտադրության ինտեգրացման, գիտատար ու տեխնատար արտադրանքի յուրացման և թողարկման, հաշվողական տեխնիկայի միջոցների և ճկուն ավտոմատացված համակարգերի ներդրման, թողարկվող մեքենաների, սարքավորումների, սարքերի և այլ արտադրատեսակների տեխնիկատնտեսական պարամետրերի ու որակի բարձրացման աշխատանքներ:

Այս ամենի իրականացման համար անհրաժեշտ է ավելի լայնորեն ու ակտիվորեն ծավալել բոլոր աշխատողների որակավորման մակարդակի բարձրացման, արտադրությունը ինժեներային կադրերով կոմպլեկտավորելու աշխատանքը:

Լուրջ աշխատանք պետք է տարվի ձեռնարկությունների սանիտարական վիճակի, գեղագիտական ձևավորման բարելավման, արտադրության կուլտուրայի բարձրացնելու ուղղությամբ: Ի դեպ՝ սա վերաբերում է բոլորին:

Այցելեք մեր որոշ ձեռնարկություններ. այստեղ ասես մուտք չի գործել արտադրական գեղագիտությունը, դիզայնը: Շուրջբոլորը թափթփվածություն, աղբակույտեր, բարձիթողի վիճակ: Օրերս մեր ընկերները եղան Լենինականի «Ստրոմմեքենա» գործարանում (դիրեկտոր՝ ընկ. Ս. Մարտիրոսյան, կուսկազմակերպության քարտուղար՝ ընկ. Ս. Դավթյան) և ակնբախորեն համոզվեցին դրանում: Սա անթույլատրելի է: Կուսակցական կոմիտեները ու կազմակերպությունները պետք է ղեկավարներից ավելի խստորեն հաշիվ պահանջեն դրա համար:

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն խնդիր է դրել. մինչև 1990 թվականի համաշխարհային մակարդակին համապատասխանող հիմնական անվանացանկի արտադրանքի տեսակարար կշիռը հասցնել 80—95 տոկոսի, իսկ նոր մշակվող արտադրանքինը՝ փաստորեն 100 տոկոսի: Ամենաբարձր պահանջներին համապատասխանող արտադրանքի թողարկմանը ամբողջ ծավալով անցումը իրականացնել 1991—1993 թվականներին:

Այդ խնդրի իրագործումը մեքենաշինական ձեռնարկությունների յուրաքանչյուր աշխատավորական կոլեկտիվի, կուսակցական կազմակերպությունների, հանրապետության յուրաքանչյուր մեքենաշինարարի, մեր բոլոր կուսակցական, սովետական ու տնտեսական մարմինների պարտքն է:

Կենտկոմի պլենումում վստահություն հայտնվեց, որ մեքենաշինական մինիստրությունների ղեկավարները, աշխատավորական կոլեկտիվները լիակատար ըմբռնումով կվերաբերվեն կարևորագույն պետական առաջադրանքի կատարմանը: «Հիշելով անցյալի դասերը,— ասվեց պլենումում,— մենք պետք է բոլոր նրանց, ովքեր պարտավոր են կատարել մեքենաշինության արդիականացման ծրագիրը, կանխավ զգուշացնենք. նախատեսվածից որևէ ընկրկում, օբյեկտիվ և սուբյեկտիվ պատճառների որևէ վկայակոչում այստեղ անթույլատրելի են»:

Ասված է պարզ ու հստակ: Մենք մեքենաշինության հանրապետություն ենք, և դա առանձնակի պատասխանատվություն է դնում մեզ վրա:

# III

Տասներկուերորդ հնգամյակում հանրապետության ժողովրդական տնտեսության վերազինման ու վերակառուցման, նրա սոցիալ-տնտեսական զարգացման առաջադրանքների իրագործումն անհնար է առանց կապիտալ շինարարության ասպարեզում գործերի լուրջ բարելավման:

Ամենից շատ պետք է վերակառուցվել մեր աշխատանքի այդ բնագավառում, բայց վերակառուցումը դանդաղ է ընթանում հենց այստեղ: Ճյուղում իրադրությունն առայժմ անբավարար է: Կառավարման տնտեսական մեխանիզմը գործում է հին ձևով և անարդյունավետ, շոշափելի փոփոխություններ չկան պատվիրատուների, նախագծողների ու կապալային կազմակերպությունների աշխատանքում: Մենք առաջվա նման երկար ենք նախագծում, շատ ավելի երկար կառուցում, դանդաղ յուրացնում գործարկված կարողությունները: Պահանջվող տեղաշարժեր չկան նախագծման ու շինարարության որակի մեջ: Դեռևս վրիպումներ են թույլ տրվում շինարարության նախապատրաստության գործում, զգալի են աշխատաժամանակի կորուստները, անարդյունավետ են օգտագործվում շինարարական մեքենաները ու մեխանիզմները:

Ընթացիկ տարվա վեց ամսում շինարարական կազմակերպությունների գրեթե մեկ երրորդը չեն կատարել կապալային աշխատանքների պլանները, շատերը ետընթաց են թույլ տվել անցյալ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ: Ամբողջությամբ վերցված հանրապետությունում կապիտալ ներդրումների պլանը կատարվել է 84,4 տոկոսով, այդ թվում շինմոնտաժային աշխատանքներինը՝ 89,7 տոկոսով կամ համապատասխանաբար թերակատարվել է 111 և 42,1 միլիոն ռուբլով:

Էլ ավելի վատ է հիմնական ֆոնդերի շահագործման վիճակը: Կիսամյա պլանը կատարվել է ընդամենը 76,8 տոկոսով:

Շինարարության պլանի կատարման գործում զգալի խզում են թույլ տվել արդյունաբերական շինարարության մինիստրության (մինիստր՝ ընկ. Ռ. Մելիքյան), պետագրոշինի (պետ՝ ընկ. Վ. Վիրաբյան), հատուկ շինմոնտաժի գլխավոր վարչության (ընկ. Հ. Ղամբարյան) կազմակերպությունները:

Աշխատանքը վատացրել են «Հայտրանսշին» տրեստը (կառավարիչ՝ ընկ. Ե. Ավետիսով, կուսկազմակերպության քարտուղար՝ ընկ. Լ. Բունիաթյան), «Հայթունելշին» վարչությունը (կառավարիչ՝ ընկ. Է. Կարապետյան, կուսկազմակերպության քարտուղար՝ ընկ. Վ. Հովակիմյան), Անդրկովկասխողովակամուղշին տրեստը (կառավարիչ՝ ընկ. Ս. Ղազինյան, կուսկազմակերպության քարտուղար՝ ընկ. Ն. Մինասյան), «Արփա—Սևանշին» վարչությունը (կառավարիչ՝ ընկ Ա. Սարգսյան, կուսկազմակերպության քարտուղար՝ ընկ. Ա. Ղազարյան) և ուրիշներ:

Երկա՞ր են մտադիր արդյոք թափ առնել վերը նշված մարմինների ու կազմակերպությունների ղեկավարները, ինչո՞ւ անհրաժեշտ միջոցներ չեն ձեռնարկում համապատասխան կուսակցական կոմիտեները ու կազմակերպությունները:

Կուսակցությունը խնդիր է դրել ըստ ամենայնի ավելացնել բնակարանների, սոցիալ-կուլտուրական օբյեկտների շինարարությունը, մինչև 2000 թվականը յուրաքանչյուր ընտանիքի ապահովել առանձին բնակարանով կամ անհատական տնով: Այդ խնդիրը, ինչպես նշվեց վերը, առանձնապես հրատապ է մեր հանրապետության համար:

Այդ խնդրի իրագործման գլխավոր պայմաններից մեկը բնակարանային շինարարության պլանների կայուն կատարումն է: Սակայն դրանք չի կատարել հանրապետության և ոչ մի կազմակերպություն: Վեց ամսում շահագործման է հանձնվել ընդամենը 272 հազար քառակուսի մետր բնակտարածություն կամ առաջին կիսամյակի պլանի 92,1 տոկոսը: Իսկ չէ՞ որ առաջին կիսամյակի պլանը կազմում է տարեկանի ընդամենը 34,6 տոկոսը: Տագնապալի իրադրություն է ստեղծվել նաև դպրոցների, պրոֆտեխուսումնարանների, մանկապարտեզների, հիվանդանոցների ու պոլիկլինիկաների, մի շարք առանձնապես կարևոր օբյեկտների շինարարության գործում, որի համար մենք արդարացի քննադատության ենք արժանի:

Ինչպե՞ս կարող են շինարարները շարունակել այսքան անպատասխանատու վերաբերվել իրենց ուղղակի պարտականությունների կատարմանը: Անցած պլենումում ասվեց և այսօր էս նորից անհրաժեշտ ենք համարում կրկնել այն, որ շինարարական մարմինների ղեկավարումը հանձնվել է նոր ընկերների, ամենևին չի նշանակում, թե նրանց զիջումներ կարվեն: Այնպես որ, ընկերներ Ռ. Մելիքյանն ու Վ. Վիրաբյանը, մյուս ընկերները պետք է ամենալուրջ հետևություններ անեն ու վերակառուցվեն: Դա վերաբերում է բոլոր ճյուղերի ղեկավար աշխատողներին:

Եթե մենք հիմնավորապես չզբաղվենք շինարարական գործի կատարելագործմամբ, լայնորեն չօգտագործենք առաջավոր փորձը, չբարձրացնենք ինվեստիցիոն պրոցեսի բոլոր մասնակիցների պատասխանատվությունը, ապա մենք չենք կարողանա կատարել կապիտալ շինարարության նախատեսված ծավալները:

Ո՛չ Մինիստրների խորհրդում (ընկ. Հ. Հայրապետյան), ո՛չ պետպլանում (ընկ. Ա. Տեր-Իսրայելյան), ո՛չ պետշինում (ընկ. Լ. Բեգլարյան), ո՛չ շինարարական մի-

նիստրություններում ու գերատեսչություններում դեռևս ակտիվ, կոմպլեքսայնորեն, սիստեմացված ձեռնամուխ չեն եղել ինվեստիցիոն քաղաքականության վերանայման, կապիտալ շինարարության կատարելագործման՝ համագումարի առաջադրած խնդրի կատարմանը:

Պլանավորումը կատարվում է հին ձևով, շինարարության կազմակերպումը որևէ էական դրական փոփոխություն չի կրում, չի արդիականացվում նրա նյութական բազան: Մեր շինարարները տառապում են վրդովեցուցիչ պահպանողականությամբ, առաջավոր փորձը շատ դժվար է ճանապարհ հարթում և, որ գլխավորն է, ոչ որ նրանցից պատշաճ պատասխան չի պահանջում դրա համար:

Կուսակցության քաղկոմներն ու շրջկոմները, Կենտկոմի բաժինը, Կենտկոմի քարտուղար ընկ. Մ. Մուրադյանը պետք է էլ ավելի ուժեղացնեն ընդունված որոշումների կատարման վերահսկողությունը, բարձրացնեն ղեկավար կոմունիստների պատասխանատվությունն այդ գործում:

Չէ որ անթույլատրելի է ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թվականի ապրիլյան պլենումից, կուսակցության XXVII համագումարից հետո էլ շարունակել աշխատել հին ձևով, լրիվ և նախատեսված ժամկետներում չկատարել կապիտալ շինարարության բարելավմանը վերաբերող կարևորագույն որոշումները:

Վերցնենք, օրինակ, «Կապիտալ շինարարության մեջ ինդուստրացման հետագա զարգացման և աշխատանքի արտադրողականության բարձրացման մասին» որոշման կատարումը:

Մինիստրների խորհուրդը հաստատել է դրա իրականացման հանրապետական ծրագիրը: Սակայն այն կատարվում է անբավարար: Պատճառն ինչպես կատարողների անկարգապահությունն է՝ այնպես էլ այն, որ այդ ծրագիրը մեծ մասամբ կոնկրետ չէ, հստակ չեն նշված ինչպես նախատեսված նպատակներին հասնելու ուղիները, այնպես էլ նյութական ու ֆինանսական միջոցները:

Ամբողջությամբ վերցված հանրապետությունում կապիտալ ներդրումների ծավալի 33 տոկոս աճի դեպքում «Շինինդուստրիա» ճյուղի համար դրանց ծավալների աճը տասներկուերորդ հնգամյակում նախատեսված է ընդամենը 2,1 տոկոս: Եվ ի՞նչ եք կարծում, ում մեղքով: Հիմնականում՝ շինարարական մինիստրությունների ու գերատեսչությունների՝ պետպլանի ու պետշինի անսկզբունք համաձայնությամբ: Պարզվում է, որ նրանք պատրաստ չեն եղել մեծ ծավալների իրացման: Քննադատությանը, դիտողություններին շինարարները պատասխանում են. մենք շինինդուստրիայի այդպիսի աճով էլ կապահովենք պլանային առաջադրանքների կատարումը: Բայց նրանք մոռանում են, որ այնպես, ինչպես մինչև հիմա են կառուցել՝ թե՛ տեմպերի, թե որակի իմաստով, այսօր ընդունելի չէ:

Իսկ ինչպե՞ս են օգտագործվում այդ առանց այն էլ ոչ բավարար հատկացված կապիտալ ներդրումները: Արդյունաբերական շինարարության մինիստրությունն, օրինակ, շինինդուստրիայի իր բազայի զարգացման համար 1986 թվականին նախատեսել է 3,1 միլիոն ռուբլու շինմոնտաժային աշխատանքների ծավալ: Նա միաժամանակ կատարում է 17 օբյեկտների շինարարություն, որոնցից ժամանակակից պահանջներին համապատասխանում է միայն մեկ օբյեկտ՝ «Երքիմշին» տրեստի երկաթբետոնե կոնստրուկցիաների գործարանը, որի աշխատանքների ծավալը այս տարվա համար կազմում է 1,3 միլիոն ռուբլի: Մնացած 16 օբյեկտներին, որոնցից շատերը «մորուքավոր» կառույցներ են և նրանցում նոր տեխնոլոգիայի կիրառում չի նախատեսված, ընկնում է 1,8 միլիոն ռուբլի: «Սևանշին» տրեստի շինարարական իրերի կոմբինատի շինարարությունը, որի նախահաշվային արժեքը 390 հազար ռուբլի է, ձգվում է 1975 թվականից: Սրան ի՞նչ կարող են պատասխանել մինիստր ընկ. Ռ. Մելիքյանը և շինինդուստրիայի հարցերով զբաղվող նրա տեղակալ ընկ. Վ. Մարգարյանը:

Ո՛չ պետպլանը, ո՛չ պետշինը իրենց հարց չեն տվել. համապատասխանո՞ւմ է արդյոք մինիստրության, և ո՛չ միայն այս մինիստրության, մշակած ինդուստրացման ծրագիրը մոտակա հեռանկարում շինարարության առջև կանգնած խնդիրներին, շինարարության արդյունավետության ու որակի բարձրացման, նյութերի ու աշխատանքային ռեսուրսների խնայողության առաջադրանքներին, և պլանների մեջ համապատասխան ճշգրտումներ չեն մտցրել:

Չէ որ չի կարելի անընդհատ մխիթարվել նրանով, որ մեր շինարարները, եթե



ուզում են՝ լավ են կառուցում: Դա գուցե և այդպես է, բայց պետք է խիզախություն ունենալ շիտակ նայելու ճշմարտության աչքերին. մենք առայժմ վատ ենք կառուցում: Առանձին հաջողությունները, որքան էլ որ դրանք նշանակալի լինեն, չեն կարող և չպետք է պատճառ դառնան չնկատելու զանգվածային շինարարության լուրջ թերությունները:

Նայեցեք մեր բնակելի և մյուս շենքերին ու կառույցներին. նրանցից շատերը անդեմ են, աչքի չեն ընկնում իրենց ճարտարապետական, ինժեներական լուծումներով, կոնստրուկցիաների տեխնոլոգիականությամբ, ունեն կատարման ցածր որակ:

Իսկ պրոբլեմի հիմնապատճառը շինինդուստրիայի տեխնիկա-տեխնոլոգիական ցածր մակարդակն է, արտադրության հետամնացությունը, կարողությունների վատ օգտագործումը:

Պետպլանն ու պետշինը պետք է հատկապես շինինդուստրիայում նախատեսեն վերակառուցման և տեխնիկական վերազինման մեծ ծավալներ: Հանրապետության կառավարությունը պետք է նախատեսի շինինդուստրիայի զարգացման ծրագիր և գործուն միջոցներ ձեռնարկի շինարարության նյութական բազայի արդիականացումն արագացնելու համար:

Եվս մեկ հարց: Այժմ, երբ ավարտվում են 1987 թվականի կապիտալ շինարարության պլանի նախապատրաստության ժամկետները, պարզվում է, որ այն դեռևս պատրաստ չէ մինչև իսկ սևագիր տարբերակով:

Համաձայնեցման համար կապալային կազմակերպություններին ներկայացված չեն 15 մինիստրությունների ու գերատեսչությունների տիտղոսացուցակներ, այդ թվում՝ Երքաղսովետի գործկոմի (ընկ. Է. Ավագյան), Լենինականի քաղսովետի գործկոմի (ընկ. Է. Կիրակոսյան), Կիրովականի քաղսովետի գործկոմի (ընկ. Լ. Խաչատրյան), բնակարանային և կոմունալ տնտեսության մինիստրության (ընկ. Ռ. Մինասյան), բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթության մինիստրության (ընկ. Լ. Ղարիբջանյան), ավտոտրանսպորտի մինիստրության (ընկ. Խ. Դրամփյան), կապի մինիստրության (ընկ. Հ. Միրզոյան). առողջապահության մինիստրության (ընկ. Է. Գաբրիելյան), գիտությունների ակադեմիայի և ուրիշների:

Այսպիսով, արդեն այսօր հարցականի տակ է դրված կապալային կազմակերպությունների հնարավորությունը՝ լավ նախապատրաստվելու եկող տարվան: Պատվիրատու կազմակերպությունների ղեկավարները, որոնցից ոմանք չեն դադարում բոլոր թերությունների մեղքը գցել միայն շինարարների վրա, պետք է ավելի պատասխանատու մոտեցում ցուցաբերեն իրենց պարտականություններին:

Մինիստրների խորհուրդը պետք է բարձրացնի նրանց ներկայացվող պահանջները, վերահսկողության տակ վերցնի այդ աշխատանքը, միջոցներ ձեռնարկի հուլիս ամսվա ընթացքում տիտղոսացուցակների քննարկումն ավարտելու համար: Նրանք, ովքեր հաջորդ տարվա շինարարությունը ժամանակին չեն ապահովում անհրաժեշտ ամեն ինչով, պետք է կորցնեն շինարարություն կատարելու իրավունքը: Չի կարելի շարունակ խրախուսել անպատասխանատվությունը:

Անթույլատրելի է, ընկերներ, որ ՀԿԿ Կենտկոմի անցած պլենումից հետո էլ տեղ են գտնում կապիտալ ներդրումների փոշեցրում, պլանի մեջ այնպիսի օբյեկտներ մտցնելու փաստեր, որոնք շինարարության նորմատիվային ժամկետներին համապատասխան ապահովված չեն անհրաժեշտ ֆինանսավորմամբ:

Ինչքան էլ կարևոր լինեն կառուցվող օբյեկտները, հարկավոր է դրանք սկսել միայն այն ժամանակ, երբ բոլոր նախադրյալները կան շինարարության նորմատիվային ժամկետներում դրանք ավարտելու համար:

Որքան էլ տարօրինակ է, պետպլանում մինչև վերջին ժամանակներս ճշտիվ չգիտեին հանրապետությունում միաժամանակ կառուցվող օբյեկտների քանակը: Եվ դա շուրջ 300 աշխատող ունեցող հաշվողական կենտրոնի առկայության պայմաններում: Նման վիճակ է տիրում նաև կենտրոնական վիճակագրական վարչությունում: Իսկ ինչպե՞ս կարելի է ճիշտ օգտագործել կապիտալ ներդրումները առանց հստակ տվյալներ ունենալու կառուցվող օբյեկտների քանակի, դրանց շինարարական պատրաստության վիճակի մասին: Այս իրադրության մեջ, իհարկե, անխուսափելի են թե՛ միջոցների ու նյութական ռեսուրսների փոշեցրումը, թե՛ շինարարության ժամկետների ձգձգումը:

Շատ մինիստրությունների ու գերատեսչությունների ղեկավարներ չեն վերակառուցվում, չեն ազատվում միաժամանակ ավելի շատ օբյեկտներ կառուցելու, ավելի մեծ կապիտալ ներդրումներ պոկելու հին սովորությունից: Իր հերթին չի վերակառուցվում, այդ վնասակար՝, ոչ պետական մոտեցմանը պատշաճ հակահարված չի տալիս հանրապետության պետպլանը: Կառավարությունն էլ, չգիտես ինչու, անհրաժեշտ հաստատակամություն չի դրսևորում, չի ուղղում ոչ մեկին, ոչ մյուսներին: Իսկ առաջադրանքը շատ պարզ ու հստակ է. կրճատել միաժամանակ կառուցվող օբյեկտների քանակը, սառեցնել դրանց մի մասը, հատկապես այն օբյեկտները, որտեղ հին տեխնիկա ու տեխնոլոգիա է կիրառվում: Այստեղ Կենտրոնական կոմիտեն պետք է հաստատակամություն ու հետևողականություն ցուցաբերի:

Մի խոսքով, ընկերներ, մենք պետք է ինվեստիցիոն պրոցեսի ամբողջ շրջափուլում գործերի վիճակի բարելավման ամենաանհետաձգելի արմատական միջոցառումներ ձեռնարկենք: Դա յուրաքանչյուր կուսակցական, սովետական, տնտեսական մարմնի ու կազմակերպության, մեր ամենքիս խնդիրն է:

## IV

Տասներկուերորդ հնգամյակում մենք պետք է ագրոարդյունաբերական համալիրում լուծենք մասշտաբային և բնույթով սկզբունքային խնդիրներ: Գյուղատնտեսության համախառն արտադրանքի ծավալը նախատեսված է մեծացնել ոչ պակաս, քան 12 տոկոսով: 10,8 տոկոսով կաճեն վերամշակման ճյուղերի արտադրության ծավալները:

Հացահատիկի համախառն բերքը 1990 թվականին նախատեսված է հասցնել 330 հազար տոննայի, կարտոֆիլինը՝ 325 հազար տոննայի, խաղողինը՝ 280 հազար տոննայի, բանջարեղենինը՝ 604 հազար տոննայի, պտղինը՝ 240 հազար տոննայի: Մսի արտադրությունը (կենդանի քաշով) կհասցվի 198 հազար տոննայի, կաթինը՝ 625 հազար տոննայի, ձվինը՝ 720 միլիոն հատի: Սա լարված ծրագիր է, բայց հանրապետության ագրոարդյունաբերական համալիրն էլ քիչ հնարավորություններ չունի դրանք կատարելու, իսկ առանձին ցուցանիշներով նախատեսված բնագծերը գերազանցելու համար:

Առաջադրված խնդիրների հաջող իրացումը մեզանից պահանջում է անցում կատարել դեպի տնտեսավարման ինտենսիվ մեթոդների, նոր առաջադիմական տեխնոլոգիաների լայնածավալ արմատավորում, ավելի արդյունավետ օգտագործել նյութական ռեսուրսները, դրանք նախ և առաջ կենտրոնացնել այնտեղ, ուր կարող է առավել մեծ հատույց ստացվել:

Մեզ դեռևս չի հաջողվել լիովին գործի դնել ինչպես գյուղատնտեսական արտադրության, այնպես էլ ագրոարդյունաբերական համալիրի վերամշակման ճյուղերի ինտենսիվացման առկա նշանակալի ռեզերվները:

Խոսքն առաջին հերթին վերաբերում է գյուղատնտեսական արտադրության հիմնական միջոցների՝ հողի, ջրի, տեխնիկայի, պարարտանյութերի, աշխատանքային ու նյութատեխնիկական ռեսուրսների օգտագործման արդյունավետության շեշտակի բարձրացմանը:

Մի՞թե կարելի է հաշտվել այն բանի հետ, որ յուրաքանչյուր չորրորդ տնտեսությունում հացահատիկային կուլտուրաների մեկ հեկտարի բերքատվությունը չի անցնում 14 ցենտներից, բանջարեղենինը՝ յուրաքանչյուր չորրորդ բանջարաբուծական տնտեսությունում՝ 200 ցենտներից, իսկ կարտոֆիլինը՝ 100 ցենտներից: Նույն վիճակն է տիրում նաև պտղաբուծության, խաղողագործության մեջ: Կենտկոմը բազմիցս նշել է, որ անհրաժեշտ է բարձրացնել հողի, հատկապես ոռոգելի ֆոնդի, օգտագործման արդյունավետությունը: Լուրջ տեղաշարժեր մենք առայժմ չենք տեսնում: Այժմ, նոր պայմաններում, ագրոարդյունաբերական համալիրի կառավարման մարմինները պետք է կտրուկ բեկման հասնեն այդ գործում: Չի կարելի, նախ, լիովին չօգտագործել հողը, երկրորդ՝ ոռոգելի հողերից ստանալ մոտավորապես նույնքան, որքան ստացվում է անջրդի տարածություններից:

Մի՞թե հնարավոր է բավարարվել նրանով, որ հանրապետությունում մեկ էտալոնային տրակտորին ընկնող արտադրաքանակը կազմել է 980 էտալոնային հեկտար: Կամ էլ, երբ հանքային պարարտանյութերն օգտագործելիս, օրինակ, հացա-



հատիկային կուլտուրաների արտադրության ժամանակ նորմատիվի համեմատությամբ ստանում ենք մոտ 70 տոկոս հավելում: Կամ, մենք արդյոք իրավունք ունե՞նք հանրապետության սակավաջրության, Սևանի պրոբլեմի առկայության պայմաններում թույլ տալ ոռոգման ջրի ոչնչով չարդարացված գերածախսեր: Իսկ մի՞թե թույլատրելի է, որ պտղի, խաղողի, բանջարաբոստանային կուլտուրաների և ծխախոտի աճեցման, խնամքի ու բերքահավաքի ընթացքում գերիշխում է ձեռքի աշխատանքը, և դրա դիմաց վճարը կազմում է ընդհանուր ծախսերի 80—85 տոկոսը:

Պետագրոարդը (ընկ. Վ. Մովսիսյան), մելիորացիայի և ջրային տնտեսության մինիստրությունը (ընկ. Յու. Ջավադյան), «Հայգլխջրշինը» (ընկ. Մ. Գևորգյան), կուսակցության շրջկոմներն ու շրջգործկոմները, շրջանային ագրոարդյունաբերական միավորումները- պետք է անհետաձգելի և գործուն միջոցներ ձեռնարկեն գյուղատնտեսական արտադրության բոլոր հիմնական ֆոնդերի ու միջոցների և առաջին հերթին հողի վիճակն ու օգտագործումը արմատապես բարելավելու, կապիտալ ներդրումների ստրուկտուրայի զարգացման, մելիորատիվ աշխատանքների տեմպերի արագացման և որակի բարելավման, գիտատեխնիկական առաջադիմության նվաճումների, հողագործության գիտականորեն հիմնավորված համակարգերի ներդրման, ինտենսիվ և ինդուստրիալ տեխնոլոգիաների լայնորեն անցնելու միջոցով նրա բերրիությունն ըստ ամենայնի բարձրացնելու համար:

Կենտկոմի հունիսյան պլենումում սրությամբ դրվեց նախ և առաջ հացահատիկային և կերային կուլտուրաների արտադրության կայունությունն ապահովելու խնդիրը: Դա, ընդգծվեց պլենումում, գլխավոր պրոբլեմն է, որի հաջող լուծումից մեծապես կախված են անասնապահության կայուն զարգացումը, կոլտնտեսությունների և սովխոզների եկամուտները, վերամշակող ձեռնարկությունների էկոնոմիկան: Մեր հանրապետությունում վարելահողերի մեծ մասը տրամադրված է այդ երկու կուլտուրաներին:

Պետք է ուղղակի ասել, որ այդ ուղղություններում մենք լուրջ թերություններ ունենք: Եվ դա այն դեպքում, երբ ՀԿԿ Կենտկոմն ու հանրապետության Մինիստրների խորհուրդը հատուկ միջոցներ էին մշակել թե՛ հացահատիկի արտադրության ծավալների մեծացման, թե՛ անասնապահության զարգացման և թե՛ հանրապետությունում կերարտադրության բարելավման ասպարեզում: Ամբողջ բանն այն է, որ դրանք լրիվ ծավալով և նվազագույն ժամկետներում չեն իրացվել: Սրա պատճառներն են՝ թե՛ անկարգապահությունը, թե՛ անպատասխանատվությունը, թե՛ նպատակասլաց, հետևողական և արդյունավետ աշխատելու անկարողությունը:

Հանրապետությունը ամեն տարի կատարում է հացահատիկի մթերման սահմանված պլանները: Եվ, ըստ երևույթին դա հանգստացնում է մեր ընկերներին: Մեր առանձին կուսակցական, սովետական և տնտեսական ղեկավարներ, շատ աշխատողներ, որոնք տեղերում զբաղվում են հացահատիկային կուլտուրաների արտադրությամբ, երևի մոռացել են, որ ՀԿԿ Կենտկոմի 1982 թվականի հոկտեմբերյան պլենումը, որը քննության առավ հանրապետության հացահատիկային տնտեսության զարգացման հարցերը, խնդիր դրեց առաջիկա տարիներին հացահատիկային կուլտուրաների միջին բերքատվությունը հեկտարից հասցնել 30—35 ցենտների, իսկ համախառն բերքը՝ 400 հազար տոննայի:

Մինչդեռ իրականում տասնմեկերորդ հնգամյակի տարիներին հացահատիկի տարեկան միջին համախառն բերքը տասներորդ հնգամյակի համապատասխան ցուցանիշի համեմատությամբ, նվազել է 5,3 տոկոսով, ամբողջությամբ վերցված հանրապետությունում հացահատիկի արտադրության պլանը կատարվել է 91,3 տոկոսով, վատացել է հացահատիկի որակը: Միայն հեկտարի միջին բերքատվությունն է հնգամյակում բարձրացել 1,6 ցենտներով և կազմել 19,6 ցենտներ, և այն էլ հիմնականում ցանքատարածությունների կրճատման հաշվին:

Հացահատիկի արտադրության հնգամյա պլանները չեն կատարել 27 շրջաններ, իսկ Անիի (շրջկոմի քարտուղար՝ ընկ. Ս. Նազարյան), Գորիսի (ընկ. Ռ. Ալեքսանյան), Նաիրիի (ընկ. Մ. Հայրապետյան), Թումանյանի (ընկ. Ա. Շահվերդյան), Թալինի (ընկ. Ս. Մանուկյան), Շամշադինի (ընկ. Հ. Քոսակյան) և այլ շրջաններ դրա արտադրությունը տասներորդ հնգամյակի համեմատությամբ նվազեցրել են: Հացահատիկային կուլտուրաների բերքատվությունը նվազել է Թալինի, Կալինինոյի, Վարդենիսի շրջաններում: Եղեգնաձորի, Ազիզբեկովի, Թալինի, Կրասնոսելսկի,

Ամասիայի շրջաններում տասնմեկերորդ հնգամյակի տարիներին միջին հաշվով հեկտարից հավաքել են ընդամենը 9,8—11,7 ցենտներ հացահատիկ:

Նշված շրջանների կուսակցական, սովետական և գյուղատնտեսական մարմինները պետք է ամենալուրջ հետևություններ անեն և անհրաժեշտ բեկում մտցնեն աշխատանքում:

Իհարկե, 1982—85 թվականների արդյունքների վրա անդրադարձել են եղանակի աննպաստ պայմանները, բայց, ըստ երևույթին, մեզ համար վատ եղանակը նորմա է դառնում և պետք է սովորել աշխատել ծանր պայմաններում: Այնտեղ, ուր լավ են աշխատել, չնայած եղանակի քմահաճույքներին, արդյունքները, որպես կանոն, բարձր են: Իսկ լավ աշխատել, նշանակում է լայնորեն արմատավորել ծրագրավորված բերքով հողագործության համակարգը, ցանքը կատարել լավագույն ժամկետներում և կոնդիցիոն սերմացուով, լավ պարարտացված հողում, ժամանակին կատարել ցանքերի խնամքի հետ կապված ագրոտեխնիկական միջոցառումների ամբողջ կոմպլեքսը, սեղմ ժամկետներում և անկորուստ հավաքել բերքը:

Կենտկոմի հունիսյան պլենումի պահանջների լույսի ներքո յուրաքանչյուր շրջանում, տնտեսությունում պետք է ինքնաքննադատաբար վերլուծել հացահատիկային տնտեսությունում տիրող իրադրությունը և ամենաանհետաձգելի միջոցներ ձեռնարկել հացահատիկային կուլտուրաների բերքատվության շեշտակի բարձրացման հիման վրա արտադրության ծավալները մեծացնելու համար: Այստեղ պետք է իրենց ծանրակշիռ խոսքն ասեն նաև մեր գիտաշխատողները, որոնք պետք է առավել համառություն դրսևորեն մեր գիտահետազոտական ինստիտուտներում բուծված բարձր բերքատու սորտերը, ինչպիսիք են «Կանգուն—20»-ը, «Արարատի—7»-ը, արմատավորելիս:

Իսկ այժմ՝ անասնապահության և կերարտադրության մասին: Հանրապետությունում քիչ բան չի արվել կերի բազան ամրապնդելու և անասնապահական մթերքների ծավալն ավելացնելու համար: Գերակատարվել են պետությանը անասնապահական մթերքների վաճառքի պլանները: Դրա հետ մեկտեղ պետք է ուղղակի ասել, որ այդ մթերքների արտադրության ծավալների արագ մեծացման առկա հնարավորությունները լիովին չեն օգտագործվում: Շատ տնտեսություններում այն անբավարար է զարգանում: 1985 թվականին բնակչության մեկ շնչի հաշվով արտադրվել է ընդամենը 33,3 կգ միս, 164 կգ կաթ, 170 ձու: Շատ դանդաղ է բարձրանում անասունների մթերատվությունը: Վերջին հինգ տարում մեկ կովի կաթնատվությունը ավելացել է ընդամենը 158 կգ-ով և կազմել 2.130 կգ: Կոլտնտեսությունների ու սովխոզների կեսում կաթնատվությունը 2.000 կգ-ից ցածր է, իսկ 196 տնտեսությունում՝ 1.700 կգ-ից պակաս:

Տասնմեկերորդ հնգամյակում Իջևանի շրջանում (շրջկոմի քարտուղար՝ ընկ. Զ. Անանյան) մեկ կովի կաթնատվությունը 1.647 կգ պլանի պայմաններում (ավելի ցածր չի լինում) փաստորեն ստացել են 1.568 կգ: 1986 թվականի համար պլանավորված է 1.666 կգ:

Թալինի շրջանի Աշնակ, Վերին Բազմաբերդ, Սորիկ, Ագարակ, Թալին, Ներքին Սասնաշեն գյուղերում մեկ կովից միջին հաշվով ստանում են ընդամենը 1.289—1.454 կգ կաթ: Նույնքան կաթ են կթում նաև Ամասիայի շրջանի Գյոլի, Կուզիքենդ, Անիի շրջանի Ջրափի, Հայկաձոր, Սառնաղբյուր, Եղեգնաձորի շրջանի Շատին, Գյուլիդուզ, Վերնաշեն գյուղերի տնտեսություններում: Մի՞թե սա թույլատրելի բան է, ընկերներ: Պարտավոր չե՞ն արդյոք այդ տնտեսությունների ղեկավարները, կուսակցական կազմակերպությունները պատասխանատվություն կրել գործերի այդպիսի վիճակի համար:

Բտման մասնագիտացված տնտեսություններում լայն կիրառություն չեն ստացել անասունների ինտենսիվ աճեցումն ու բտումը: Չարդարացված կերպով ձգձգվում են անասունների աճեցման և բտման ժամկետները: Հինգ տարում պետությանը հանձնված խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակի միջին քաշը ավելացել է ընդամենը 22 կիլոգրամով և կազմում է 320 կիլոգրամ: Համալիրներում խոզերի օրական միջին քաշաճը չի անցնում 270 գրամից, կոլտնտեսություններում ու սովխոզներում՝ 177 գրամից:

Հանրապետության տնտեսություններում 100 կովից միջին հաշվով ստանում են 76—78 հորթ, հորթերի ստացումը 1985 թվականին առանձնապես ցածր է եղել Թու-



մանյանի շրջանի տնտեսություններում՝ 57 գլուխ, Բաղրամյանի շրջանում՝ 60, Ստեփանավանի շրջանում՝ 63, Ամասիայի և Կամոյի շրջաններում՝ 65: Ստուգումները ցույց են տալիս, որ 1986 թվականի անցած ժամանակամիջոցում էլ կտրուկ բեկում չի նկատվում: Ի՞նչ են մտածում հիշյալ շրջանների կուսշրջկոմների առաջին քարտուղարներ ընկ. ընկ. Ա. Շահվերդյանը, Հ. Մինասյանը, Վ. Բալայանը, Ի. Բաղիրովը և Հ. Զարգարյանը, վերակառուցե՞լ են արդյոք նրանք աշխատանքը կուսակցության համագումարի ոգով: Անշուշտ՝ ոչ:

Անիի շրջանում 1985 թվականին «հաջողել» են 100 մայր ոչխարից ստանալ 74 գառ, իսկ Աշտարակի շրջանում (քարտուղար՝ ընկ. Մ. Խաչատրյան)՝ 72:

Հանրային անասնապահության մթերատվության բարձրացման դանդաղ տեմպերը մեզանում հետևանք են կերարտադրության անբավարար վիճակի: Հանրապետության համար կերի թույլ բազան հատկանշական է արդեն երկար տարիներ, և այն դարձել է անասնապահության զարգացումը կասեցնող գլխավոր գործոնը:

Կոշտ և հյութալի կերերի արտադրությունը տասնմեկերորդ հնգամյակում թեև նախորդի համեմատությամբ աճել է 29 տոկոսով, սակայն մեկ պայմանական գլխի հաշվով դանդաղ է աճում և անցած հնգամյակում կազմել է ընդամենը 11,9 ցենտներ կերամիավոր՝ տասներորդ հնգամյակի 9,5 ցենտների դիմաց: Կերարտադրության ավելացումը հիմնականում ձեռք է բերվել կերային կուլտուրաների տարածությունների ընդլայնման հաշվին: Կերային կուլտուրաների տեսակարար կշիռը ցանքատարածությունների ստրուկտուրայում հասել է 54 տոկոսի և շարունակում է աճել:

Հանրապետությունում չկա կերարտադրության գիտականորեն հիմնավորված համակարգ, ցածր է կերային կուլտուրաների և հատկապես առվույտի սերմնաբուծության կազմակերպման մակարդակը:

Կոշտ, հյութալի և արոտավայրային կերերի ավելացման առկա հնարավորությունները ամենևին էլ լիովին չեն օգտագործվում: Շատ տնտեսություններում կերարտադրությունը առաջվա նման էքստենսիվ բնույթ է կրում:

Կուսակցական կոմիտեներն ու կազմակերպությունները հաշտվել են կերարտադրության ետ մնալու հետ, պատշաճ պահանջկոտություն չեն ցուցաբերում գյուղատնտեսական մարմինների, կոլտնտեսությունների ու սովխոզների ղեկավարների ու մասնագետների նկատմամբ այդ ճյուղի անբավարար զարգացման համար: Կենտկոմի և հանրապետության կառավարության կողմից վերահսկողության բացակայության հետևանքով կերարտադրության զարգացման՝ տասնմեկերորդ հնգամյակի համար մշակված կոմպլեքսային ծրագրի իրականացումը փաստորեն ձախողվել է բոլոր ցուցանիշներով:

Տարիներ շարունակ առանձին ֆերմաներում անասունները պահվում են կիսաքաղց կերապաշարով: Անցած ձմեռման ընթացքում 80 կոլտնտեսություններ ու սովխոզներ մեկ պայմանական գլխի հաշվով ունեին 7 ցենտներից պակաս կերամիավոր: Յուրաքանչյուր երրորդ տնտեսություն կուտակել էր 11 ցենտներից պակաս կերամիավոր:

Շարունակում է ցածր մնալ կերային կուլտուրաների բերքատվությունը: Դրանց ցանքատարածությունների մեկ հեկտարից տասնմեկերորդ հնգամյակում միջին հաշվով ստացվեց 20,4 ցենտներ կերամիավոր:

Հանրապետությունում կերային կուլտուրաների մոտ 30 տոկոսը աճեցվում է ոռոգելի հողերում: Սակայն այդ տարածությունները ռացիոնալ չեն օգտագործվում: 1985 թվականին ոռոգելի հողատարածությունների 24 տոկոսը զբաղված էր ցածր բերքատու միամյա խոտաբույսերով և սիլոսի կուլտուրաներով: Բազմամյա խոտաբույսերի յուրաքանչյուր ոռոգելի հեկտարից հավաքվել է 56 ցենտներ խոտ և ընդամենը 29 ցենտներ միամյա խոտաբույս կամ գրեթե կրկնապատիկ պակաս: Բազմամյա խոտաբույսերի կառուցվածքում առվույտին բաժին է ընկնում ցանքատարածությունների 63 տոկոսը, յուրաքանչյուր երրորդ ոռոգելի հեկտարը հատկացվում է պակաս բերքատու կորնգանին:

Մարտունու շրջանում կերային կուլտուրաների ցանքատարածությունների կեսը տասնմեկերորդ հնգամյակում հատկացված էր միամյա խոտաբույսերին: 1985 թվականին դրանց յուրաքանչյուր հեկտարից հավաքվեց ընդամենը 16,7 ցենտներ խոտ և 72 ցենտներ կանաչ զանգված կամ այնքան, որքան այստեղ ստանում են բնական

ցանատիկային կերեր են ծախսվում առանց սպիտակուցային հավելանյութերով հարստացվելու: Պատշաճ ուշադրություն չի նվիրվում ինդուստրիալ տեխնոլոգիաներով կերերի արտադրությանը:

Անբավարար է օգտագործվում գիտահետազոտական ինստիտուտների պոտենցիալը, դանդաղ է ամրապնդվում նրանց կապը արտադրության հետ: Գիտական հիմնարկների հետազոտությունների թեմատիկան հաճախ չի համապատասխանում կերարտադրության ինտենսիվացման ժամանակակից պահանջներին: Վերջին 20 տարում հանրապետության սելեկցիոներները արտադրությանը փաստորեն չեն տվել առվույտի, երեքնուկի, բազմամյա խոտաբույսերի և ոչ մի բարձր մթերատու սորտ:

Մեզանում, ընկերներ, քիչ հնարավորություններ չկան ագրոարդյունաբերական համալիրի տնտեսական պոտենցիալն ավելի արդյունավետորեն օգտագործելու, անասնապահական մթերքների արտադրության ավելացման տեմպերն արագացնելու և սեփական արտադրության մսով ու կաթնամթերքով բնակչության մատակարարումը բարելավելու համար:

Ներկայումս, ՍՄԿԿ XXVII համագումարի որոշումներին համապատասխան, հանրապետությունում ավարտվում է ագրոարդյունաբերական համալիրի բոլոր ճյուղերի ինտենսիվացման կոմպլեքսային ծրագրերի մշակումը: «Կերարտադրության ինտենսիվացում» և «Սպիտակուց» ծրագրերի իրացումը ենթադրում է 1990 թվականին անասնապահության պահանջմունքները լիովին ապահովել սեփական արտադրության կոշտ, կանաչ և հյութալի կերերի, ինչպես նաև պրոտեինի նկատմամբ:

Հարկ ենք համարում հատուկ ընդգծել տեղական սովետների, նրանց գործկոմների և ՇԱԱՄ-ների պատասխանատվության բարձրացման անհրաժեշտությունը կերարտադրության և առհասարակ գյուղատնտեսական արտադրության ինտենսիվացման գործում: Քննադատության ենթարկված շրջանների սովետների գործկոմների ղեկավարները չպետք է մոռանան իրենց անձնական պատասխանատվությունը և ավելի ակտիվորեն աշխատեն նշված թերությունները վերացնելու համար:

Այժմ կերերի մթերման ամենալարված շրջանն է: Հաշվարկները ցույց են տալիս, որ մենք ռեալ հնարավորություններ ունենք ոչ միայն կատարելու, այլև գերակատարելու 2.700 հազար տոննա կոշտ ու հյութալի կերեր կուտակելու սոցիալիստական պարտավորությունները: Բայց դրա համար հարկավոր է հստակ կազմակերպված, խելամիտ և ակտիվ աշխատանք: Անթույլատրելի է, որ մի շարք շրջաններում՝ Ախուրյանում, Ապարանում, Արարատում, Արթիկում, Գորիսում, Գուգարքում, Վարդենիսում գործուն միջոցներ չեն ձեռնարկվում արագացնելու կերերի կուտակման տեմպերը, խոտը ժամանակին չհնձելու պատճառով կորցնում են դրանց սննդարար արժեքը, փաստորեն կուտակում են ոչ թե խոտ, այլ ծղոտ:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմը գտնում է, որ նաև նրանով, թե ինչքան և ինչ որակի կերեր կկուտակի շրջանը, կգնահատվի գյուղական կուսակցական կազմակերպությունների, սովետական, տնտեսական մարմինների և նրանց ղեկավարների աշխատանքը:

Պարենային ծրագրով առաջադրված է և հաջողությամբ լուծվում է բնակչության անձնական օժանդակ տնտեսությունների զարգացման խնդիրը, տնտեսություններ, որոնք բավականաչափ ծանրակշիռ բաժին ունեն գյուղատնտեսական մթերքների արտադրության մեջ: Բայց այստեղ էլ կան պրոբլեմներ: Անասունների, հատկապես կովերի մթերատվությունը զգալիորեն զիջում է հանրային անասնապահության ցուցանիշներին: Դրա նկատմամբ չպետք է անհաղորդ մնան տեղական մարմինները: Չէ որ սեփական անասունը նույնպես պահվում է հանրային արոտավայրերի հաշվին, կերերը հատկացվում են հանրային ռեսուրսներից և ամենևին էլ միևնույնը չէ, թե դրանք ինչպես են օգտագործվում և ինչ հատույց են տալիս:

Հարկ է պլենումի մասնակիցների ուշադրությունը սևեռել ևս մեկ, ոչ պակաս կարևոր, պրոբլեմի վրա: Վերջին տարիներս նկատվում է բնակչության անձնական օժանդակ տնտեսություններում պահվող անասունների գլխաքանակի աճ: 1985 թվականին այդ հատվածում պահվում էին 284 հազար գլուխ խոշոր եղջերավոր անասուն, 108,7 հազար խոզ և 764 հազար ոչխար: Մեծանում են նաև անասնապահական մթերքների մթերումների ծավալները այդ հատվածում: Սա լավ է: Սակայն այդ պրոցեսը նախ՝ որոշ տեղերում ընթանում է տարերայնորեն: Երկրորդ՝ ոչ բոլոր շրջաններում է անասունների գլխաքանակի աճը ուղեկցվում մսամթերման համապատաս-



խան աճով: Երրորդ՝ կրճատվում է անասուն պահող ընտանիքների թիվը: 1986 թվականի սկզբին կոլտնտեսականների 54 տոկոսը և սովխոզների բանվորների 40 տոկոսը անասուն չէր պահում:

Այս ամենից հետո արժե՞ զարմանալ, որ, օրինակ, անցյալ տարի Սիսիանում բնակչության պահած 25 հազար գլուխ ոչխարից պետությանը վաճառվել է ընդամենը 547 գլուխ, Շամշադինի շրջանում՝ 11 հազար գլխից 42, Կրասնոսելսկի շրջանում՝ 24,5 հազարից 218, Իջևանի շրջանում՝ 11 հազարից 87, Գորիսի շրջանում՝ 27 հազարից 379, իսկ Մասիսի շրջանում՝ 12 հազար ոչխարից և ոչ մի գլուխ:

Հանրապետությունում աշխատանք է տարվում նաև արդյունաբերական ձեռնարկություններում գյուղատնտեսական օժանդակ տնտեսությունների կազմակերպման ուղղությամբ:

Սակայն օժանդակ տնտեսությունները առայժմ դանդաղ են զարգանում: Ակտիվության ու նախաձեռնության այն ալիքը, որ բարձրացավ տասնմեկերորդ հնգամյակի սկզբին, կարծես թե մարել է:

Հանրապետությունում մշակվել են արդյունաբերական ձեռնարկությունների օժանդակ տնտեսությունների զարգացման կոմպլեքսային միջոցառումներ: Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոն հավանություն է տվել տվյալ հարցի առթիվ հանրապետության կառավարության առաջարկություններին: Այժմ անհրաժեշտ է, որ արդյունաբերական ձեռնարկությունների, շինարարական կազմակերպությունների և մյուս ճյուղերի աշխատավորական կոլեկտիվները ակտիվորեն ձեռնամուխ լինեն այդ կարևոր խնդրի իրագործմանը:

Պարենային ռեսուրսների ավելացման պրոբլեմի հաջող լուծումը ենթադրում է արտադրանքի թողարկման մեծացման հետ միասին բարելավել դրա օգտագործումը: Ագրոարդյունաբերական համալիրում ավելի, քան ժողովրդական տնտեսության որևէ այլ ճյուղում, սրությամբ ծառացած է կորուստների վերացման պրոբլեմը: Այս կապակցությամբ տասներկուերորդ հնգամյակում կարևորագույն խնդիր պետք է դառնա գյուղատնտեսական մթերքների պահպանության ու վերամշակման գործի վճռական բարելավումը: Մենք չպետք է մոռանանք, որ երկրագործության և անասնապահության արտադրանքի մեկ ցենտների պահպանումը ծախսումների առումով զգալիորեն էժան է նոր թողարկվող արտադրանքի մեկ ցենտներից: Ուստի ագրոարդյունաբերական հատվածում ինվեստիցիոն քաղաքականությունը պետք է վարվի՝ հաշվի առնելով նաև այս հանգամանքը: Հանրապետության Մինիստրների խորհուրդը, պետագրոարդը, պետպլանը պետք է գործին այնպիսի ընթացք տան, կապիտալ ներդրումները այնպես տնօրինեն, որ ընթացիկ հնգամյակում արմատական տեղաշարժ ապահովվի այդ պրոբլեմի լուծման ճանապարհին: Սա առավել ևս կարևոր է այն պատճառով, որ ապահովվածությունը պահեստարաններով ներկայումս կազմում է նորմատիվի 42,5 տոկոսը, իսկ առկա տարողություններում տեխնոլոգիան և սարքավորումները միշտ չէ, որ ապահովում են արտադրանքի պահպանության բարձր որակ: Չի կարելի հաշտվել այն բանի հետ, որ բերքահավաքի, տարայավորման փոխադրման, պահպանության տեխնոլոգիաների կոպիտ խախտումների պատճառով փչանում է մեծ քանակությամբ արտադրանք, իջնում է դրա որակը, ինչը վերջին հաշվով հանգեցնում է բնակչության մատակարարման գործի վատացման: Կատարյալ լինելուց հեռու է պահեստարանների և վերամշակող կարողությունների տեղաբաշխման սխեման:

Պտղաբանջարեղենի պահպանության և իրացման նյութատեխնիկական բազայի զարգացման աշխատանքը անբավարար է կազմակերպված: Շարունակ ձախողվում են դրանց կառուցման ու գործարկման պլանները: Մարտունու շրջանում 6 հազար տոննա կարտոֆիլի համար նախատեսված պահեստարանը գյուղական շինարարները կառուցում են 6 տարի: 8 հազար տոննա պտղի համար Աշտարակի շրջանում կառուցվող սառեցման խոշոր պահեստարանի շինարարությունը սկսվել է 1982 թվականին, իսկ Բաղրամյանի շրջանում՝ 1981 թվականին:

Եթե պտղաբանջարեղենի պահեստարանները այսուհետև էլ կառուցվեն նույն տեմպերով, ապա հազարավոր տոննաներով բարիք վաղօրոք դատապարտված կլինի փչացման: Սրա հետ մենք չենք կարող և չպետք է հաշտվենք:

Օրերս Կենտկոմի բյուրոն քննարկեց պտղաբանջարեղենի արտադրանքի պահպանության կարողությունների ստեղծման գործում տիրող վիճակը և նախանշեց

միջոցներ ևս մնալը հաղթահարելու համար: Այդ միջոցառումների իրագործումը կպահանջի ոչ միայն պետագրոարդի, այլև տեղական կուսակցական և սովետական մարմինների, այն մինիստրությունների ու գերատեսչությունների անդուլ ուշադրությունը, որոնք կոչված են մասնակցելու պարենային ծրագրի իրականացմանը:

Եվ ապա: Անհրաժեշտ է ագրոարդի պայմաններում հատուկ ուշադրություն դարձնել արդյունաբերության վերամշակող ճյուղերի ձեռնարկություններում տեխնիկայի ու տեխնոլոգիայի անընդհատ զարգացմանը: Ճյուղային մինիստրությունների բացակայության պայմաններում այս պարագան առանձնահատուկ նշանակություն է ձեռք բերում: Պետագրոարդը երբեք չպետք է տեսադաշտից բաց թողնի այդ ճյուղերի զարգացման «գաղափարախոսությունը», դրանք մշտապես հագեցնի նոր, առաջավոր, ժամանակակից սարքավորումներով և տեխնիկայով:

Հանրապետության կոլտնտեսությունների ու սովխոզների զարգացումն արագացնելու համար անհրաժեշտ է քննության առնել գիտաարտադրական միավորումներ ստեղծելու հարցը, մշտապես որոնել արտադրության և աշխատանքի կազմակերպման ավելի հստակ ու արդյունավետ միջոցներ:

Ագրոարդյունաբերական համալիրի բոլոր ճյուղերի և ամենից առաջ կոլտնտեսությունների ու սովխոզների համար պետք է նորմա դառնան իսկական տնտհաշվարկը, ձեռնարկությունների և նրանց կոլեկտիվների անդամների եկամուտների կախվածությունը աշխատանքի վերջնական արդյունքներից:

Գյուղական կուսակցական կոմիտեները և շրջանային սովետական մարմինները պետք է կոլեկտիվների և նրանց ղեկավարների պատասխանատվությունը բարձրացնելու միջոցով հուսալի պատնեշ կանգնեցնեն անտնտեսվարության և խնամառության առջև, վերջ տան այսպես կոչված «օբյեկտիվ հանգամանքներ» վկայակոչելուն, որոնք առանձին ղեկավարների համար դարձել են անկարողությունը, իսկ երբեմն էլ ավելի լավ աշխատել չցանկանալը քողարկելու միջոց:

Գյուղատնտեսական արտադրության աշխատողները և առաջին հերթին նրա հրամանատարները պետք է մեկընդմիշտ յուրացնեն, որ արտադրության ընդլայնումն ու զարգացումը, նրա էկոնոմիկայի ամրապնդումը, աշխատանքի խթանումը պետք է կատարվեն հիմնականում սեփական միջոցների հաշվին՝ ինքնածախսածածկման և ինքնաֆինանսավորման հիման վրա: Այլ խոսքով՝ տնտեսավարման պայմանները արմատապես փոխվում են: Սա էլ, իր հերթին, պահանջում է լրջորեն փոխել ղեկավարման ոճն ու մեթոդները ագրոարդյունաբերական համալիրի բոլոր մակարդակներում: Եվ այստեղ գործը կախված կլինի կադրերից, նոր ձևով աշխատելու նրանց ընդունակությունից և պատրաստակամությունից:

# V

Տնտեսական ու սոցիալական զարգացման առաջիկա պլանների հաջող կատարման համար մենք պետք է տնտեսավարենք փութաջանորեն, կառավարենք հմտորեն, գործի դնենք այն բոլոր ռեզերվները, որոնք կարող են նպաստել մեր առաջընթացի արագացմանը:

Տնտեսական գործունեության բոլոր օղակներում մենք պետք է իրագործենք աշխատանքի արտադրողականության պլանաչափ բարձրացման խոր վերլուծություն, ըստ գործոնների դրա աճը հստակորեն հաշվեկշռենք մեր զարգացման քանակական ցուցանիշների հետ:

Մենք շատ միջոցներ ենք հատկացնում արտադրության և աշխատանքի պայմանների բարելավմանը, արդյունաբերական ձեռնարկությունների տեխնիկական մակարդակի բարձրացմանը: Այս ամենը պետք է անպայման ուղեկցվի արտադրության ու աշխատանքի կազմակերպման, աշխատանքի խթանման նոր մեթոդների ակտիվ ներդրումով, որպեսզի ի վերջո ստացվեն տնտեսական գործունեության ավելի բարձր արդյունքներ: Բայց, ցավոք, դա ամենուրեք չէ, որ այդպես է: Օրինակ, տասնմեկերորդ հնգամյակում Անդրկովկասյան երկաթուղու Երևանի բաժանմունքում (պետ՝ ընկ. Հ. Ղանդիլյան) իրացվել է շուրջ 83 միլիոն ռուբլի կապիտալ ներդրում, ֆոնդազինվածությունն աճել է 41,2 տոկոսով, միջին աշխատավարձը՝ 11 տոկոսով: Միևնույն ժամանակ աշխատանքի արտադրողականությունը 1985 թվականին 1980



թվականի համեմատությամբ իջել է 4,4 տոկոսով, փոխադրումների ինքնարժեքն աճել է 33,2 տոկոսով, իսկ շահագործական ծախսերը ավելացել են 18,1 տոկոսով: Ամբողջությամբ վերցված հնգամյակի ընթացքում աշխատանքի արտադրողականության պլանը կատարվել է 97,7 տոկոսով: Չխոսելով դրա պատճառների մասին, ընդգծենք, որ բելոռուս երկաթուղայինների փորձի ակտիվ ներդրումը կապահովի տրանսպորտի ավելի կայուն աշխատանք և միևնույն ժամանակ թույլ կտա բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը: Մյուս կողմից՝ անհրաժեշտ է, որ հանրապետության կառավարությունը ՍՍՀՄ հաղորդակցության ճանապարհների մինիստրության հետ համատեղ լուծի բաժանմունքի աշխատանքի ցուցանիշների պլանավորման մի շարք հարցեր՝ հաշվի առնելով Իջևան—Հրազդան երկաթուղու շահագործման հետ կապված նոր հանգամանքները:

Էկոնոմիկայի նոր որակը հրամայաբար ենթադրում է նաև արմատական վերափոխումներ թողարկվող արտադրանքի որակի բարձրացման գծով: Կուսակցական համագումարը որակի պրոբլեմն առաջադրեց որպես համազգային խնդիր: Մենք պետք է թողարկենք միայն այնպիսի արտադրանք, որը կարող է բավարարել հասարակական և անձնական կոնկրետ ռեալ պահանջմունքները: Անհրաժեշտ է կազմավորել օբյեկտիվ պայմաններ, կադրերին հոգեբանորեն տրամադրել անպայման կատարելու արտադրանքի որակի արմատական բարելավման մասին ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշումները:

Հարկ է ասել, որ մեզանում քիչ չեն այնպիսի աշխատավորական կոլեկտիվները, որոնք կայուն կերպով թողարկում են լավորակ արտադրանք, որտեղ իրոք մշակվել և իրացվում են որակի բարձրացման կոնկրետ միջոցառումներ, ի դեպ դրանցից շատերում՝ այժմ գործող սարքավորումներով, չսպասելով նոր տեխնիկայի ստացմանը: Սա մեկ անգամ ևս ապացուցում է, որ արդեն իսկ բարեխիղճ աշխատանքով, գոյություն ունեցող տեխնիկայի ու տեխնոլոգիայի հնարավորությունների ճիշտ և առավելագույն օգտագործումով կարելի է բարելավել արտադրանքի որակը: Դրա հետ մեկտեղ այդ աշխատավորական կոլեկտիվներում կազմվել և սկսել են իրացվել թողարկվող արտադրանքի տեխնիկական մակարդակի և որակի բարձրացման կոմպլեքսային հեռանկարային պլաններ:

Բայց քիչ չեն նաև այնպիսի ձեռնարկությունները, որտեղ ոչ միայն հետևողական աշխատանք չի տարվում որակի բարձրացման ուղղությամբ, այլև բոլոր միջոցներով պայքարում են, որպեսզի ապագա տարիների արտադրական պլաններում նախատեսվի հին, վաղուց ի վեր յուրացված արտադրանքի թողարկում: Եվ, ցավոք, պլանավորող մարմինները հաճախ ընդառաջում են դրանց մերթ աճի տեմպերի ապահովման, մերթ մտացածին նկատառումներով, թե «վերջին հաշվով ձեռնարկությունը չի կարելի փակել, հապա կոլեկտիվն ինչ անենք» և այլն:

Եթե պլաններում արտադրանքի որակի բարձրացման շեշտակի բեկում չի նախատեսվում, ապա խեղաթյուրվում է դրանց հենց սոցիալական ֆունկցիան: Պլանի մեջ մտցված ցածր որակի արտադրանքը նախօրոք դատապարտված է սպառող չունենալու և պահեստներում կուտակվելու՝ որպես գերնորմատիվ մնացուկ, նա թուլացնում է պլանի մոբիլիզացնող ուժը: Եթե մենք ուզում ենք արմատապես լուծել որակի բարձրացման հարցը, ապա պլաններում տեղ չպետք է ունենա այն արտադրանքը, որը չի համապատասխանում ինչպես ժամանակակից, այնպես էլ պլանավորվող ժամանակաշրջանում աճող հասարակական պահանջմունքներին:

Բոլոր կազմակերպությունների գործունեության գնահատականի հիմքը պետք է լինի գործնականում թողարկվող արտադրանքի, բարձր որակի հասնելը և ոչ թե դրա բարձրացման նպատակին ուղղված զանազան միջոցառումների քանակը: Այս մասին ասվում է այն պատճառով, որ մեր շատ մինիստրություններ ու գերատեսչություններ, արտադրական միավորումներ ու ձեռնարկություններ կանոնավոր կերպով զեկույցներ են տալիս արտադրանքի որակի կառավարման կոմպլեքսային համակարգ մշակելու և ներդնելու մասին, բայց թողարկվող արտադրանքի որակը ոչ միայն չի բարձրանում, այլև նույնիսկ վատանում է: 1985 թվականին հանրապետության միութենական ենթակայության ձեռնարկությունների 53 տոկոսը մշակել կամ ներդրել է արտադրանքի որակի կառավարման կոմպլեքսային համակարգեր, իսկ որակի բարձրագույն կատեգորիայի արտադրանքի տեսակարար կշիռը այդ նույն տարում նվազել է 0,5 նիշով: Միութենական-հանրապետական ենթակայության ձեռնարկու-

թյուններից այդպիսի համակարգեր է ներդրել 50 տոկոսը, իսկ որակի բարձրագույն կատեգորիայի արտադրանքի տեսակարար կշռի նվազումը կազմել է 0,6 նիշ: Հաստոցաշինական արդյունաբերության մինիստրության ձեռնարկությունների առաջին կիսամյակի պլաններով նախատեսվում էր որակի բարձրագույն կատեգորիայի արտադրատեսակների տեսակարար կշիռը հասցնել 49,3 տոկոսի, իսկ փաստորեն ապահովվեց 35,9 տոկոս: Սարքաշինական արդյունաբերության մինիստրության ձեռնարկություններում 1985 թվականի առաջին կիսամյակում այն կազմում էր 34 տոկոս, իսկ 1986 թվականի նույն ժամանակամիջոցում՝ 20,8 տոկոս:

Չարենցավանի հաստոցաշինական արտադրական միավորումում (գլխավոր դիրեկտոր՝ ընկ. Գ. Երիցյան, կուսկազմակերպության քարտուղար՝ ընկ. Լ. Դալլաքյան) 1980 թվականին արտադրված հաստոցների 33,5 տոկոսը պետական որականիշ է կրել, իսկ 1985 թվականին և ներկայումս թողարկվող հաստոցների մոդելներից և ոչ մեկը որակի բարձրագույն կատեգորիայով չի ատեստավորված: Խիստ կրճատվել է արտահանման ենթակա արտադրանքի թողարկման ծավալը, որը 1985 թվականին կազմեց ապրանքային արտադրանքի ընդհանուր ծավալի 2 տոկոսը՝ 1980 թվականի 15 տոկոսի դիմաց:

Արտադրանքի որակի բարձրացման պահանջվող արդյունքները չկան հանրապետության նաև թեթև արդյունաբերության մինիստրության ձեռնարկություններում: Հանրապետության տեղական արդյունաբերության սիստեմում (մինիստր՝ ընկ. Մ. Զուրաբյան) 1986 թվականի առաջին եռամսյակում, անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ, արտադրանքի վնասապահանջի քանակն ու գումարը ավելացել են գրեթե կրկնապատիկ, իսկ անհամապատասխան որակի արտադրանքի մատակարարման համար գանձվող տուգանքները ավելացել են 2,5 անգամ:

Ի՞նչ են ասում այս բոլոր փաստերը: Այն, որ շատ ձեռնարկություններում, կազմակերպություններում և մարմիններում որակի բարձրացման հարցում առայժմ վերակառուցվել են միայն խոսքով և ոչ թե գործով: Այն, որ որոշ տեղերում ձգտում են այդ կարևորագույն խնդիրը լուծել հին,շաբլոն ձևով, որը, իհարկե, ոչ մի լավ բան չի խոստանում:

Յուրաքանչյուրը՝ անկախ նրանից, թե որտեղ է աշխատում՝ հաստոցի մոտ, դաշտում, տնտեսական, կառավարչական օղակում թե կուսակցական մարմնում, պետք է պարզ ու հստակ գիտակցի. առանց արտադրանքի որակի կտրուկ բարձրացման չի կարող լինել իսկական արագացում և համապատասխանաբար պետք է վերակառուցի իր վերաբերմունքը տնտեսական, սոցիալ-քաղաքական այդ կարևորագույն խնդրի լուծման նկատմամբ, գործի ստեղծագործաբար, ակտիվորեն և արդյունավետ:

Հունիսյան պլենումը պահանջեց վճռական փոփոխությունների հասնել նաև նյութական, վառելիքաէներգետիկ ռեսուրսների օգտագործման ասպարեզում: Քննարկվող պլանի նախագծում այդ պահանջն իր արտացոլումը գտել է: Օրինակ, պլանով նախատեսված է հանրային համախառն արտադրանքի մեկ ռուբլու նյութական ծախսումների իջեցում 1,2 տոկոսով: Նախատեսված են էլեկտրաէներգիայի սպառման տեմպերի նկատմամբ ազգային եկամտի առաջանցիկ տեմպեր և այլն: Սակայն նախագիծն ունի նաև որոշակի թերություններ: Այն չի նախատեսում որակական տեղաշարժեր արտադրության մեջ ռեսուրսախնայող տեխնոլոգիաների, սակավնյութատար, սակավմետաղատար արտադրանքի ներդրման գործում, ռեսուրսների տնտեսման առկա ռեզերվների լիակատար օգտագործում: Իսկ չէ՞ որ խնդիր է առաջադրված ռեսուրսախնայողությունը վերածել արտադրության պահանջմունքների բավարարման վճռական աղբյուրի: Սա հարկ է շտկել տարեկան պլաններով:

Կուսակցական կոմիտեներն ու կազմակերպությունները, սովետական ու տնտեսական մարմինները պետք է հետևողական աշխատանք տանեն խնայողության ռեժիմն ամրապնդելու համար, որպեսզի խնայողության պլանային առաջադրանքները և սոցիալիստական պարտավորությունները անպայման կատարվեն:

Մեզանում քիչ չեն այնպիսի ձեռնարկությունները, կազմակերպությունները, մինիստրությունները ու գերատեսչությունները, որոնք ձախողում են ռեսուրսների տնտեսման առաջադրանքները: Օրինակ՝ «Հայգունմետշին» տրեստը (պետ՝ ընկ. Ս. Եղյան, կուսկազմակերպության քարտուղար՝ ընկ. Վ. Ստեփանյան) 1986 թվականի առաջին եռամսյակում ծախսելով 1.135 տոննա սև մետաղների գլանվածք, տնտեսել



է 4,7 տոննա գլանվածք, ինչը կազմում է տարեկան խնայողության առաջադրանքի միայն 2,5 տոկոսը: Օգտագործվել է ավելի քան 5 հազար տոննա ցեմենտ, իսկ տնտեսվել է ընդամենը 51,3 տոննա կամ տարեկան առաջադրանքի 6 տոկոսը:

Շինանյութերի արդյունաբերության մինիստրությունը (մինիստր՝ ընկ. Լ. Ղազարյան) 1986 թվականի 3 ամսում 6.828 տոննա պայմանական վառելիքի գերածախս է թույլ տվել: Կիրովականի քիմիական մանրաթելի գործարանը (դիրեկտոր՝ ընկ. Պ. Չախոյան, կուսկազմակերպության քարտուղար՝ ընկ. Գ. Դոնապետյան) ս.թ. առաջին եռամսյակում նախատեսված տնտեսման փոխարեն 710 հիգակալորիա ջերմաէներգիայի և 2,5 միլիոն կիլովատ-ժամ էլեկտրաէներգիայի գերածախս է թույլ տվել:

Նյութական ռեսուրսների օգտագործման ասպարեզում անտնտեսվարությունն այդքան դարձել է անհանդուրժելի և ժամանակն է, որ արմատացած արատների վերացումը նպատակամղվեն տնտեսական ու վարչական լծակները, ամենուրեք անխնա պայքար մղվի շռայլողության դեմ, գործնականում հաստատվի և իրագործվի խնայողության խստագույն ռեժիմ, բոլոր ռեսուրսների խնայողական, հմուտ և հոգատար օգտագործումը դառնա բրիգադների, արտադրամասերի, ձեռնարկությունների, աշխատավորական բոլոր կոլեկտիվների, տնտեսական ղեկավար մարմինների աշխատանքի գնահատման գլխավոր չափանիշներից մեկը:

Վերջերս Կենտկոմի բյուրոն քննարկեց հանրապետության թեթև արդյունաբերության մինիստրության ձեռնարկություններում անտնտեսվարության փաստերի հարցը և խիստ նկատողություն հայտարարեց՝ գրանցելով հաշվառման քարտում, մինիստր ընկ. Ա. Գևորգյանին և նրա առաջին տեղակալ ընկ. Լ. Եղիազարյանին: Մինիստրի տեղակալ ընկ. Ն. Ծահնազարյանին նկատողություն հայտարարվեց՝ գրանցելով հաշվառման քարտում: Խիստ նկատողություն ստացավ՝ գրանցելով հաշվառման քարտում, և զբաղեցրած պաշտոնից ազատվեց «Մասիս» ֆիրմայի գլխավոր դիրեկտոր ընկ. Հ. Հարությունյանը: Կուսակցական տույժ ստացավ «Մասիս» ֆիրմայի կուսկոմիտեի քարտուղար ընկ. Ա. Սուքիասյանը:

Կուսակցական կոմիտեները պարտավոր են տնտեսական ղեկավարներից ավելի խիստ հաշիվ պահանջել շռայլողություն, անտնտեսվարություն, նյութական ռեսուրսների և արժեքների կորուստներ թույլ տալու համար: Յուրաքանչյուր ղեկավար պետք է ռեսուրսների բոլոր տեսակների տնտեսման համար պատասխան տա կուսակցական կազմակերպության և կոմիտեի առջև:

Ինչպես նշվեց հունիսյան պլենումում, հարկավոր է ավելի ակտիվորեն խրախուսել նաև հումքի և նյութերի խնայողությունը: Մի՞թե կարելի է նորմալ համարել, երբ ռեսուրսների խնայողության համար բառացիորեն կոպեկներ են վճարում: Հարկավոր է նաև, որ խնայողությունը դառնա սովորություն, յուրաքանչյուր աշխատողի ներքին հատկանիշը:

Ժողովրդական տնտեսության կայուն և դինամիկ զարգացումը զգալի չափով կախված է էներգաապահովվածությունից: Հանրապետության կառավարությունը, պետպլանը պետք է մեկ անգամ ևս քննության առնեն հանրապետության էներգետիկայի զարգացման պլանները, ճշտեն էլեկտրական և ջերմային էներգիայի արտադրության և սպառման հաշվեկշիռը:

Այսօր էլեկտրական էներգիայի նկատմամբ ժողովրդական տնտեսության և բնակչության հարաճուն պահանջմունքները պետք է ապահովվեն հիմնականում խնայողության հաշվին: Սա պետք է հասկանան բոլորը և կոնկրետ գործեն թե՛ էներգիայի արտադրության, թե՛ նրա ծախսման ու սպառման ոլորտում:

Այս ֆոնի վրա մի՞թե թույլատրելի է, որ միութենական նշանակության մի շարք ձեռնարկություններում արտադրանքի թողարկման վրա էլեկտրաէներգիայի փաստական տեսակարար ծախսումները վերջին տարիներս ավելի շատ են եղել, քան 1980 թվականին, որի հետևանքով գերածախս է թույլ տրվել:

Հանրապետության կառավարությունը պետք է հատկապես զբաղվի այս հարցով:

Պլենումը պետք է կուսակցական կոմիտեներից պահանջի հետևողական և նպատակասլաց աշխատանք տանել էլեկտրաէներգիայի խնայողության և լիմիտային կարգապահության ամրապնդման նպատակով, պահանջելով, սկզբունքային մոտեցում ցուցաբերել վառելիքաէներգետիկ ռեսուրսների ծախսման գործում թույլ տրվող անտնտեսվարության և վատնողության փաստերի նկատմամբ:

Մեր առջև կանգնած է կարևորագույն խնդիր. զորացնել գեներացնող կարողությունները էլեկտրաէներգետիկայում: Հանրապետության պետպլանը պետք է լրացուցիչ միջոցառումներ իրականացնի հանրապետության գետերի հիդրոէներգետիկ պոտենցիալի ավելի լրիվ յուրացման նպատակով: Մինչդեռ անթույլատրելի դանդաղ տեմպերով է կատարվում Սպանդարյանի հիդրոէլեկտրակայանի շինարարությունը Որոտան գետի վրա (գլխավոր կապալառու՝ Հայհիդրոէլեկտրաշին, պետ՝ ընկ. Հ. Հովհաննիսյան): Դանդաղ է իրականացվում փոքր հիդրոկայանների շինարարության ծրագիրը, ինչպես նաև գոյություն ունեցող հիդրոկայանների վերակառուցումն ու արդիականացումը:

Պետպլանը և Հայգլխէներգոն պետք է լուծեն Հրազդանի պետական շրջանային էլեկտրակայանը երկու բլոկով ընդլայնելու և տասներկուերորդ հնգամյակում Երևանի ջերմաէլեկտրակայանը վերակառուցելու հարցը:

Պետք է արագացնել նաև ջրակուտակիչ էլեկտրակայանի նախագծային-որոնողական աշխատանքները, որը կատարում է Հիդրոնախագիծ ինստիտուտի հայկական բաժանմունքը:

Պետպլանը պետք է ավելի ակտիվորեն աշխատի էլեկտրաէներգիայի ոչ ավանդական աղբյուրների՝ արեգակնային, հողմային, գեոթերմիկ էներգիայի զարգացման ուղղությամբ, որի հնարավորությունները հանրապետությունում կան: Այդ աշխատանքները պետք է նախատեսել բառացիորեն 1987 թվականից:

Տասներկուերորդ հնգամյակի կարևորագույն խնդիրը հանրապետության գազամատակարարման կայունության և հուսալիության բարձրացումն է: 1987 թվականին Հյուսիսային Կովկաս—Անդրկովկաս գազամուղի շահագործումը զգալիորեն կբարելավի վիճակը և թույլ կտա ամբողջությամբ գազով աշխատեցնել Երևանի ջերմաէլեկտրակայանը, Երևանի շրջանային կաթսայատները, Կիրովականի ջերմաէլեկտրակայանը: Հարկավոր է չթուլացող տեմպերով շարունակել հանրապետության գազամուղների լայն ցանցի շինարարությունը, կարճ ժամկետներում սկսել Երևանի շրջակա օղակաձև գազամուղի շինարարությունը, գազի ստորգետնյա պահեստարանների ընդլայնման աշխատանքները: Դրա հետ մեկտեղ հարկավոր է հետևողականորեն պայքարել բնական գազի խնայողական օգտագործման համար:

Եվ ապա: Անբավարար է լուծվում գազ օգտագործող օբյեկտները վառելիքի ռեզերվային տեսակով ապահովելու հարցը: Խոսքը հիմնականում մազութի կուտակման ծավալներ ստեղծելու մասին է: Հանրապետությունում ներկայումս կա գազսպառող ավելի քան 1.000 օբյեկտ, որոնք օրական ծախսում են 3,5 միլիոն խորանարդ մետր գազ, և չունեն ռեզերվային վառելիքի տնտեսություն կամ էլ եղածները սարքին չեն:

Հանրապետության կառավարությունը, քաղկոմ-շրջկոմները, կուսակցական կոմիտեները, ժողովրդական դեպուտատների շրջանային սովետների գործկոմները պետք է ամենագործուն միջոցները ձեռնարկեն վիճակը շտկելու համար:

Տասներկուերորդ հնգամյակում նկատելի տեղաշարժեր են նախատեսված հանրապետությունում արտադրության տեղաբաշխման, էկոնոմիկայի տերիտորիալ համամասնությունների կատարելագործման ասպարեզում: Կշարունակվի արդյունաբերության տերիտորիալ տեղաբաշխման գործի հետագա կատարելագործման վերջին երկու հնգամյակում իրեն արդարացրած կուրսը, որի նպատակն է ապահովել փոքր քաղաքների, լեռնային ու նախալեռնային շրջանների կոմպլեքսային սոցիալ-տնտեսական զարգացումը, աշխատանքային և բնական ռեսուրսների ավելի ռացիոնալ օգտագործումը, կանխել արտահոսքի պրոցեսը գյուղական որոշ շրջաններից դեպի հանրապետության խոշոր քաղաքները:

Հնգամյա պլանում նախատեսված միջոցների իրականացումը հնարավորություն կտա անզբաղ բնակչության տեսակարար կշիռը 1990 թվականին իջեցնել 12,8 տոկոսի:

Հանրապետությունում արտադրողական ուժերի տեղաբաշխման պրոցեսը հետագա բարելավում է պահանջում:

Մեզ չի կարող բավարարել Հայաստանի կոմկուսի Կենտկոմի և հանրապետության Մինիստրների խորհրդի «Հայկական ՍՍՀ լեռնային և նախալեռնային շրջանների հետագա սոցիալ-տնտեսական զարգացման միջոցառումների մասին» որոշման կատարման ընթացքը:



Ի դեպ, քննարկվող նախագծում էլ չի նկատվում այդ գործի արագացման ընդգծված կուրս:

Մեր հանրապետության համար այսուհետև էլ հրատապ պրոբլեմներից մեկը մնում է հանրօգուտ աշխատանքի մեջ աշխատունակ բնակչության անզբաղ մասի ներգրավումը: Անզբաղ բնակչության առկայության պայմաններում մի շարք արդյունաբերական ձեռնարկություններ ու կառույցներ, ագրոարդյունաբերական համալիրի կազմակերպություններ զգում են բանվորների, հատկապես որակյալ բանվորների, պակաս: Անզբաղ աշխատունակ բնակչության մեծ տոկոսը, հանրապետության առանձին ռեգիոններում նրա զգալի կենտրոնացումը բացասաբար են անդրադառնում հանրային աշխատանքի արտադրողականության աճի վրա, հանգեցնում մի շարք լուրջ տնտեսական, սոցիալական ու քաղաքական հետևանքների:

Բնակչության զբաղվածության մակարդակի բարձրացման հարցերը լուծելիս կուսակցական ու տնտեսական մարմինները պետք է նախ և առաջ օգտագործեն գործող ձեռնարկություններում աշխատատեղերն ավելացնելու հնարավորությունները արտադրական ապարատի աշխատանքի արդյունավետությունը բարձրացնելու միջոցով: Այս տեսակետից հանրապետության տնտեսական ու սոցիալական զարգացման հնգամյա պլանի նախագծում բավարար խորությամբ չեն մշակված գործող ձեռնարկությունների ու մասնաճյուղերի աշխատանքի հերթափոխայնության բարձրացման հարցերը: Մյուս կողմից՝ լուծում չի ստացել այսպես կոչված երկրորդային աշխատանքային ռեսուրսների, այսինքն գիտատեխնիկական առաջադիմության արագացման շնորհիվ ազատված ռեսուրսների օգտագործման հարցը:

Ձեռնարկությունների մասնաճյուղերի ստեղծումն ու զարգացումը անհրաժեշտ չափով պետք է ուղեկցվի արտադրական և սոցիալական ինֆրակառուցվածքի զարգացմամբ: Տեխնիկական հագեցվածության, աշխատողների որակավորման մակարդակով, արտադրության պայմաններով նրանք չպետք է զիջեն խոշոր ձեռնարկություններին: Նպատակահարմար է ամբողջ հանրապետությունում և մասնավորապես լեռնային շրջաններում ավելի լայնորեն զարգացնել նաև տնայնագործությունը, արհեստագործությունը, հատկապես ավանդական արհեստները: Այս ամենը հաշվի առնելով անհրաժեշտ է էական ճշգրտումներ մտցնել տարեկան պլանների՝ արտադրողական ուժերի տեղաբաշխման, հանրապետության փոքր քաղաքներում ու գյուղական շրջաններում արդյունաբերական պոտենցիալի զարգացման բաժիններում:

Խոր ուսումնասիրություն է պահանջում նաև հետևյալ պրոբլեմը: Չնայած վերջին երկու հնգամյակում հանրապետության առանձին ռեգիոնների սոցիալ-տնտեսական զարգացման մակարդակները հավասարեցնելու, նրանց սոցիալական և տնտեսական զարգացման հաշվեկշռվածությունն ապահովելու քաղաքականության հետևողական իրականացմանը, ձեռք բերված արդյունքները մեզ դեռևս չեն բավարարում: Դեռ զգալի տարբերություններ կան առանձին շրջանների սոցիալական ինֆրակառուցվածքի զարգացման մակարդակներում: Մեկ բնակչին ընկնող կենցաղային ծառայության ծավալի առումով նվազագույն և առավելագույն մակարդակների հարաբերակցությունը հանրապետության վարչական շրջանների միջև կազմում է մոտավորապես 1 : 6, նախադպրոցական հիմնարկներով ապահովվածության առումով՝ 1 : 4, հիվանդանոցային մահճակալներով ապահովվածության առումով՝ 1 : 3 և այլն:

Պետպլանը դեռևս չի մշակել հանրապետությունում տերիտորիալ զարգացման և սոցիալական ինֆրակառուցվածքի տեղաբաշխման կոմպլեքսային ծրագիր, և պլանի ներկայացված նախագիծն այդ բնագավառում որակական փոփոխություններ չի նախատեսում:

Պակաս կարևոր չէ նաև այն, որ մի շարք մինիստրություններ ու գերատեսչություններ, հանրապետության տարածքում տեղաբաշխված միութենական նշանակության ձեռնարկություններ ու միավորումներ սիստեմատիկաբար չեն իրացնում սոցիալական օբյեկտների համար նախատեսված կապիտալ ներդրումները, ցածր է դրա համար նրանց ղեկավարներին ներկայացվող կուսակցական պահանջկոտությունը: Առաջվա նման անբավարար են օգտագործվում նաև սովխոզների ու կոլտնտեսությունների միջոցները կենցաղային օբյեկտների կառուցման համար: Տասնմեկերորդ հնգամյակի տարիներին հանրապետության սովխոզներում կենցաղի տնտե-

# VI

Ինչպես նշվեց ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումում, հասարակության մեջ վերակառուցումը անկարելի է առանց կուսակցության բոլոր օղակներում նրա աշխատանքի ոճի ու մեթոդների վերակառուցման:

ՍՄԿԿ XXVII համագումարից հետո անցած ժամանակաշրջանը համոզիչ կերպով ցույց տվեց, որ վերակառուցման անհրաժեշտությունը խորին ըմբռնումով է ընկալվել հանրապետության կուսակցական քաղկոմների ու շրջկոմների, սկզբնական կուսակցական կազմակերպությունների, կուսակցական կադրերի մեծամասնության կողմից: Եվ վերակառուցումը սկսել է մարմնավորվել պրակտիկայում:

Կուսակցության մի շարք քաղկոմների, շրջկոմների, շատ սկզբնական կուսկազմակերպությունների գործունեության մեջ տեղի է ունենում պահանջվող շրջադարձը դեպի մարդը, դեպի կենդանի գործը: Մարդու հետ տարվող աշխատանքը գտնվում է ուշադրության կենտրոնում: Ամբողջությամբ վերցված բարձրացել է էկոնոմիկայի, մշակույթի, սոցիալական զարգացման կուսակցական ղեկավարման մակարդակը: Խստացվել է կադրերին ներկայացվող պահանջկոտությունը աշխատանքի հանձնարարված տեղամասում գործերի վիճակի համար: Ավելի արագ, ավելի խորիմացությամբ են լուծվում պրակտիկ հարցերը: Ավելի ու ավելի մեծ չափով է ապահովվում ստուգման, թերությունների կանխման և շտկման միասնությունը:

Այս իմաստով կարևոր քայլեր են անում Երևանի, Լենինականի, Կիրովականի քաղաքային, Աշտարակի, Արագածի, Էջմիածնի շրջանային և մյուս կուսակցական կազմակերպությունները:

Սակայն որոշ տեղերում վերակառուցումը ձգձգվում է:

Ժամանակի ոգուն համապատասխանող աշխատանքի նոր ձևերի ու մեթոդների որոնումները հեշտ չեն ընթանում Ամասիայի, Արտաշատի, Շամշադինի, Ստեփանավանի կուսշրջկոմներում: Այստեղ դանդաղ են յուրացվում ղեկավարման քաղաքական մեթոդները, չի թուլանում կուսակցական մարմինների կողմից կառավարչական ֆունկցիաներ ստանձնելու ձգտումը:

Շատ կուսկոմիտեներում դեռ այսօր էլ հրապուրվում են մեծաքանակ որոշումներ ընդունելով, թղթաբանությամբ, աշխատանքի ծանրության կենտրոնը չեն փոխադրել անմիջականորեն կուսակցական կազմակերպություններ, աշխատավորական կոլեկտիվներ, որտեղ կոնկրետ նյութականանում են կուսակցական համագումարի որոշումները:

Կենտկոմի հունիսյան պլենումի այն կարևոր հետևությունը, որ մասսաների ստեղծագործությունն անկարելի է փոխարինել թեկուզ և ամենալավ դիրեկտիվներով, շատ այժմեական է մեզ համար:

Ընթացիկ տարվա չորս ամսում Սպիտակի կուսշրջկոմի (շրջկոմի քարտուղար՝ ընկ. Հ. Մկրտչյան) բյուրոյի ութ նիստերում քննարկվել է 64 հիմնական հարց, այդ թվում՝ վերադաս մարմինների որոշումների կատարմանը վերաբերող 30 հարց: Քննարկվելու և գործնական միջոցներ ձեռնարկելու համար սկզբնական կուսակցական կազմակերպություններին ուղարկված կուսշրջկոմի որոշումների թիվը անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ ավելացել է 1,5 անգամ: Բնականաբար, այդ որոշումների իրագործումն ու վերահսկողությունը դյուրին գործ չեն:

Այսպես եղավ նաև շրջանի անասնապահության զարգացման գործում: Որոշումներ շատ են ընդունվել, իսկ կոնկրետ, նպատակամետ աշխատանք չի կատարվել: Անասունների ձմեռումը կազմակերպված անցկացնելու, անասնապահական մթերքների արտադրությունն ավելացնելու վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի դիմումի մեջ առաջադրված խնդիրների իրացման ուղղությամբ կատարվող աշխատանքի մասին Սպիտակի կուսշրջկոմի հաշվետվության քննարկումը Հայաստանի կոմկուսի Կենտկոմի քարտուղարությունում ցույց տվեց, որ ոչ բոլոր սկզբնական կուսակցական կազմակերպություններն ու աշխատավորական կոլեկտիվներն են ընդգրկվել այդ գործում, որ լուրջ թերություններ ու բացեր կան շրջանի անասնապահության զարգացման գործում: Անբավարար է աշխատել նաև շրջանային սովետը (գործկոմի նախագահ՝ ընկ. Ս. Մաթևոսյան): Անասնապահության ինտենսիվացման ուղղությամբ շրջանում կատարվող աշխատանքը չի համապատասխանում



կուսակցության XXVII համագումարի, ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թվականի մայիսյան և 1985 թվականի ապրիլյան պլենումների որոշումներին:

ՍՄԿԿ Կենտկոմի պլենումում ընկեր Մ. Ս. Գորբաչովը նշեց այն հսկայական դերը, որ նոր ոճի հաստատման գործում վերապահված է կուսակցական մարմինների ղեկավարներին: Նրանց դիրքորոշումից, գործելակերպից ու վարքագծից է մեծապես կախված, թե որքան հետևողական և եռանդագին կվերակառուցվի կուսակցական աշխատանքը:

Վերջերս Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոն քննարկեց Հայաստանի կոմկուսի XXVIII համագումարին Արտաշատի շրջանից հասցեագրված նամակների ստուգման արդյունքները: Ստուգումը ցույց տվեց, որ Արտաշատի կուսշրջկոմը կազմակերպչական ու քաղաքական աշխատանքը դանդաղ է վերակառուցում ՍՄԿԿ XXVII համագումարի պահանջների լույսի ներքո: Պատշաճ ուշադրություն չի նվիրվում կուսշրջկոմի՝ որպես քաղաքական ղեկավարման մարմնի, դերի բարձրացմանը, սկզբնական կուսակցական կազմակերպությունների գործունեության ոճի ու մեթոդների կատարելագործման, գաղափարախոսական, քաղմասսայական աշխատանքի ուժեղացման, մարդկային գործոնի ակտիվացման հարցերին, արտադրության, հատկապես գյուղատնտեսական արտադրության առկա ռեզերվների արդյունավետ ու ռացիոնալ օգտագործման համար մղվող պայքարին: Այս և այլ թերությունները հաճախ օբյեկտիվ գնահատական չեն ստացել, սկզբունքային քննադատության չեն ենթարկվել: Ինքնաքննադատական վերլուծության օրինակ չի տվել նաև կուսշրջկոմի առաջին քարտուղար ընկ. Կ. Հովհաննիսյանը:

Արտաշատի կուսշրջկոմի բյուրոն ի ցույց դրվեց շրջանի սոցիալ-տնտեսական զարգացման կուսակցական ղեկավարման գործում եղած լուրջ թերությունների, իրադրության մակերեսային վերլուծության, որոշ տնտեսությունների ետ մնալու նկատմամբ հաշտվողական վերաբերմունքի, վերջնական բարձր արդյունքների ապահովման հարցում կադրերի պատշաճ պահանջկոտության և պատասխանատվության բացակայության համար: Արտաշատի կուսշրջկոմի առաջին քարտուղար ընկ. Կ. Հովհաննիսյանին հայտարարվեց նկատողություն:

Ինչպես զեկուցվել է Կենտկոմին, օրերս տեղի ունեցավ Արտաշատի կուսշրջկոմի պլենումը, որը քննարկեց Հայաստանի կոմկուսի Կենտկոմի որոշումը: Պլենումը, որը անցել է սկզբունքային կուսակցական քննադատության ու ինքնաքննադատության մթնոլորտում, ամբողջովին ու լիովին համաձայնել է Կենտկոմի բյուրոյի որոշման բովանդակած գնահատականներին ու հետևություններին, մշակել է աշխատանքի ոճի ու մեթոդների վերակառուցումն արագացնելու, էկոնոմիկայի ղեկավարումը բարելավելու միջոցառումներ: Շրջկոմի բյուրոյի, նրա քարտուղարների, առաջին քարտուղարի կողմից թույլ տրված թերություններն ինքնաքննադատաբար ընդունելը, իրենց աշխատանքի ոճի ու մեթոդների շեշտակի փոփոխման անհրաժեշտության գիտակցումը հիմք են տալիս ենթադրելու, որ շրջանում գործերը կբարելավվեն, շրջանային կուսակցական կազմակերպությունը կլուծի իր առջև դրված խնդիրները:

Կուսակցության քաղկոմներն ու շրջկոմներն իրենց աշխատանքը պետք է այնպես կառուցեն, որ որքան հնարավոր է լայն ասպարեզ տան կուսակցական կազմակերպությունների, ընտրովի մարմինների անդամների, բոլոր կոմունիստների նախաձեռնության դրսևորմանը և ակտիվ գործողություններին: Ընդ որում շատ կարևոր է վճռականորեն պայքարել նիստարարության և թղթարարության դեմ:

Վլադիմիր Իլյիչ Լենինը պահանջում էր խնայել թանկագին ժամանակը, որպեսզի զբաղված մարդիկ հոգնած կենդանի կազմակերպական աշխատանքի կարողանան «կտրվել» հանձնաժողովների իրարանցումից ու խառնաշփոթից, շատախոսությունից ու թղթեր գրոտելուց:

Տասներկուերորդ հնգամյակի բարդ և մասշտաբային խնդիրների լուծումը պահանջում է բոլոր կադրերի մտածողության և աշխատանքի վերակառուցում, այնպիսի ձևեր ու մեթոդներ, որոնք հուսալիորեն երաշխավորեին նախատեսվածի իրագործումը:

Այստեղ չի կարելի հաջողություն ակնկալել առանց սկզբնական կուսակցական կազմակերպությունների, ձեռնարկությունների ու կազմակերպությունների տնտեսական ղեկավարների աշխատանքի ակտիվ վերակառուցման:

Իսկ այդ կարևոր գործում կուսակցական կազմակերպությունների պասսիվության փաստերը մեզանում քիչ չեն:

Այսպես, 1985 թվականին Երևանի մետաքսի կոմբինատում (դիրեկտոր՝ ընկ. Ց. Հովհաննիսյան, կուսկոմիտեի քարտուղար՝ ընկ. Ն. Բերչոնց) ձեռնարկության տեխնիկական վերազինմանը հատկացված կապիտալ ներդրումները իրացվել են 78 տոկոսով: Չի իրացվել 360 հազար ռուբլի: Չի տեղակայվել 60 միավոր մանածագործական սարքավորում: Կուսակցական կոմիտեն լրիվ մի կողմ է քաշվել այդ հարցերից: 1985 թվականին և 1986 թվականի առաջին կիսամյակում կուսկոմիտեի նիստերում ոչ մի անգամ չեն քննարկվել ձեռնարկության տեխնիկական վերազինման, նոր տեխնիկայի և առաջադիմական տեխնոլոգիայի ներդրման հարցեր, որոնք գիտատեխնիկական առաջադիմության, թողարկվող արտադրանքի որակի բարելավման հիմքն են: Թվում էր, թե այս խնդիրներից կարևոր բան չկա կոմբինատի և կուսակցական կազմակերպության ղեկավարության համար, մանավանդ որ անորակ արտադրանքի թողարկման պատճառով հենց այդ կոմբինատում ապրանքային արտադրանքի գերնորմատիվային մնացորդները հասել են 24 միլիոն ռուբլու:

ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումը նոր ուժով ընդգծեց, որ անհրաժեշտ է արմատավորել գործի նկատմամբ քննադատական մոտեցումը, հասնել այն բանին, որ յուրաքանչյուր ղեկավար խստապահանջորեն գնահատի իր աշխատանքի արդյունքները, ինքնադյութման չենթարկվի ձեռքբերածով, չբավարարվի քչով, ձգտի լիովին օգտագործել առկա ռեզերվները:

Հանրապետական կուսակցական կազմակերպությունում քննադատության և ինքնաքննադատության մակարդակը վերջին ժամանակներս բարձրացել է, բայց դեռևս անբավարար է: Կուսակցության շրջկոմների, քաղկոմների պլենումներում, տեղական սովետների նստաշրջաններում քննադատությունը ոչ սակավ արտահայտվում է անդեմ ձևով, աչքի չի ընկնում սկզբունքայնությամբ, ուստի և քիչ է նպաստում գործի բարելավմանը:

Ոչ մի վերակառուցում էլ չի լինի, եթե հանրապետական կուսակցական կազմակերպության բոլոր օղակներում անհանդուրժողության մթնոլորտ չհաստատվի թերությունների, լճացածության, հանդիսամոլության և շաղակրատանքի նկատմամբ: Ուստի Հայաստանի կոմկուսի Կենտկոմն այսուհետև էլ կուժեղացնի քննադատական խոսակցությունը համագումարի ոգով, ՍՄԿԿ Կենտկոմի վերջերս տեղի ունեցած պլենումի ոգով:

Բայց, ընկերներ, քննադատությունը ինքնանպատակ չէ: Քննադատությունից անհրաժեշտ է անել ճիշտ և կոնկրետ հետևություններ և, որ ամենագլխավորն է՝ թերությունները վերացնել ժամանակին, ավելի հաստատակամորեն ու եռանդագին:

Բայց, ըստ երևույթին մեր մի շարք ղեկավար աշխատողներ այդպես չեն մտածում:

Կենտկոմի անցյալ պլենումում Դիլիջանի կուսքաղկոմը, 26 կոմիսարների անվան ու Բաղրամյանի կուսշրջկոմները քննադատվեցին երկար տարիներ կառուցվող օբյեկտների՝ հակատուբերկուլյոզային սանատորիայի, գեղարվեստաթատերական ինստիտուտի, Կարմրաշենի քարաձուլվածքի գործարանի շինարարության ընթացքը անբավարար վերահսկելու, ինչպես նաև համապատասխան շինարարական կազմակերպությունների ղեկավարների հետ թույլ աշխատանք տանելու համար: Ահա և արդյունքը՝ ընթացիկ տարվա 6 ամսում Դիլիջանի հակատուբերկուլյոզային սանատորիայի շինարարության պլանները կատարվել են 89 տոկոսով, գեղարվեստաթատերական ինստիտուտինը՝ 86, Կարմրաշենի քարաձուլվածքի գործարանինը՝ 55 տոկոսով:

Ինչպես տեսնում եք, քննադատությունից հետո էլ քաղկոմի քարտուղար ընկ. Ռ. Վարդանյանը, շրջկոմների քարտուղարներ ընկ. ընկ. Ա. Հովհաննիսյանը, Հ. Մինասյանը համապատասխան հետևություններ չեն արել և դեռևս ազդիչ միջոցներ չեն ձեռնարկել պլանային առաջադրանքների կատարումն ապահովելու համար: Անպատասխանատվություն են ցուցաբերել ինչպես կապալառուները՝ արդյունաբերական շինարարության մինիստր ընկ. Ռ. Մելիքյանը և «Հայգյուղմետշին» տրեստի կառավարիչ ընկ. Մ. Եղյանը, այնպես էլ պատվիրատուները՝ Է. Գաբրիելյանը, Լ. Ղարիբջանյանը, Ա. Ադիբեկյանը:



Այսօր նրանց ուշադրությունը հրավիրելով քննադատության նկատմամբ այդպիսի մոտեցման անթույլատրելիության վրա, պետք է ընկերներին զգուշացնել, որ եթե կարճ ժամկետներում գործը չշտկվի, ապա հիշյալ օբյեկտների աշխատանքների ձախողման բոլոր մեղավորները կենթարկվեն ամենախիստ պատասխանատվության:

Այս կապակցությամբ պետք է ասել նաև այն անհետևողական, անթույլատրելի վերաբերմունքի մասին, որ այդ գործում ցուցաբերվել է Կենտկոմի համապատասխան բաժինների կողմից: Չէ որ եթե հնչել է քննադատություն, առաջարկություն է արվել Կենտկոմի պլենումում, ապա Կենտկոմի բաժինների առաջնային պարտականությունն է սրությամբ արձագանքել և բոլոր միջոցները ձեռնարկել դրանց իրագործման համար:

ՍՄԿԿ XXVII համագումարը, ՍՄԿԿ Կենտկոմի 1986 թվականի հունիսյան պլենումը բարոյական, հոգեկան բարձր տրամադրություն են ստեղծել հանրապետության կուսակցական կազմակերպությունների, կոմունիստների, բոլոր աշխատավորների ակտիվ գործունեության համար: Նրանք իրենց առաջնահերթ պարտքը տեսնում են նրանում, որ լայնորեն ծավալելով սոցիալիստական մրցությունը, անձնվեր աշխատանքով կյանքի կոչեն ՍՄԿԿ-ի վեհ կանխագծումները, ՍՄԿԿ Կենտկոմի՝ Սովետական Միության աշխատավորներին ուղղված դիմումում առաջադրված խնդիրները:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմը կուսակցության քաղկոմների ու շրջկոմների, մինիստրությունների և գերատեսչությունների ղեկավարների ուշադրությունը վերստին հրավիրում է այն բանի վրա, որ անհրաժեշտ է բոլոր միջոցները ձեռնարկել բոլոր աշխատավորների մեջ բոլոր մակարդակներում ստեղծագործ, նախաձեռնողական աշխատանքային մթնոլորտ ստեղծելու համար:

Այսօր առանձնակի նշանակություն է ստանում սկզբնական կուսակցական կազմակերպությունների մարտունակության բարձրացումը: Պլենումում ընդգծվեց, որ աշխատանքի վերակառուցումը մենք պետք է սկսենք հենց սկզբնական կազմակերպությունների ինքնուրույնության, ինքնագործունեության, հարձակողականության զարգացումից, կոմունիստների նախաձեռնությունից ու ակտիվությունից: Սա էլ հենց այն գլխավոր օղակն է, որը պետք է բռնեն կուսակցության քաղկոմ-շրջկոմները: Կուսակցական կոմիտեի քարտուղարի, մյուս անդամների գործունեության գլխավոր ոլորտը կուսակցական կազմակերպությունն է, աշխատավորական կոլեկտիվը, մարդիկ:

ՍՄԿԿ XXVII համագումարի պահանջների, նրա նախանշած ստրատեգիական կուրսի, ՍՄԿԿ Կենտկոմի 1986 թվականի հունիսյան պլենումի որոշումների լույսի ներքո առանձնապես մեծանում է կադրերի հետ տարվող աշխատանքի, նրանց ընտրության և տեղաբաշխման աշխատանքի համակողմանի բարելավման կարևորությունը: Շատ կարևոր է խորապես ուսումնասիրել և լավ ծանոթ լինել կադրերի քաղաքական, գործարար և բարոյական հատկանիշներին, դրանք խստորեն հաշվի առնել ցանկացած ղեկավար պոստում առաջադրելիս:

Բոլորի համար պետք է անվերապահորեն պարզ լինի՝ ոչ մի վերակառուցում, ոչ մի բեկում չի կարող լինել, եթե յուրաքանչյուր կոմունիստ, հատկապես ղեկավար, չհասկանա այն պրակտիկ գործողությունների հսկայական նշանակությունը, որոնք էլ հենց կարող են առաջ շարժել կյանքը: Հարկավոր է մշտապես կատարելագործել կադրերի հետ տարվող աշխատանքը, լայն ասպարեզ տրամադրել առաջ քաշելու նախաձեռնող, եռանդուն, բանիմաց, գործի նկատմամբ սրտացավ անձանց, այնպիսիներին, ովքեր օժտված են նորի զգացումով, նպատակամղված են ապագային, ովքեր հմուտ կազմակերպիչներ են, ազնիվ են, կուսակցության գործին նվիրված:

Կուսակցության քաղկոմներն ու շրջկոմները պետք է բարձրացնեն կադրերի պատասխանատվությունը, մեծացնեն պահանջկոտությունը հանձնարարված գործի համար՝ միշտ հստակ սահման դնելով կուսակցական սկզբունքայնության և մարդկային արժանապատվությունը նսեմացնող ջարդարարության միջև:

Մեզ համար մշտական, անանց խնդիր պետք է լինի ամեն տեսակ բացասական երևույթների դեմ պայքարը: Մենք պետք է ակտիվորեն իրականացնենք անաշխատ եկամուտների դեմ պայքարի ուժեղացման վերաբերյալ ընդունված խոշոր որոշումները: Մեր պարտականությունն է ըստ ամենայնի պաշտպանել ազնիվ ու բարեխիղճ

աշխատանքը, ամենուրեք ապահովել սոցիալական արդարության սկզբունքների պահպանումը:

Կուսակցությունը առաջին տեղերից մեկում, որպես վերակառուցման կարևորագույն ելակետ, դնում է աշխատանքում հրապարակայնության ընդլայնման պահանջը, որը սուր զենք է՝ ուղղված կյանքից, ժողովրդից կտրվելու, հարցերը «ընտրյալների» նեղլիկ շրջանակում լուծելու փորձերի դեմ: Հրապարակայնությունը անողոք պայքարի փորձված միջոց է՝ բյուրոկրատիզմի, անտնտեսվարության, վատնողության, ամեն տեսակ չարաշահումների, ոչ ըստ միջոցների ապրելու, պետության գրպանը թափանցելու փորձերի դեմ:

Տնտեսական, սոցիալական և հոգևոր զարգացման խնդիրների լուծման գործում պատասխանատու դեր է պատկանում գաղափարախոսական աշխատանքին, որի նկատմամբ պահանջները համակողմանիորեն մեծանում են: Եվ պետք է ասել, որ մեր գաղափարախոսական հիմնարկները սկսել են հետևողականորեն վերակառուցել իրենց աշխատանքը կուսակցության XXVII համագումարի որոշումների ոգով:

Ուժեղացել է թերթությունների քննադատությունը, մեծացել է քննադատական նյութերի ներգործունությունը: Այնուհանդերձ, քննադատությունը դեռևս միշտ չէ, որ համապատասխանում է սովետական հասարակության կյանքի ներկա բեկումնային փուլի խնդիրներին, կուսակցության ժամանակակից պահանջներին, այն երբեմն կոնկրետ չէ, մակերեսային է, երբեմն էլ մարտունակության պակաս է զգում: Իսկ որոշ տպագիր օրգանների էջերում, ինչպիսին է, օրինակ, Էջմիածնի շրջանային «Կոմունիզմի ուղիով» թերթը, քննադատություն հազվադեպ կտեսնես:

Մեր կուսակցական կոմիտեները, մասսայական պրոպագանդայի և ինֆորմացիայի օրգանները պետք է խոր, ինքնաքննադատական հետևություններ անեն ՍՄԿԿ Կենտկոմի 1986 թվականի հունիսյան պլենումում հնչած այն խոսքերից, թե շատ թերթերում դեռևս բավարար չէ հրապարակայնության ներգործունության աստիճանը: Թերթերն ու հանդեսները, հեռուստատեսությունն ու ռադիոն,— ինչպես ընդգծեց ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը,— պետք է ավելի ակտիվորեն որոնեն և մեր կյանքում գտնեն նորի ու առաջադիմականի ծիլեր, օպերատիվ տարածեն առաջավոր փորձը, ամենօրյա ուշադրություն նվիրեն տնտեսական մեխանիզմի կատարելագործման, սոցիալիստական ապրելակերպի ամրապնդման հարցերին:

Ընդհանուր առմամբ պետք է է՛լ ավելի ակտիվացնել գաղափարախոսական նակատը, ավելի շատ ապավինել ճշմարտացի գաղափարների կազմակերպական ուժին, գաղափարներ, որոնք համախմբում են մարդկանց՝ հանուն ընդհանուր գործի:

Մեզանում կան բոլոր նախադրյալները ՍՄԿԿ XXVII համագումարի, կուսակցության Կենտկոմի հունիսյան պլենումի կողմից առաջադրված մեր երկրի հետագա զարգացմանը, մեր հասարակության ներկային ու ապագային վերաբերող բացառիկ կարևորության խնդիրները հաջող լուծելու համար:

Ընկերնե՛ր: Հայաստանի կուսակցական կազմակերպության, որպես ՍՄԿԿ ջոկատներից մեկի, պարտքն է ակտիվ, արգասավոր, հետևողական աշխատանք ծավալել դրանց իրագործման համար, միշտ հիշելով մեծ Լենինի խոսքերը. «Կուսակցությունը պատասխանատու է»: **(Երկարատև ծափահարություններ):**

---

ՍՄԿԿ XXVII համագումարի որոշումները

գործողության մեջ

# ՍՈՎԵՏՆԵՐԻ ԱՇԽԱՏԱՆՔԸ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ՆՈՐ ՊԱՀԱՆՋՆԵՐԻ ՄԱԿԱՐԴԱԿԻՆ

**Հ. ՈՍԿԱՆՅԱՆ**
Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի
նախագահության նախագահ

*ԸՆԴՀԱՆՐԱՑՆԵԼՈՎ ՊԱՅՔԱՐԻ ԵՎ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ շինարարության սանղծարար աշխատանքի փորձը, իմաստավորելով ներկա ժամանակաշրջանը՝ սովետական կոմունիստների մեծ համաժողովը մշակեց գործողությունների ռեալիստական, համակողմանիորեն կշռադատված այնպիսի մի ծրագիր, որը նպատակների վեհությունը և հնարավորությունների ռեալիզմը օրգանապես միացնում է սովետական յուրաքանչյուր մարդու հույսերի և իղձերի հետ: Համագումարի ընդունած պատմական փաստաթղթերը սահմանում են մեր սոցիալիստական հասարակարգի շարժման և՛ բնույթը, և՛ տեմպերը, և՛ ուղիները: Ահա թե ինչու ՍՄԿԿ XXVII համագումարը պատմական ուղենիշ դարձավ կուսակցության և սովետական ժողովրդի կյանքում:*

*Համագումարի սկզբունքային, հիմնարար դրույթը մեր երկրի սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու կոնցեպցիան է, որն առաջ էր քաշվել դեռևս ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թվականի ապրիլյան պլենումում: Ընդ որում, ինչպես ընդգծվեց համագումարում, արագացումը միայն տնտեսական աճի տեմպերի բարձրացում չէ: Արագացման բուն էությունը աճի նոր որակն է՝ արտադրության ըստ ամենայնի ինտենսիվացումը գիտատեխնիկական առաջադիմության, էկոնոմիկայի կառուցվածքային վերակառուցման, աշխատանքի կազմակերպման և խթանման արդյունավետ ձևերի հիման վրա: Արագացման կուրսը նախատեսում է իրագործել ակտիվ սոցիալական քաղաքականություն, հետևողականորեն հաստատել սոցիալական արդարության սկզբունքը, կատարելագործել հասարակական հարաբերությունները, քաղաքական ու գաղափարախոսական ինստիտուտների աշխատանքի ձևերն ու մեթոդները, խորացնել սոցիալիստական դեմոկրատիան, վճռականորեն հաղթահարել իներցիան, լճացումը և պահպանողականությունը: «Ըստ արժանվույն գնահատելով ձեռք բերվածը, ՍՄԿԿ ղեկավարությունն իր պարտքն է համարում կուսակցությանն ու ժողովրդին ազնվորեն ու շիտակ ասելու քաղաքական ու պրակտիկ գործունեության մեջ մեր վրիպումների մասին, էկոնոմիկայում և սոցիալ-հոգևոր ոլորտում եղած աննպաստ տենդենցների մասին, այդպիսի երևույթների պատճառների մասին: Տարիներ շարունակ, և ոչ միայն օբյեկտիվ գործոնների, այլև ամենից առաջ սուբյեկտիվ կարգի պատճառների բերումով, կուսակցական ու պետական մարմինների պրակտիկ գործողությունները ետ էին մնում ժամանակի, հենց կյանքի պահանջներից: Երկրի զարգացման պրոբլեմները ավելի արագ էին աճում, քան լուծվում: Իներտությունը, կառավարման ձևերի ու մեթոդների քարացածությունը, աշխատան-*

քում դինամիզմի իջեցումը, բյուրոկրատիզմի ուժեղացումը՝ այս ամենը քիչ վնաս չէին հասցնում գործին» (Մ. Ս. Գորբաչով, ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի Քաղաքական զեկուցումը Սովետական Միության կոմունիստական կուսակցության XXVII համագումարին, Ե., 1986, էջ 4—5)։

Այս ամենի մասին մեկ անգամ ևս ընդգծվեց ՍՄԿԿ Կենտկոմի 1986 թվականի հունիսյան պլենումում, որը տվեց երկրում տեղի ունեցող խոր վերակառուցման ծավալուն վերլուծությունը, ցույց տվեց սովետական հասարակության ետհամագումարյան զարգացման օբյեկտիվ պատկերը, աշխարհի արտաքին քաղաքական իրադրությունը։ Պլենումը նշեց, որ XXVII համագումարի նորարարական ոգին դինամիկ լիցք է հաղորդել մեր երկրի հասարակական զարգացմանը, առարկայանում է աշխատանքային շոշափելի արդյունքներում, մարդկանց և երկրի հոգևոր կերտվածքում։

Հունիսյան պլենումը միաժամանակ ամենայն սրությամբ անդրադարձավ օբյեկտիվ և սուբյեկտիվ այն պատճառներին, որոնք խանգարում են արագացման ստրատեգիայի անշեղ կենսագործմանը։ Պլենումը հավանություն տվեց 1986—1990 թվականների հնգամյա պլանին, որը հաստատվեց ՍՍՀՄ Գերագույն սովետի կողմից։

ՍՄԿԿ XXVII համագումարը կայացավ երկրում, ամբողջ աշխարհում տեղի ունեցող կտրուկ շրջադարձի ժամանակ, այն մշակեց միջուկային դիմակայությամբ առաջացած զինաթափման հրատապ խնդիրների լուծման նոր արդյունավետ միջոցներ, նշեց հակամարտությունից համագոյակցության անցնելու կոնկրետ ուղիները։

Համագումարը հատուկ ուշադրություն նվիրեց սովետական հասարակության քաղաքական սիստեմի զարգացման, հասարակության հետագա դեմոկրատացման հարցերին։ «ՍՄԿԿ-ն գտնում է, որ արդի փուլում հասարակության քաղաքական սիստեմի զարգացման ստրատեգիական գիծը սովետական դեմոկրատիայի կատարելագործումն է, ժողովրդի սոցիալիստական ինքնակառավարման ավելի ու ավելի լիակատար իրագործումը պետական ու հասարակական կյանքի հարցերի լուծմանը աշխատավորների, նրանց կոլեկտիվների ու կազմակերպությունների ամենօրյա, ակտիվ և գործուն մասնակցության հիման վրա» (Սովետական Միության կոմունիստական կուսակցության ծրագիրը (նոր խմբագրությամբ), Ե., 1986, էջ 64)։

«Դեմոկրատիան այն առողջ ու մաքուր օդն է, որով միայն լիարյուն կարող է ապրել սոցիալիստական հասարակական օրգանիզմը,— ասված է Քաղաքական զեկուցման մեջ։— Հասարակության զարգացման արագացումը աներևակայելի և անհնար է առանց սոցիալիստական դեմոկրատիայի, նրա բոլոր կողմերի ու դրսևորումների հետագա զարգացման»։

Սովետական իշխանության էությունը նրանում է, որ ժողովուրդն ինքն է ռեալ կերպով կառավարում իր գործերը, միլիոնավոր մարդիկ մասնակցում են քաղաքական կյանքին։ Դրա վառ դրսևորումն է ժողովրդական դեպուտատների սովետների գործունեությունը, որոնցում հսկայական հնարավորություններ են ներդրված ժողովրդի լիիշխանության իրականացման, մասսաների միավորման ու մոբիլիզացման համար։ Բնականաբար, մեծ ծավալի աշխատանք ու մեծ պատասխանատվություն է բաժին ընկնում Հայկական ՍՍՀ Գերագույն սովետին ու նրա նախագահությանը։ Ինչպես նշվեց համագումարին տրված Քաղաքական զեկուցման մեջ, ՍՍՀՄ Գերագույն սովետը, միութենական և ինքնավար հանրապետությունների գերագույն սովետները «կոչված են հաստատակամորեն կատարելագործելու օրենսդրությունը, վերահսկելու, թե ինչպես են գործում մեր օրենքները, ինչպիսի ռեալ հատույց է տալիս յուրաքանչյուր պետական մարմնի ու ղեկավարի աշխատանքը։ Հարկավոր է, որ գերագույն սովետների նստաշրջաններում ավելի ակտիվորեն քննարկվեն արհմիությունների, կոմերիտմիության, մյուս հասարակական կազմակերպությունների առաջարկությունները, կառավարման մարմինների հաշվետվությունները, տնտեսության առանձին ճյուղերում տիրող վիճակը, ռեգիոնների զարգացումը»։

Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի Նախագահությունը, Հայաստանի կոմկուսի Կենտկոմի ղեկավարությամբ, անհրաժեշտ միջոցներ է ձեռնարկել համագումարի որոշումների ու ցուցումների հետևողական իրականացման համար։ Մշակվել և հաստատվել է միջոցառումների պլան, որում հաշվի են առնվել նաև ՀԿԿ XXVIII համագումարում սովետների առջև դրված խնդիրները։

Նախագահությունը մշտապես իր ուշադրության կենտրոնում է պահում հանրապետության օրենսդրության կատարելագործման, սոցիալիստական հասարակության զարգացման ներկա մակարդակին, ՍՍՀՄ սահմանադրությանը և Հայկական ՍՍՀ սահմանադրությանը նրա համապատասխանեցման հարցերը։

Օրենսդրության կատարելագործումը անխզելիորեն կապված է օրինականության և իրավակարգի ամրապնդման հետ, որոնք մեր դեմոկրատիզմի բաղկացուցիչ մասն են։ Ելնելով դրանից, Գերագույն սովետի Նախագահությունը, մշտական հանձնաժողովները պարբերաբար լսում են իրավապահպան մարմինների, մինիստրությունների և գերատեսչությունների, սովետների գործադիր կոմիտեների զեկուցումներն ու ինֆորմացիաները սոցիալիստական սեփականության պահպանության, հողային, ջրային օրենսդրության պահպանման, իրավախախտումների դեմ մղվող պայքարի վիճակի և այլ հարցերի մասին։ Սակայն այդ բնագավառում դեռևս ամեն ինչ չէ, որ բարեհաջող է։ Մի շարք դեպքերում օրենքները չեն կատարվում, և նույնիսկ որոշ պատասխանատու անձինք շրջանցում են դրանք։ Իրավապահպան մարմինները, մասնավորապես դատախազության մարմինները, պարտավոր են ուժեղացնել դատախազական հսկողությունը ձեռնարկությունների ու կազմակերպությունների գործունեության նկատմամբ՝ օրենքների խստիվ կատարման, նյութական արժեքների պահպանության և արդյունավետ օգտագործման, թողարկվող արտադրանքի որակի բարձրացման, զանազան նեգատիվ երևույթներ առաջացնող պատճառների բացահայտման և վերացման ուղղությամբ։

Նախագահությունը մեծ նշանակություն է տալիս մշտական հանձնաժողովների գործունեությանը, որոնցում ընդգրկված է Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի բոլոր դեպուտատների ավելի քան երեք քառորդը։ Հանձնաժողովներն իրենց լիազորությունների սահմաններում լուրջ ուշադրություն են նվիրում հանրային արտադրության և աշխատանքի արտադրողականության աճի, թողարկվող արտադրանքի որակի բարձրացման, պարենային ծրագրի կատարման, գաղափարադաստիարակչական աշխատանքի ուժեղացման, շրջակա միջավայրի պահպանության ապահովման հարցերի քննարկմանն ու լուծմանը։ Այդ ամենով հանդերձ, մշտական հանձնաժողովների գործունեությունը կարիք է զգում հետագա կատարելագործման։ Ամենից առաջ անհրաժեշտ է ուժեղացնել վերլուծական և վերահսկողական աշխատանքը, հետամուտ լինել, որպեսզի գործադիր մարմինները մանրազնին քննարկեն ու հաշվի առնեն հանձնաժողովների հանձնարարականները, դեպուտատների առաջարկություններն ու դիտողությունները։

ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման հիմնական ուղղությունները նախատեսում են միութենական բոլոր հանրապետությունների տնտեսական ու սոցիալական հետագա արագացված զարգացում։ Դրանում մեկ անգամ ևս վառ կերպով դրսևորվում է կոմունիստական կուսակցության և սովետական պետության լենինյան ազգային քաղաքականության վեհությունը։

Վերցնենք մեր հանրապետության օրինակը։ Նախատեսված է այս տասնհինգամյակի վերջում կրկնապատկել ազգային եկամուտը, ստեղծել արտադրական մի պոտենցիալ, որն իր մասշտաբներով հավասար կլինի նախորդ բոլոր տարիների ընթացքում կուտակված պոտենցիալին։ Աշխատանքի արտադրողականությունը կավելանա 2,3—2,5 անգամ։

Ընթացիկ տարվա ապրիլին տեղի ունեցած Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումը, խորությամբ ու բազմակողմանիորեն քննարկելով Կենտկոմի

հսկել իրենց տարածքում գտնվող վերադաս ենթակայության ձեռնարկությունների և կազմակերպությունների աշխատանքը։

ՍՄԿԿ XXVII համագումարի նշած սոցիալ-տնտեսական վիթխարի ծրագիրը նախատեսում է տնտեսական վերելքի սերտ զուգակցումը ամբողջ սովետական հասարակության աճող պահանջմունքների բավարարման հետ։ Ուստի հանրային արտադրության բոլոր ճյուղերի արագացված զարգացման, սպասարկման բոլոր ոլորտների կտրուկ բարելավման հարցերը պետք է մշտապես գտնվեն սովետների տնտեսական գործունեության ուշադրության կենտրոնում։

Նախատեսված է առաջիկա տասնհինգամյակում կրկնապատկել ժողովրդի կենսապայմանների բարելավմանն ուղղված ռեսուրսների ծավալը, բնակչության մեկ շնչի հաշվով ռեալ եկամուտներն ավելացնել 1,6—1,8 անգամ։

Համագումարում հատուկ սրությամբ դրվեց բնակարանային պրոբլեմի լուծումը։ Այս հարցը նույնպիսի սրությամբ քննարկվեց նաև ՍՍՀՄ 11-րդ գումարման Գերագույն սովետի հինգերորդ նստաշրջանում։ Առաջ է քաշվել հսկայական մի խնդիր՝ մինչև 2000 թվականը յուրաքանչյուր ընտանիքի ապահովել առանձին բնակարանով կամ անհատական տնով։ Այդ նպատակի իրականացման գործում կարևորագույն դեր է պատկանում ժողովրդական դեպուտատների սովետներին։

Իսկ այդ առումով ինչպիսի՞ն է վիճակը մեզ մոտ՝ հանրապետությունում։ Ինչպես նշվեց ՀԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումում, այդ գործում մենք ունենք լուրջ թերություններ։ Բնակարանային շինարարությանը հատկացվող միջոցները հաճախ իրացվում են ոչ ժամանակին, շինարարությունը ռիթմիկ չի կատարվում։

Լուրջ դժգոհություններ է առաջացնում հանձնվող օբյեկտների որակը։ Շինարարական կազմակերպությունները թույլ են տալիս նախագծային լուծումների, շինարարական նորմաների ու կանոնների կոպիտ խախտումներ, որը սպառնալիքի տակ է դնում շենքերի երկարակեցությունն ու կայունությունը։

Ժողովրդական դեպուտատների սովետները, նրանց գործադիր կոմիտեները պատշաճ վերահսկողություն չեն իրականացնում իրենց տարածքում կատարվող շինարարության նկատմամբ, չեն օգտագործում սովետներին օրենքով վերապահված իրավունքները։

Խոսելով բնակարանային պրոբլեմի մասին, չի կարելի ուշադրության չառնել նաև այն խախտումները, որ թույլ են տալիս առանձին սովետների գործադիր կոմիտեներ և նրանց թողտվությամբ՝ ձեռնարկություններն ու կազմակերպությունները բնակարանի կարիք ունեցողների հաշվառման և բնակարանների բաշխման գործում։ Դա, մասնավորապես, վերաբերում է Երևան քաղաքի շրջանային սովետների գործադիր կոմիտեներին, և ոչ միայն նրանց։ Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի Նախագահությունում ստացվող բազմաթիվ գանգատներում աշխատավորները նշում են, որ ոտնահարվում են իրենց իրավունքները, խախտվում է սոցիալական արդարության սկզբունքը։ Բնակարանային պրոբլեմի լուծման գործում սովետները պարտավոր են գրավել ամենավճռական, սկզբունքային դիրք։

Սոցիալական բնագավառում սովետների գլխավոր խնդիրներից մեկն է՝ հետամուտ լինել ժողովրդական սպառման ապրանքների արտադրության և ծառայությունների ոլորտի զարգացման կոմպլեքսային ծրագրի իրականացմանը։ ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Գերագույն սովետի Նախագահության և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշման մեջ նշված է, որ ժողովրդական սպառման ապրանքների արտադրության և սպառման ոլորտի զարգացման 1986—2000 թվականների կոմպլեքսային ծրագրով առաջադրված խնդիրների իրացման գործում հանրապետական և տեղական սովետական մարմինների դերն ուժեղացնելու նպատակով՝ միութենական և ինքնավար հանրապետությունների մինիստրների խորհուրդները, ժողովրդական դեպուտատների տեղական սովետների գործադիր կոմիտեները պետք է ապահովեն ժողովրդական սպառման բարձրորակ ապրանքների արտադրության մշտական աճը և սպասարկ-



ման ոլորտի արագացված զարգացումը, ապրանքների արտադրությանը և բնակչությանը վճարովի սպասարկումներ ցույց տալուն ակտիվորեն մասնակից դարձնել բոլոր միավորումներին, ձեռնարկություններին ու կազմակերպություններին՝ անկախ նրանց գերատեսչական ենթակայությունից։ Մինչդեռ գործունեության հենց այդ կողմի վրա ոչ բոլոր սովետներն են ուշադրություն դարձնում։ Մի շարք սովետներ, գործկոմների պլանային հանձնաժողովներ կոմպլեքսային ծրագրի առաջադրանքները ժամանակին չեն հասցնում իրենց տարածքում գտնվող ձեռնարկություններին ու կազմակերպություններին, թույլ են իրականացնում դրանց կատարման վերահսկողությունը։ Սովետները, նրանց մարմինները պետք է մշտապես սերտ կապի մեջ գտնվեն թեթև, տեղական արդյունաբերության, բնակչության կենցաղային սպասարկման մինիստրությունների, բոլոր այն գերատեսչությունների հետ, որոնց ձեռնարկությունները առաջադրանքներ ունեն կոմպլեքսային ծրագրի կատարման գծով։

Այդ կապերը պետք է նպաստեն անհատական աշխատանքային գործունեության և տնագործ աշխատանքի զարգացմանը՝ որպես ժողովրդական սպառման ապրանքների և ծառայությունների գծով բնակչության պահանջմունքների բավարարման լրացուցիչ աղբյուր, հանրօգուտ գործունեության մեջ քաղաքացիների ներգրավման միջոց։

Մենք ոչ քիչ չլուծված հարցեր ունենք առևտրի, հասարակական սննդի, տրանսպորտի և կապի միջոցների բնագավառում։ Խանութներում, ճաշարաններում և սրճարաններում տեղ են գտնում չարաշահումների, առևտրի կանոնների խախտման փաստեր։ Ռիթմիկ չէ տրանսպորտի աշխատանքը։ Այս ամենի նկատմամբ սովետները պետք է ուժեղացնեն վերահսկողությունը։

Գիտատեխնիկական առաջադիմության արագացումը, աշխատանքի հետագա բարեփոխումը բարձր պահանջներ են ներկայացնում մարդկանց կրթական ու մասնագիտական պատրաստականությանը։ Այդ ուղղությամբ առաջնակարգ նշանակություն ունի հանրակրթական ու պրոֆեսիոնալ դպրոցի ռեֆորմը։ Հանրապետությունում որոշ աշխատանք է կատարվել ռեֆորմով նախատեսված միջոցառումների իրականացման ուղղությամբ։ Սակայն դրանց իրացման տեմպերն ու խորությունը բավարար համարել չի կարելի։

Անհանգստացնում է հատկապես այն, որ ժողովրդական դեպուտատների տեղական որոշ սովետներ (Աբովյանի, Արթիկի քաղաքային, Նաիրիի, Թալինի շրջանային և այլն) ասես մի կողմ են քաշվել այդ կարևոր գործից։ Տեղական սովետները պետք է անմիջականորեն մասնակցեն դպրոցականների մասնագիտական կողմնորոշման խնդիրների լուծմանը, աջակցեն միջդպրոցական արտադրական կոմբինատների ստեղծմանը։

Տեղական սովետների սևեռուն ուշադրության կենտրոնում պետք է լինեն մարդկանց առողջության պահպանման ու ամրապնդման հարցերը։ Խոսք չկա, այդ ուղղությամբ առողջապահական մարմինների կողմից հանրապետությունում վերջին տարիներին զգալի աշխատանք է կատարվել, և դրանում քիչ ծառայություն չունեն ժողովրդական դեպուտատների սովետները։ Սակայն համագումարը սովետներին, ժողովրդական առողջապահության համակարգին ներկայացնում է նոր, բարձր պահանջներ։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմը չթուլացող ուշադրություն է դարձնում շրջակա միջավայրի առողջացման հարցերին, շատ բան է արվում նախորդ տարիների ընթացքում թույլ տված սխալների հետևանքով հանրապետությունում ստեղծված էկոլոգիական ծանր վիճակը շտկելու։ Անհրաժեշտ է ընդգծել, որ այս ուղղությամբ հանրապետության առջև ծառացած պրոբլեմների լուծման հարցում մեծ ուշադրություն և հոգատարություն է ցուցաբերվում ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի կողմից։ Ընդունվել են հանրապետության համար հույժ կարևորություն ունեցող որոշումներ, ներդրվել հսկայական միջոցներ, կենսագործվել խոշոր միջոցառումներ։ Հաշվի առնելով այդ պրոբլեմի կարևորությունը, հանրապետությունում ստեղծվել է շրջակա միջավայրի պահպանության պետական կոմիտե։ Այս ասպարեզում նույնպես մեծ

խնդիրներ են դրված ժողովրդական դեպուտատների սովետների և նրանց գործադիր կոմիտեների առաջ։

ՍՄԿԿ XXVII համագումարում նշվեց, որ այսուհետ ևս անփոփոխ խնդիր է մնում սովետական օրենքների ամբողջ ուժի գործադրումը հանցագործությունների և մյուս իրավախախտումների դեմ մղվող պայքարում։ Գաղտնիք չէ, որ վերահսկողության թուլության պատճառով առանձին մարդիկ դրսևորում են մասնավոր սեփականատիրական ձգտումներ, անտեսում են հասարակական շահերը, կանգնում շահառության վտանգավոր ուղու վրա։ Վերջին տարիներին ժողովրդական դեպուտատների սովետները հանրապետության իրավապահպան մարմինների հետ միասին որոշակի աշխատանք են կատարել հասարակական կյանքում բացասական երևույթների կանխման, իրավակարգի ամրապնդման ուղղությամբ։ Հասկանալի է, որ այդ կարևոր գործում առաջնակարգ դերը նորից պատկանում է սովետներին՝ որպես պետական իշխանության մարմինների։ Հետևաբար, հենց նրանց էլ մեծ պահանջ է ներկայացվում։ Սովետները հասարակական կարգի պահպանության գործում պետք է ներգրավեն աշխատավորների լայն խավերին, գործարարությամբ կազմակերպեն կամավոր ժողովրդական դրուժինաների, կարգի պահպանության հասարակական կետերի, աշխատավորական կոլեկտիվների պրոֆիլակտիկայի խորհուրդների և հասարակական ինքնագործունեության մյուս կազմակերպությունների աշխատանքը։

Հարբեցողության և ալկոհոլիզմի դեմ մղվող պայքարում իրականացված կոմպլեքսային միջոցառումները որոշակի դրական ազդեցություն ունեցան իրավախախտումների կրճատման վրա։ Սակայն դեռևս շատ իրավախախտումներ են կատարվում ոգելից խմիչքների ներգործությամբ, որը վկայում է ներքին գործերի մարմինների, ժողովրդական դեպուտատների տեղական սովետների գործադիր կոմիտեների, ինչպես նաև նրանց առընթեր հարբեցողության դեմ պայքարի հանձնաժողովների կանխարգելիչ թույլ աշխատանքի մասին։ Ամենուրեք չէ, որ պատշաճ մակարդակով են օգտագործվում հասարակական կազմավորումների, աշխատավորական կոլեկտիվների հնարավորությունները, կանխարգելիչ աշխատանքի կազմակերպումը մի շարք տեղերում փոխարինվում է հակաալկոհոլային օրենսդրության խախտողների նկատմամբ սոսկ տուգանքի սանկցիայի կիրառմամբ։

Դեռևս դանդաղ են լուծվում անաշխատ եկամուտներով ապրող անձանց, պորտաբուծության դեմ մղվող պայքարի վերաբերյալ համագումարի առաջադրած խնդիրները։ Չնայած նկատվում է այդ կարգի հանցագործությունների թվի որոշ նվազում, սակայն դեռևս անբավարար են հանրօգուտ աշխատանքից խուսափողների նկատմամբ կիրառվող միջոցառումները։ Անհրաժեշտ է հետևողականորեն կենսագործել անաշխատ եկամուտների դեմ պայքարն ուժեղացնելու մասին ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Գերագույն սովետի Նախագահության և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի կողմից ընդունված որոշումները։

Սովետների առջև ծառացած մեծ ու բարդ խնդիրների հաջող լուծումը շատ բանով կախված է նրանց կազմակերպական աշխատանքի մակարդակից։ Կարելի է ասել, որ ամբողջությամբ վերցրած հանրապետության շրջանային, քաղաքային, գյուղական ու ավանային սովետները և նրանց մարմինները որոշ չափով բարելավել են աշխատանքի կազմակերպական ձևերը, ոճն ու մեթոդները։ Նստաշրջաններում քննարկվում են բազմաբնույթ հարցեր, վերլուծվում են գործերի վիճակը արդյունաբերության, շինարարության և գյուղատնտեսության առանձին ճյուղերում, առևտրում, հասարակական սննդի բնագավառում, բնակարանային-կոմունալ տնտեսությունում, շրջակա միջավայրի պահպանման, սոցիալիստական օրինականության ամրապնդման, հասարակական կարգի ու քաղաքացիների իրավունքների պահպանության գործում։ Նստաշրջաններում լսվում են գործադիր կոմիտեների, մշտական հանձնաժողովների հաշվետվություններ, դեպուտատների հաղորդումներ իրենց պարտականությունների կատարման մասին, քննարկվում են դեպուտատական հարցապնդումներ, քաղաքացիների առաջարկությունների, դիտողությունների



և գանգատների ուղղությամբ տարվող աշխատանքը, ինչպես նաև համապատասխան սովետների կողմից նախկինում ընդունած որոշումների կատարումը։

Օրենսդրության պահանջներին համապատասխան, սովետների գործադիր կոմիտեները, նրանց բաժինները և վարչությունները պարբերաբար հաշվետվություններով հանդես են գալիս բնակչության և աշխատավորական կոլեկտիվների առջև։ Դեպուտատների մեծ մասը, ինչպես պահանջում է դեպուտատի ստատուսի մասին օրենքը, տարին երկու անգամ ընտրողների և աշխատավորական կոլեկտիվների առջև հաշվետվությամբ հանդես է գալիս իր կատարած աշխատանքի մասին։ Ակտիվացել է տերիտորիալ ու արտադրական դեպուտատական խմբերի գործունեությունը ընտրական օկրուգներում և աշխատավորական կոլեկտիվներում։

Սակայն տեղական սովետների կազմակերպական աշխատանքում դեռևս կան էական թերություններ, որոնք հատկապես դրսևորվում են նստաշրջանների նախապատրաստման ու անցկացման գործում։

Չի կարելի անցնել այնպիսի փաստերի կողքից, երբ մի շարք սովետների նստաշրջաններ անցնում են ոչ բավարար մակարդակով, երբեմն ձևականորեն։ Քննարկման նախատեսված հարցերի ուսումնասիրմանը քիչ են ներգրավվում մշտական հանձնաժողովները, աշխատավորական կոլեկտիվների ներկայացուցիչները, մասնագետները։ Դրա համար էլ քննարկվող պրոբլեմի վերլուծությունը թերի է լինում, իսկ զեկուցման մեջ քննադատության և ինքնաքննադատության բացակայությունը նստաշրջանի մասնակիցներին չի տրամադրում գործարար քննարկման։ Չի ստեղծվում այնպիսի մթնոլորտ, որը մասնակիցների մեջ առաջացնի բացեիբաց, առանց զգուշավորության արտահայտվելու ցանկություն։

Նստաշրջաններում դեպուտատներին ակտիվացնելու, քննարկմանը մասնակցողների շրջանակն ընդլայնելու համար, բացի մյուս միջոցառումներից, սովետների գործկոմներից պահանջվում է ավելի ուշադիր, հետևողական վերաբերմունք դրսևորել դեպուտատների դիտողությունների ու առաջարկությունների նկատմամբ։

Խոսելով դեպուտատների ակտիվության բարձրացման մասին, չի կարելի չհիշատակել նաև այնպիսի կարևոր գործի մասին, ինչպիսին է նրանց կողմից դեպուտատական հարցապնդման իրավունքի օգտագործումը։ Ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ դեպուտատական հարցապնդման պրակտիկան շրջանային և քաղաքային սովետների նստաշրջաններում կիրառվում է խիստ սահմանափակ։ Դա արդյունք է այն բանի, որ մի կողմից գործադիր կոմիտեներն այդ հարցին պատշաճ ուշադրություն չեն հատկացնում, մյուս կողմից էլ դեպուտատների կազմի թարմացման պատճառով նրանց մի մասը չունի հրապարակավ հանդես գալու փորձ, հարցապնդումներ կատարելու հմտություն։ Անհրաժեշտ է, որպեսզի գործադիր կոմիտեները դեպուտատների ուսուցումը կազմակերպելիս ավելի լիակատար լուսաբանեն նրանց իրավունքները, բարձրացնեն նրանց պատասխանատվությունը տվյալ սովետի գործերի համար։

Դեպուտատի կոչումը ոչ թե պաշտոնի հավելված է, ոչ թե պատվավոր արտոնություն, այլ մեծ և ոչ դյուրին աշխատանք սովետում, բնակչության շրջանում, նշված է ՍՄԿԿ Կենտկոմի Քաղաքական զեկուցման մեջ։

Կուսակցության XXVII համագումարը սոցիալիստական հասարակարգի դեմոկրատիզմի խորացմանն ուղղված միջոցառումների շարքում դասեց նաև հրապարակայնության ուժեղացումը, որը սովետների գործունեության հիմնարար սկզբունքներից մեկն է։ «Առանց հրապարակայնության,— ասված է Քաղաքական զեկուցման մեջ,— չկան ու չեն կարող լինել դեմոկրատիզմ, մասսաների քաղաքական ստեղծագործություն, կառավարմանը նրանց մասնակցություն։ Դա, եթե կուզեք, տասնյակ միլիոնավոր բանվորների, կոլտնտեսականների, մտավորականների գործերի նկատմամբ պետական պատասխանատվության զգացումով տոգորված վերաբերմունքի գրավականն է, մեր կադրերի հոգեբանական վերակառուցման ելակետը»։

Հանրապետության շրջանային, քաղաքային, ավանային և գյուղական սովետների աշխատանքի պրակտիկայում այսօր կիրառվում են հրապարակայնության այնպիսի ձևեր, ինչպիսիք են նստաշրջանների որոշումների նախագծերի նախնական քննարկումը ձեռնարկություններում, հիմնարկներում ու կազմակերպություններում անցկացվող ժողովներում, նստաշրջանների աշխատանքին ձեռնարկությունների, ինչպես նաև բնակչության հասարակական ինքնագործունեության մարմինների ներկայացուցիչների մասնակցությունը, դեպուտատների հաշվետվությունները՝ ընտրողների, իսկ գործկոմի, նրա բաժինների, վարչությունների ղեկավարների հաշվետվությունները՝ բնակչության առջև, աշխատավորական կոլեկտիվներին իրազեկ պահելը սովետի յուրաքանչյուր առաջիկա նստաշրջանի, նրա նախատեսվող օրակարգի մասին, մասսայական ինֆորմացիայի միջոցների օգտագործումը և այլն։

Հրապարակայնության ըստ ամենայնի ընդլայնումը, նրա վերածումը անխափան գործող սիստեմի ոչ միայն մասսաների կողմից պետական իշխանության մարմինների աշխատանքի վերահսկողության կարևորագույն, առավել դեմոկրատական ձևն է, ոչ միայն աշխատավորների կարծիքի ձևավորման միջոցը բոլոր աստիճանների սովետների գործունեության մասին, այլև սովետների կողմից հասարակական կարծիքն ուսումնասիրելու և խստիվ հաշվի առնելու սահմանադրական պահանջ։

Այս կապակցությամբ հարկ է հիշատակել դեպուտատներին ընտրողների տված պատվիրանների նշանակության մասին, որոնք նույնպես աշխատավորների քաղաքացիական, հասարակական ակտիվության վկայությունն են, նրանց շահագրգռվածության վկայությունն այն բանում, որպեսզի ժողովրդի կողմից լիազորված պետական իշխանության ներկայացուցիչները ավելի լիովին կատարեն իրենց պարտականությունները տվյալ սովետի տարածքում գործերի վիճակի, պետական, տնտեսական ու սոցիալ-կուլտուրական զարգացման խնդիրների հաջող լուծման ուղղությամբ։

Կուսակցության համագումարի կողմից սովետների առջև դրված խնդիրների կատարումն ապահովելու գործում կարևորագույն նշանակություն է ձեռք բերում պետական իշխանության, կառավարման մարմինների և տեղական սովետների որոշումների կենսագործման փաստական վերահսկողությունը։ Ցավոք, մենք դեռ չենք հասել այն բանին, որպեսզի կատարման կազմակերպումն ու վերահսկողությունը սերտ փոխգործողության մեջ լինեն, լրացնեն միմյանց։ Իսկ դա հնարավոր է միայն այն դեպքում, երբ կարգավորված է կառավարման ապարատի աշխատանքի ողջ սիստեմը, և մշտապես ապահովվում են բարձր կարգապահությունը և պահանջկոտությունը։

Կուսակցության XXVII համագումարի կողմից սովետներին առաջադրված մեծ ու պատասխանատու խնդիրները հրամայաբար պահանջում են ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի կողմից ընդունված որոշման ոգով բարձրացնել նրանց ապարատի աշխատանքի մակարդակը։ Իհարկե, ամբողջությամբ վերցրած հանրապետության տեղական սովետների ապարատը կոմպլեկտավորված է գիտակ, բանիմաց աշխատողներով։ Շրջանային ու քաղաքային սովետների գործադիր կոմիտեների նախագահները, նրանց տեղակալները, բաժինների ու վարչությունների ղեկավարներն ունեն բարձրագույն կրթություն, շատերը ժողովրդական տնտեսության մասնագետներ են և ունեն անհրաժեշտ փորձ։

Սակայն, եթե վերցնենք ամբողջությամբ տեղական սովետների բոլոր օղակները, ապա ստացվում է, որ գործադիր կոմիտեների 581 նախագահներից բարձրագույն կրթություն ունեն միայն 420-ը կամ 72,3 տոկոսը, չնայած տեղերում կան բարձրագույն կրթությամբ կուսակցական, սովետական և տնտեսական աշխատանքի փորձ ունեցող շատ կադրեր։

Հաճախ ենք հանդիպում հանձնարարված գործի նկատմամբ ապարատի աշխատողների անպատասխանատվության, մարդկանց նկատմամբ բյուրոկրատիզմի, ձևական-անտարբեր վերաբերմունքի դրսևորման փաստերի։ Ուստի լիովին հասկանալի են տեղական սովետների գործկոմների, մանավորա-



պես, նրանց ապարատի աշխատողների հասցեին քաղաքացիների գանգատներն ու կշտամբանքները և՛ մամուլում, և՛ աշխատավորական կոլեկտիվներում, և՛ աշխատավորների այն բազմաթիվ նամակներում, որ ստացվում են Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահությունում։

Որպեսզի տեղական սովետների, նրանց ապարատի գործունեությունը ճկուն ու նպատակային լինի, համապատասխանի այսօրվա պահանջներին, հարկավոր է ավելի լիովին հենվել աշխատավորների, ամբողջ դեպուտատական բանակի շահագրգռված աջակցության և կառավարմանը մասնակցելու վրա։

Այժմ, երբ հանրապետության բոլոր տեղական սովետները նստաշրջաններում քննարկել են ՍՄԿԿ XXVII համագումարի որոշումներից բխող իրենց խնդիրները և հաստատել գործնական միջոցառումներ, անհրաժեշտ է ըստ ամենայնի նպաստել դեպուտատական կազմավորումների գործունեության ակտիվացմանը, ստեղծել նրանց ուսուցման ու հրահանգավորման հստակ սիստեմ, օգնել նրանց՝ արդյունավետությամբ կատարելու դեպուտատի ստատուսի մասին օրենքից բխող պարտականությունները։

ՍՄԿԿ XXVII համագումարի որոշումները պահանջում են սովետների աշխատանքի ոճի ու մեթոդների արմատական բարելավում, ժողովրդի լիիշխանության իրականացման գործում նրանց հնարավորությունների առավելագույն օգտագործում։ Կասկած լինել չի կարող, որ Հայկական ՍՍՀ ժողովրդական դեպուտատների սովետները նոր պահանջներին համապատասխան առաջիկայում ևս հաստատակամորեն ու հետևողականորեն կկենսագործեն կուսակցության քաղաքականությունը, բոլոր ջանքերը կներդնեն ՍՄԿԿ XXVII համագումարի կողմից առաջադրված խնդիրների կատարմանը։

# ԳԱՂԱՓԱՐԱԽՈՍԱԿԱՆ ՊՐՈՑԵՍԸ ԿԱՌԱՎԱՐՄԱՆ ՀԱՄԱԿԱՐԳՈՒՄ

Ա. ՍԻՄՈՆՅԱՆ

**ՍՄԿԿ** XXVII ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ առանձնահատուկ ուշադրություն դարձրեց գաղափարախոսական պրոցեսի կառավարման հարցերին, նախանշեց կուսակցության բազմաբեղուն գործունեության այդ կարևոր բնագավառի հետագա կատարելագործման ուղիները։

Փիլիսոփայական, սոցիոլոգիական ու պատմակուսակցական գրականության մեջ վերջին տարիներին այդ պրոբլեմն արժանացել է մասնագետների ուշադրությանը, որոնց հետազոտությունները, անշուշտ, տեսական ու գործնական հետաքրքրություն են ներկայացնում։ Այս առնչությամբ հարկ է նշել Ա. Ա. Հովսեփյանի «Գաղափարախոսական աշխատանքի կառավարումը» մենագրությունը, որը լույս է ընծայել «Հայաստան» հրատարակչությունը։ Հեղինակը կուսակցական փաստաթղթերի, աղբյուրների, սոցիոլոգիական հետազոտությունների հիման վրա վերլուծել է սոցիալիզմի արդի փուլում գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի կառավարման մի շարք հարցեր։ Այստեղ լուսաբանված են գաղափարախոսական ներազդման պրոցեսի կուսակցականության և գիտականության սկզբունքները, բնութագրված է գաղափարախոսական աշխատանքի կառավարման ասպարեզում հանրապետության կուսակցական կազմակերպության փորձը։

Կուսակցության ուժն այն է, նշվեց ՍՄԿԿ XXVII համագումարում, որ նա զգում է ժամանակը, կյանքի զարկերակը, մշտապես գործում է մասսաների խորքում։

Հիրավի ամեն անգամ, երբ մեր հասարակության առջև նոր խնդիրներ են ծառանում, կուսակցությունը գտնում է դրանց լուծման ուղիները, վերակառուցում, ձևափոխում է ղեկավարման մեթոդները, ցուցադրելով երկրի ճակատագրի, սոցիալիզմի և կոմունիզմի գործի համար պատմական պատասխանատվության գիտակցումը։

Այժմ չի կարելի խույս տալ հասարակության զարգացման հասունացած պրոբլեմներից, հաշտվել անպատասխանատվության, անպահանջկոտության, անտարբերության հետ։ Այս առումով կարևորագույն ուղենիշ դարձավ ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թվականի ապրիլյան պլենումը, որի առաջադրած կուրսը արժանացավ կոմունիստների, միլիոնավոր աշխատավոր զանգվածների ակտիվ պաշտպանությանը։

Այժմ, հասարակության որակական վերափոխման ժամանակաշրջանը, կուսակցությունից, նրա կազմակերպություններից պահանջում է նոր ջանքեր սեփական գործունեության գնահատականներում, սկզբունքայնություն, գործարարություն և անձնվիրություն։ Համագումարի ընդունած որոշումները վկայում են այն մասին, որ արագացման բոլոր գործոնների մոբիլիզացման խնդիրը ընդունակ է լուծել միայն ժողովրդի շահերով ապրող, գիտականորեն հիմնավորված հեռանկար ունեցող կուսակցությունը։ Համագումարում ամենայն հստակությամբ ասվեց, որ կուսակցությունը կարող է հաջողությամբ լուծել նոր խնդիրներ, եթե ինքը գտնվում է անընդհատ զարգացման մեջ, զերծ է «անսխալականության» կոմպլեքսից, պարզորոշ տեսնում անելիքները։



Այսօր կուսակցությունը պահանջում է նորովի աշխատել, հաղթահարել քարացածությունն ու պահպանողականությունը, բոլոր դրսևորումներով կարողանալ սթափ գնահատել իրադրությունը ինչպիսին որ կա։ Տեղին է ասված, որ ժամանակն է դադարեցնել անհարկի նրբանկատության վարժանքներն այնտեղ, որտեղ պետք է դրսևորվեն պահանջկոտություն ու ազնվություն, կուսակցական խիղճ։ Միշտ արդիական է լենինյան նախազգուշացումը. «կեղծ փրազը, կեղծ պարծենկոտությունը բարոյական կործանում է, քաղաքական կործանման հաստատ երաշխիքը» (Վ. Ի. Լենին, **ԵԼԺ**, հ. 11, էջ 405)։

Կուսակցությունը իրականացնում է քաղաքական ղեկավարություն, նախանշում զարգացման գլխավոր հեռանկարը, սահմանում կյանքի սոցիալ-տնտեսական ու հոգևոր բնագավառների խնդիրները, զբաղվում կադրերի ընտրությամբ ու տեղաբաշխմամբ, ընդհանուր վերահսկողությամբ։ Ինչ վերաբերում է տնտեսական ու սոցիալ-կուլտուրական կոնկրետ հարցերի լուծման ուղիներին և մեթոդներին, այստեղ ընտրության լայն ազատություն է ընձեռվում կառավարման յուրաքանչյուր մարմնին, աշխատավորական կոլեկտիվին, տնտեսական կադրերին։

Կուսակցությունը հետևողականորեն կատարելագործելով ղեկավարման ձևերն ու մեթոդները, վճռականորեն հանդես է գալիս կուսակցական կոմիտեների ֆունկցիաները պետական և հասարակական մարմինների ֆունկցիաների հետ շփոթելու դեմ։ Դա, անշուշտ, հասարակ հարց չէ։ Իրոք, դժվար է գտնել այն սահմանագիծը, երբ կուսակցական վերահսկողությունը, գործնական խնդրի կատարման կազմակերպումը վերածվում են պետական ու տնտեսական մարմինների մանր խնամակալության, իսկ երբեմն էլ փոխարինում դրանց։ Չմոռանանք նաև, որ յուրաքանչյուր իրադրություն կոնկրետ մոտեցում է պահանջում, որտեղ շատ բան պայմանավորվում է տվյալ ղեկավարի քաղաքական հասունությամբ ու կուլտուրայով։ Այժմ միջոցներ են ձեռնարկվում, որպեսզի յուրաքանչյուր ոք հանձնարարված տեղամասում գործի մասնագիտորեն, նվիրումով ու եռանդով, չվախենալով պատասխանատվություն ստանձնելուց։

Այսօր կուսակցության տեսական մտքի կիզակետում են մի շարք բարդ պրոբլեմներ, որոնք բխում են մեր հասարակության, ամբողջ աշխարհի զարգացման ժամանակակից, բեկումնային բնույթից։ Քաղաքական, տնտեսական, գիտատեխնիկական, սոցիալական, կուլտուրական և հոգեբանական հանգամանալի վերլուծության կարիք ունեն արագացման բազմազան խնդիրները։ Հասարակական գիտությունների առջև ծառացել են սոցիալական վերափոխումների բնութագրման ու իմաստավորման հարցերը։

Կուսակցությունն այսօր անհրաժեշտ է համարում գաղափարական ներազդման ամբողջ ուժը կենտրոնացնել այն իրողության վրա, որ յուրաքանչյուր մարդ ըմբռնի ներկա մոմենտի սրությունը, նրա առանձնահատկությունները։ Մասսաների աշխատանքային ու հասարակական ակտիվությունը, նրանց եռանդն ու նախաձեռնությունը արթնացնելն առաջնահերթ խնդիր է։ Հասարակությունը շրջել դեպի նոր խնդիրներ, դրանց լուծմանը նպատակամղել ժողովրդի, յուրաքանչյուր աշխատավորական կոլեկտիվի ստեղծագործական պոտենցիալը։ Խելացի և ճշմարտացի խոսքը ներգործուն է, տպավորիչ, բայց այն առավել զորեղ է դառնում, երբ միացվում է քաղաքական, տնտեսական ու սոցիալական գործողությունների հետ։ Միայն այդպես հնարավոր է հաղթահարել տաղտկալի խրատատվությունը, կյանքի շնչով տոգորել կոչերն ու լոզունգները։

Համագումարում ամենայն որոշակիությամբ ասվեց, որ երկրային հիմքից խոսքի խզումը լրջորեն արժեզրկում է գաղափարախոսական ջանքերը։ Իրոք, ինչքան էլ դասախոսություններ կարդացվեն զգայուն վերաբերմունքի մասին, դատապարտվեն անհոգությունն ու բյուրոկրատիզմը, դրանք պատշաճ արձագանք չեն գտնի, եթե մարդը կոպտության է հանդիպում հիմնարկներում, խանութում, փողոցում։ Տեղ չի հասնի բարեկիրթ վարվեցողությանը նվիրված զրույցը, եթե վերացական է, անարմատ։ Սոցիալական արդարությանը, կարգուկանոնին ու կարգապահությանը նվիրված տպագիր խոսքը անհասցե կմնա, եթե այն չի ելնում իրական, փաստացի իրամաբանությունից։

Գաղափարախոսական աշխատանքի արդյունավետության բարձրացման համար քարենպաստ հասարակական պայմաններ է ստեղծում կուսակցության առաջադրած սոցիալ-տնտեսական զարգացման արագացնելու ստրատեգիան: Այդուհանդերձ, հասարակական գիտակցության զարգացումը միշտ էլ բարդ պրոցես է, սակայն արդի փուլի յուրօրինակությունն առանձնահատուկ սրություն է հաղորդել չլուծված շատ պրոբլեմների: Դեռևս ոչ բոլորը ի վիճակի եղան ըմբռնելու և ընդունելու այն հասարակական մթնոլորտը, նրա բնույթն ու առանձնահատկությունները, որոնք հարուցում են արագացման խնդրի մասշտաբայնությունը, ստեղծվող իրավիճակը: Ինչպես նաև սոցիալ-տնտեսական զարգացման դանդաղումը ոչ միայն տնտեսական ղեկավարման, այլև գաղափարախոսական ոլորտում եղած լուրջ վրիպումների հետևանք էր: Այս մասին ոչ ուշ անցյալում քիչ չի ասվել, սակայն գործնականում նպատակասլաց դաստիարակչական աշխատանքը հաճախ փոխարինվել է մտացածին կամպանիաներով, որոնք պրոպագանդան հեռացնում էին կյանքից, ինչը բացասաբար էր անդրադառնում հասարակական մթնոլորտի վրա: Իրողություն էր նաև կենսական հակասությունների սրման անտեսումը, էկոնոմիկայի, սոցիալական բնագավառներում ստեղծված իրավիճակի ռեալիստական գնահատականի բացակայությունը: Չի կարելի չնկատել, որ անցյալի շերտանստվածքները անհետք չեն մնում: Դրանք այս կամ այն ձևով դրսևորվում են մարդկանց գիտակցության մեջ, նրանց գործողություններում և վարքում: Իրոք, անկարելի է միանգամից փոխել կյանքի ոճը: Է՛լ ավելի բարդ է իներցիայի հաղթահարումը մտածողության ու հոգեբանության մեջ:

Քաղաքականությունը կենսունակ է, երբ այն ճշտորեն հաշվի է առնում դասակարգերի, սոցիալական խմբերի, անհատի շահերը: Այս դրույթը ճշմարիտ է ինչպես հասարակության կառավարման, այնպես էլ գաղափարախոսական դաստիարակչական առումով: Նկատենք, որ հասարակությունը կոնկրետ մարդիկ են իրենց շահերով, ուրախություններով ու ապրումներով, կյանքի մասին իրենց իսկական և կարծեցյալ արժեքներով, պատկերացումներով ու ակնկալիքներով:

Այս առնչությամբ համագումարը անդրադարձավ գաղափարախոսական պրոցեսի մի շատ էական կողմի վերլուծությանը, ինչպիսին մասսաների շրջանում անհատական դաստիարակչական աշխատանքի կազմակերպումն է: Գաղափարախոսական աշխատանքի պրակտիկայում այդ հարցին ուշադրություն նվիրվել է, սակայն չի հաղթահարվել սովորական «համախառն» մոտեցումը: Տարբեր տիպի հաշվետվություններում բերվող թվերը տպավորիչ են, որոնք վկայում են գաղափարական ճակատում ընդգրկվածների զանգվածային թվակազմի մասին: Սակայն, հավանաբար, նման ընդգրկումների խայտաբղետության մեջ անէանում է կենդանի մարդը: «Գաղափարախոսական վիճակագրությունը,— ասաց ընկեր Գորբաչովը,— մեզանից արդյոք չի՞ վարագուրում, մի կողմից, անձնվեր աշխատավորներին, որոնք հասարակական մեծ ճանաչման են արժանի, իսկ մյուս կողմից՝ հակասոցիալիստական բարոյականություն կրողներին: Ուստի և այնքան կարևոր է առավելագույն կոնկրետությունը դաստիարակության գործում»:

Սոցիալիստական հասարակությունում մարդկանց վրա գաղափարական ներգործությունն ինքնին չի կատարվում, այն իրականացվում է կոմունիստական կուսակցության մշակած գաղափարաքաղաքական ու սոցիալ-տնտեսական ծրագրով: Գաղափարախոսական պրոցեսի կառավարման նպատակը անձի, կոլեկտիվի, հասարակության վրա ներազդելն է, սոցիալ-տնտեսական նպատակների իրագործումը:

Որպես սոցիալական երևույթ կառավարումը ենթադրում է մարդկանց համատեղ գործունեության, հասարակության զարգացման ուղղության կանխորոշում, հայտնաբերված հակասությունների ու խոչընդոտների հաղթահարում, սոցիալիզմի առավելությունների ու ռեալ հնարավորությունների արդյունավետ օգտագործում:

Կառավարել մարդկանց՝ նշանակում է ճիշտ որոշել նրանց սոցիալական դերը, յուրաքանչյուրի տեղը հասարակության մեջ, ֆունկցիաները, իրավունքներն ու պարտականությունները: Հասարակական կյանքը պետք է այնպես կազմակերպել, որ անհատն ըստ ամենայնի ծավալի իր սոցիալական գործունեությունը, ճիշտ գիտակցի իրավունքներն ու պարտականությունները, իրավական ու բարոյական նորմերը:



Գաղափարաքաղաքական աշխատանքի արդյունավետության չափանիշները մարդկանց գիտակցականությունը բնութագրելու առումով գիտելիքներն են, աշխարհայացքը, գաղափարական համոզվածությունը: Վարքագծի բնութագրման չափանիշներն են աշխատանքային, հասարակական-քաղաքական ակտիվությունը, բարոյական գործելակերպը:

Ամեն մի հասարակարգ մարդկանց ձևավորում է յուրովի՝ ըստ իր կերպի ու պահանջմունքների: Այն ամեն մի անձնավորության գիտակցականության մեջ ներարկում է գաղափարներ ու հույզեր, որոնք համահնչուն են տվյալ հասարակության էությանը, հաստատում ապրելակերպի ու վարվեցողության սկզբունքներ ու նորմեր: Սոցիալիստական հասարակությունում հասարակական արտադրությունը, հոգևոր արժեքների ողջ համակարգը ներդաշնակվում են, հաստատում հասարակության բոլոր անդամների նպատակային դաստիարակության գիտակցաբար մշակված համակարգ: Սոցիալիստական հասարակության կառավարման բոլոր օղակների տնօրինողը ինքը մարդն է, որի ձևավորումը ենթադրում է հասարակության բոլոր անդամների նպատակային դաստիարակության գիտականորեն մշակված համակարգի առկայություն և կիրարկում:

Սոցիալիստական հասարակարգում անհատի դաստիարակության հարցը մեր օրերում առաջին պլան է մղվում: Արդի սոցիալական պրակտիկան բնութագրվում է արմատական, արագացող փոփոխություններով, որոնք ընդգրկում են մարդկանց կյանքի ու գործունեության բոլոր ոլորտները: Դա վերաբերում է սոցիալական վերափոխումների չափերին ու խորությանը, գիտատեխնիկական առաջընթացի տեմպերին, միջազգային հարաբերությունների համակարգի վերափոխմանը, մարդկության առջև ծառացած գլոբալ պրոբլեմների աճին: Նոր փոփոխություններ են կատարվում ոչ միայն մարդկանց կենսապայմաններում, այլև անձնավորության հոգևոր կերպարում, նրա վարքագծի շարժառիթներում, շրջապատի նկատմամբ, սեփական ես-ի հանդեպ վերաբերմունքում: Ընդ որում պրակտիկան երբեմն առաջ է անցնում տեսական պատկերացումներից, առաջադրելով նոր, առավել բարդ խնդիրներ:

Գաղափարախոսական գործունեության ազդեցությունը հասարակական կենսագործունեության տարբեր կողմերի վրա ինքնին չի դրսևորվում, այլ հանդես է գալիս անձի գործելակերպի ու վարվելակերպի հաստատման միջոցով:

Անձի ձևավորման գիտական կառավարումը ոչ միայն չի սահմանափակում նրա անձնական ազատությունը, ինչպես այդ մասին ճամարտակում են մեր գաղափարախոսական հակառակորդները, այլ ընդհակառակը ընդլայնում է այն, վերհանում սոցիալական առնչությունների եզրերը:

Նոր կյանքի հաստատման կարևորագույն արդյունքը սովետական մարդն է՝ սոցիալիստական գործելակերպով, հոգևոր վսեմ արժեքներով օժտված անձը, գաղափարական համոզվածության, քաղաքական հասունության, ինտերնացիոնալ գիտակցության, կոլեկտիվիզմի, ակտիվ կենսադիրքորոշման մարմնացումը: Նոր մարդու ձևավորումն ու ներդաշնակ զարգացումն անհնար է պատկերացնել առանց հասարակական կյանքի բոլոր բնագավառներում կուսակցության հետևողական բազմաշերտ գործունեության: Ահա թե ինչու ՍՄԿԿ-ն աշխատավորների կոմունիստական դաստիարակությունը համարում է կոմունիզմի համար մղվող պայքարի կարևոր ճակատը, ծրագրային գլխավոր նպատակը: Այստեղից տրամաբանորեն հետևում է, որ նոր մարդու ձևավորումը ոչ միայն նոր հասարակության կառուցման արդյունքն է, այլև կարևորագույն պայմանը: Նկատենք, որ կոմունիստական դաստիարակությունը միասնական պրոցես է, և անհնար է մարդու անհատականության որևէ հատկանիշ ձևավորել՝ չառնչվելով մյուսներին:

Կուսակցական ամենօրյա ղեկավարության կատարելագործման, նոր մեթոդների և ձևերի հետևողական որոնման շնորհիվ ներկայումս արմատավորվել է աշխատավորների գաղափարաքաղաքական դաստիարակության, նրանց գիտական մատերիալիստական աշխարհայացքի ձևավորման ճկուն ու արդյունավետ համակարգ:

Գաղափարադաստիարակչական ներազդման կոմպլեքսում առանձնանում է գաղափարաքաղաքական դաստիարակությունը, որի հիմնական խնդիրն է աշխատա-

Սոցիալական պլանավորումը հետևողականորեն դառնում է կոմունիստական դաստիարակության համակարգի գիտականության, արդյունավետության բարձրացման կարևորագույն միջոցը: Հասարակության կյանքում սոցիալական գործոնների դերի աճը հարուցեց պետական պլանների նպատակաուղղվածության ընդգրկում, որոնք դարձան տնտեսական ու սոցիալական զարգացման պլաններ: Այստեղ կարևորը սոցիալական զարգացման և ժողովրդի կենսամակարդակի բարձրացման կոմպլեքսային պլանն է: Սոցիալական պլանավորման յուրահատկությունը նրանում է, որ այն կանխանշում է առանձին կոլեկտիվներում, փոքր խմբերում անհատների մեջ նկատվող փոփոխությունները և այդ հիման վրա հող նախապատրաստում հասարակության սոցիալական տեղաշարժերի համար: Նկատենք, որ կոլեկտիվը չափազանց բարդ կազմավորում է իր ներքին կապերով, միաժամանակ նա սերտորեն առնչվում է այլ շատ արտադրական բջիջների, հասարակական կազմակերպությունների, ձեռնարկությունների, հիմնարկությունների հետ: Կոլեկտիվը հանդես է գալիս որպես անհատի ընդունակությունների գործադրման, պահանջմունքների և շահերի իրականացման հիմնական ոլորտ, հասարակության հետ անհատին կամրջող հիմնական միջոց: Աշխատանքային կոլեկտիվում է դրսևորվում միկրոմիջավայրի դերը անձի, նրա վարքագծի ձևավորման գործում: Հասարակությունը հիմնականում կոլեկտիվի միջոցով է իրականացնում իր ազդեցությունն անձնավորության վրա, միայն այնտեղ է անհատը ստանում իր դիրքերի համակողմանի զարգացմանը նպաստող հնարավորություն:

Ինչպես նշել է Կ. Մարքսը, արտադրության պրոցեսում փոխվում են ոչ միայն օբյեկտիվ պայմանները, այլև բուն արտադրողները, իրենց մեջ մշակելով նոր հատկություններ, արտադրության շնորհիվ զարգացնելով և վերափոխելով հենց իրենց, ստեղծելով նոր ուժեր և նոր պատկերացումներ, հաղորդակցման նոր միջոցներ, նոր պահանջմունքներ:

Այժմ, երբ կուսակցությունը հետևողականորեն իրականացնում է սովետական հասարակության կյանքի բոլոր բնագավառներում արագացման ստրատեգիան, առավել հրատապ ու կենսական է դառնում գաղափարախոսական աշխատանքի կատարելագործումը:

---

# ԱԶԳԱՅԻՆ ՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ ԱՐԴԻ ՓՈՒԼՈՒՄ

**Հ. ՄԱԿԻՆՅԱՆ**
Պատմական գիտությունների թեկնածու, դոցենտ

*ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ կոմունիստական կուսակցության XXVII համագումարի որոշումները, ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրության սկզբունքային դրույթները մեծ ներդրում են ազգային հարաբերությունների զարգացման տեսության ու պրակտիկայում:*

*ՍՄԿԿ Կենտկոմի Քաղաքական զեկուցման մեջ տրված է լենինյան ազգային քաղաքականության, մեր երկրի ժողովուրդների եղբայրական բարեկամության անշեղ ամրապնդման, սովետական ազգերի ու ժողովուրդների համակողմանի բարգավաճման ու մերձեցման ասպարեզում ձեռք բերված հաջողությունների խոր վերլուծությունը, բացահայտված են ազգային հարաբերությունների հետագա զարգացման խնդիրներն ու հեռանկարները:*

*Բնութագրելով սովետական սոցիալիստական ազգերի ու ազգային հարաբերությունների զարգացման հաջողությունները, ընկեր Մ. Ս. Գորբաչովն ասաց. «Մեր երկրում ազգային հարցի լուծման հիմքերը դրեց Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը: Կոմունիստական կուսակցությունը, հենվելով Վ. Ի. Լենինի ուսմունքի, սոցիալիզմի նվաճումների վրա, վիթխարի վերափոխիչ աշխատանք է կատարել այդ բնագավառում: Դրա արդյունքները սոցիալիզմի ակնառու նվաճումն են, որոնք հարստացրել են համաշխարհային քաղաքակրթությունը: Մեկընդմիշտ ոչնչացված են ազգային ճնշումն ու ազգային անիրավահավասարությունը՝ բոլոր ձևերով ու դրսևորումներով: Հաստատվել, տասնյակ միլիոնավոր մարդկանց գիտակցության մեջ են մտել ժողովուրդների անխախտ բարեկամությունը, բոլոր ժողովուրդների ազգային մշակույթի և ազգային արժանապատվության հանդեպ հարգանքը»:*

*Ստեղծագործաբար զարգացնելով ազգային հարցի վերաբերյալ լենինյան տեսությունը և ելնելով մեր բազմազգ հայրենիքում այդ հարցի լուծման բազմահարուստ փորձից, կուսակցության XXVII համագումարը հետևցրեց, որ ազգային հարաբերությունների բնագավառում ձեռք բերված նվաճումները չի նշանակում, թե բոլոր հարցերը լուծված են և այլևս չկան խնդիրներ ու պրոբլեմներ: Համագումարը արձանագրեց. «Բայց մեր նվաճումները ազգային պրոցեսների անպրոբլեմայնության պատկերացումներ չպիտի ստեղծեն: Հակասությունները ներհատուկ են ամեն մի զարգացման, դրանք անխուսափելի են նաև այդ ոլորտում: Գլխավորն է տեսնել դրանց մշտապես ծագող ասպեկտներն ու կողմերը, որոնել ու ժամանակին ճիշտ պատասխաններ տալ կյանքի առաջադրած հարցերին»:*

*ՍՍՀՄ-ում ազգային հարցի լուծման պատմական փորձը անհերքելիորեն վկայում է, որ սոցիալիզմի արդի փուլում բազմազգ պետության մեջ ազգային հարաբերությունները շարունակ զարգանում են և կարող են առաջանալ նոր խնդիրներ ու պրոբլեմներ: Ազգային հարաբերությունները՝ որպես հասարակական հարաբերությունների մի մասը, բարդ և մշտապես զարգացող բնագավառ են: Այստեղ չի կարելի հենվել տարերային պրոցեսների վրա,*

քանի որ ամենօրյա կյանքում ամենևին էլ ոչ միշտ է հաջողվում ըմբռնել հասարակական բոլոր կապերը, ճիշտ գնահատել այն հնարավոր հակասություններն ու դժվարությունները, որոնք ծնվում են ազգային հարաբերությունների բնագավառում։ Դրանց ժամանակին հայտնաբերելը և հմտորեն լուծելը կուսակցության ծրագրային պահանջներից են։

Ազգային հարաբերությունների հետագա զարգացումը կոմունիստական կուսակցությունը համարում է օբյեկտիվ անհրաժեշտություն։ Երկրում անընդհատ աճում է ժողովուրդների բարեկամության և եղբայրության, նրանց ինտերնացիոնալ միասնության ամրապնդման նշանակությունը, քանզի այդ միասնության մեջ է երկրի հզորության գլխավոր աղբյուրներից մեկը։ ՍՄԿԿ XXVII համագումարը ազգային հարաբերությունների զարգացման բնագավառում կարևոր խնդիր համարեց ՍՍՀՄ ժողովուրդների եղբայրական միության տնտեսական, սոցիալ-քաղաքական և մշակութային հիմքերի անընդհատ ամրապնդումը։ Կուսակցությունը պահանջում է գտնել աշխատանքի այնպիսի ձևեր, որոնք է՛լ ավելի մեծ ասպարեզ բացեն բոլոր ազգերի ու ազգությունների միասնության հետագա ամրապնդման համար։ Որքան սերտ լինի միասնությունը ազգերի ու ազգությունների փոխհարաբերություններում, այնքան ամրակուռ կլինի նրանց կամավոր հիմունքներով ստեղծված դաշինքը, այնքան հաջողությամբ կիրագործվի ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման արագացման ՍՄԿԿ XXVII համագումարի կուրսը։

Կոմունիստական կուսակցությունը և սովետական պետությունը ազգային քաղաքականությունը մշակում և կիրառում են՝ հաշվի առնելով սովետական հասարակության բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության և սոցիալիստական մտավորականության, բոլոր ազգերի ու ազգությունների օբյեկտիվ առանձնահատկություններն ու շահերը։

Սովետական հանրապետությունների բնակչության կազմը հետզհետե բազմազգ է դառնում, շարունակ աճում է ոչ բնիկ ազգությունների քաղաքացիների թիվը, որոնք ունեն իրենց յուրահատուկ պահանջմունքները լեզվի, մշակույթի և կենցաղի բնագավառներում։ Բոլոր ազգություններն էլ ներկայացված են կուսակցական և սովետական մարմիններում։ ՍՄԿԿ-ն ազգային հարաբերությունների զարգացման բնագավառում իր կարևոր խնդիրն է համարում ոչ միայն ազգերի, այլև փոքր ազգախմբերի, ազգային փոքրամասնությունների շահերի ու պահանջմունքների առավել լրիվ բավարարումը։

ՍՄԿԿ-ն անընդհատ ստեղծագործաբար զարգացնում և հետևողականորեն իրականացնում է կյանքում ազգերի ու ազգային հարաբերությունների զարգացման մասին մարքս-լենինյան ուսմունքը, ընդհանրացնում է սովետական պետության լենինյան ազգային քաղաքականության կենսագործման վիթխարի փորձը և այն օգտագործում նոր պայմաններին համապատասխան։

Ներկայումս հաշվի է առնվում այն օբյեկտիվ իրողությունը, որ ազգային հարցը սոցիալիզմի և կապիտալիզմի միջև մղվող պայքարի, բուրժուական և ռևիզիոնիստական գաղափարախոսության դեմ մարքսիզմ-լենինիզմի պայքարի սուր տեղամասերից մեկն է։ Սոցիալիզմի գաղափարական հակառակորդները շարունակ խեղաթյուրում են ՍՍՀՄ-ում ազգային քաղաքականության նվաճումները։ Բուրժուական գաղափարախոսության դեմ փաստարկված պայքարի անհրաժեշտությունը հետզհետե մեծանում է։

Սոցիալիզմի կատարելագործման հետ միասին կկատարելագործվեն նաև ազգային հարաբերությունները։ ՍՄԿԿ ծրագրում նշված է. «ՍՄԿԿ-ն ելնում է այն բանից, որ մեր սոցիալիստական բազմազգ պետության մեջ հարյուրից ավելի ազգերի ու ազգությունների համատեղ աշխատանքի ու կյանքի պրոցեսում օրինաչափորեն ծագում են ազգային հարաբերությունների կատարելագործման նոր խնդիրներ։ Կուսակցությունը դրանք լուծել է և կլուծի լենինյան ազգային քաղաքականության փորձված սկզբունքների հիման վրա»։

Այս ամենը վկայում է, որ մեր երկրում ազգային հարաբերությունների զարգացումը բազմապլանային խնդիր է։ Ինչպես ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրությունում, այնպես էլ կուսակցության XXVII համագումարի մյուս փաս-



տաթղթերում ազգային հարաբերությունների կատարելագործումը դիտվում է որպես սոցիալիզմի զարգացման օրինաչափություն։

ՍՄԿԿ XXVII համագումարը ազգային հարաբերությունների զարգացման բնագավառում խնդիր դրեց կատարելագործել ժողովրդատնտեսական կոմպլեքսը որպես ՍՍՀՄ ժողովուրդների բարեկամության ամրապնդման նյութական հիմք։ Համագումարը արձանագրեց. «Հետանկարի առումով մշակելով ազգային քաղաքականության հիմնական ուղղությունները, առանձնապես կարևոր է հոգալ, որ միասնական ժողովրդատնտեսական կոմպլեքսի զարգացման մեջ բոլոր հանրապետությունների ավանդը համապատասխանի նրանց տնտեսական ու հոգևոր հարաճուն պոտենցիալին» (Մ. Ս. Գորբաչով, ՍՄԿԿ Կենտկոմի Քաղաքական զեկուցումը, էջ 88)։

Երկրի հանրապետություններից ու մարզերից յուրաքանչյուրի տնտեսությունը զարգանում է ոչ թե մեկուսացված, այլ միասնական կենտրոնացված կոմպլեքսի շրջանակներում։ Սովետական Միության ավելի քան հարյուր ազգեր ու ազգություններ միավորել են իրենց աշխատանքը, բնական և տնտեսական ռեսուրսները, ստեղծել միասնական համապետական մասշտաբով սոցիալիստական տնտեսություն, որը ներառում է բոլոր միութենական հանրապետությունների տնտեսությունները։

Միասնական կոմպլեքսը սոցիալիզմին հատուկ որակական գոյացություն է, արտադրության հանրայնացման յուրահատուկ ձև։ Այն ծառայում է միութենական հանրապետություններից յուրաքանչյուրի և, ամբողջությամբ վերցրած, երկրի տնտեսական պոտենցիալի ուժեղացմանը։ Յուրաքանչյուր ազգ կամ հանրապետություն առանձին-առանձին չէին կարող հասնել իրենց զարգացման այն բարձունքներին, որին նրանք հասել են ՍՍՀՄ միասնական կոմպլեքսի շրջանակներում։

Ներկայումս կոմունիստական կուսակցությունը և սովետական պետությունը վարում են այնպիսի տնտեսական քաղաքականություն, որի շնորհիվ երկրի էկոնոմիկայի կենտրոնացված, պլանային կառավարումը ներդաշնակորեն զուգակցվում է ժողովրդական տնտեսության պլանավորման ու զարգացման գործում միութենական հանրապետությունների իրավունքների ընդլայնման հետ։ Ճիշտ մասնագիտացման շնորհիվ յուրաքանչյուր հանրապետությունում ու տնտեսական շրջանում ապահովվում է ժողովրդական տնտեսության այն ճյուղերի զարգացումը, որոնց համար առավել նպաստավոր պայմաններ կան։

ՍՄԿԿ ծրագրում նշված է. «Ընդհանուր միութենական մասշտաբով կենտրոնացված կառավարման հետ միութենական և ինքնավար հանրապետությունների, ինքնավար մարզերի և ինքնավար օկրուգների նախաձեռնության զուգակցումը հնարավորություն է տալիս ռացիոնալ օգտագործելու ամբողջ երկրի ռեսուրսները, տեղական, բնական ու մյուս առանձնահատկությունները»։

Կոմունիստական կուսակցության XXVII համագումարը խնդիր դրեց հետևողականորեն խորացնել աշխատանքի բաժանումը հանրապետությունների միջև, հավասարեցնել տնտեսավարման պայմանները, խրախուսել հանրապետությունների ակտիվ մասնակցությունը նոր շրջանների տնտեսական յուրացմանը, զարգացնել բանվոր դասակարգի ու մասնագետ կադրերի միջհանրապետական փոխանակումը, ընդլայնել և բարելավել որակյալ աշխատողների պատրաստումը հանրապետությունում ապրող բոլոր ազգերի ու ազգությունների քաղաքացիներից։

Ներկայումս ժողովրդատնտեսական համալիրի շրջանակներում ողջ Միության և յուրաքանչյուր հանրապետության տնտեսական շահերի համադրման շնորհիվ միութենական բոլոր հանրապետություններում և ազգային պետական մյուս միավորումներում զարգացել ու շարունակում են զարգանալ արտադրողական ուժերը, արդյունաբերությունն ու գյուղատնտեսությունը։ Ավելի է ամրապնդվում ազգերի տնտեսական համագործակցությունը, աճում է նրանցից յուրաքանչյուրի ավանդը կոմունիստական շինարարության ընդհանուր գործում։ ՍՍՀՄ միութենական տնտեսությունը ներառում է հանրապե-

նում կամավորության, հավասարության, եղբայրական համագործակցության հիման վրա։ Այստեղ անթույլատրելի է ամեն մի արհեստական առաջմղում, ինչպես և զարգացման հասունացած օբյեկտիվ միտումների զսպում»։

Սոցիալիստական շինարարության ընթացքում լենինյան ազգային քաղաքականության անշեղ կենսագործման շնորհիվ մեր երկրում առաջացավ մարդկանց պատմական նոր հանրություն՝ սովետական ժողովուրդը։ Այդ նոր հանրությունը ձևավորվեց սոցիալիստական ազգերի զարգացման ու մերձեցման շնորհիվ։ Այն հանդիսացավ տնտեսության միասնական սիստեմի ու սոցիալիստական հասարակական հարաբերությունների ծնունդը, սովետական հասարակության կյանքում կատարված բոլոր վերափոխումների հանրագումարը։

Սովետական ժողովուրդը ազգերի ու ազգությունների, դասակարգերի ու սոցիալական խավերի տնտեսական, քաղաքական, սոցիալական ու հոգևոր շահերի զուգակցման մարմնացումն է։ ՍՄԿԿ XXVII համագումարն ընդգծեց «Սովետական ժողովուրդը հանդես է գալիս որպես որակապես նոր սոցիալական և ինտերնացիոնալ հանրություն, որը զոդված է տնտեսական շահերի, գաղափարախոսության և քաղաքական նպատակների միասնությամբ»։

Բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության և ժողովրդական մտավորականության դաշինքը, որտեղ առաջատար դեր է խաղում բանվոր դասակարգը, դարձել է սովետական ժողովրդի անխախտ հիմքը։ Կոմունիստական կուսակցությունը միշտ էլ հսկայական ուշադրություն է նվիրել մեր հասարակության առաջատար ուժը կազմող բանվոր դասակարգի ազգային ջոկատների աճին։ Համագումարը խնդիր դրեց ընդլայնել ու բարելավել հանրապետություններում բնակվող բոլոր ազգերից ու ազգություններից որակյալ բանվորների պատրաստման գործը։

ՍՄԿԿ XXVII համագումարի փաստաթղթերում որոշակիորեն հիմնավորված են ազգային հարաբերությունների զարգացման հեռանկարները, ինչպես նաև ազգերի ապագան։ Կուսակցության ծրագրում նշված է, որ ազգերի զարգացումն իր հետ բերում է ազգերի լիակատար միասնություն պատմական հեռավոր ապագայում։

Մարքսիզմի դասականները գիտականորեն հիմնավորել են ազգերի հետագա զարգացման օրինաչափությունները, նրանց ապագան։ Ելնելով ազգերի զարգացման որոշակի ժամանակաշրջաններից, Վ. Ի. Լենինը «ազգերի ձուլում» արտահայտությունն օգտագործել է տարբեր առումով։ Մինչև սոցիալիստական հեղափոխությունը նա գտնում էր, որ մարքսիստների խնդիրն է բոլոր ազգերի բանվորներին «միաձուլել» հեղափոխական կազմակերպությունների մեջ՝ պրոլետարիատի ընդհանուր շահերը պաշտպանելու համար։

«Ռուսաստանի տնտեսական և քաղաքական պայմանների ամբողջությունը,— գրել է Վ. Ի. Լենինը,— սոցիալ-դեմոկրատիայից... անպայմանորեն պահանջում է բոլոր ազգությունների բանվորների միաձուլման իրականացում առանց բացառության պրոլետարական բոլոր կազմակերպություններում (քաղաքական, պրոֆեսիոնալ, կոոպերատիվ, լուսավորական և այլն, և այլն)» (ԵԼԺ, հ. 23, էջ 392)։

Սոցիալիստական հեղափոխության նախապատրաստման և անցկացման ժամանակաշրջանում, ինչպես նաև սոցիալիզմի կառուցման ընթացքում Վ. Ի. Լենինը դարձյալ ազգերի միաձուլում ասելով նկատի ուներ ոչ թե ազգային տարբերությունների վերացումը, այլ բոլոր ազգությունների աշխատավորների միաձուլումը միանման շահ ունեցող միասնական կազմակերպություններում՝ հանուն բուրժուազիայի տապալման, հանուն սոցիալիզմի։

Շեշտելով նոր հասարակարգի կառուցման գործում տարբեր ազգերի աշխատավորների շրջանում լիակատար վստահության, ամենասերտ դաշինքի անհրաժեշտությունը, Վ. Ի. Լենինը գրել է. «Մենք ազգային թշնամության, ազգային պառակտման, ազգային առանձնացվածության հակառակորդներ ենք։ Մենք միջազգայնականներ, ինտերնացիոնալիստներ ենք» (ԵԼԺ, հ. 40, էջ 51)։



Գիտական կոմունիզմը մերժում է ազգերի ձուլման պրոցեսի արագացումը։ Ազգերի միաձուլումը Լենինը կապում է ամբողջ աշխարհում կապիտալիզմի վերացման, կոմունիզմի ստեղծման, պետության մահացման և համաշխարհային մասշտաբով մարդկանց տնտեսական, քաղաքական ու կուլտուրական լիակատար ընդհանրություն ստեղծելու հետ։ Դա երկարատև ու աստիճանական պրոցես է։ Այն հնարավոր է միայն յուրաքանչյուր ազգի ազատ, լայն ու անարգել զարգացման և մերձեցման հիման վրա։ Ազգերի միաձուլումը տեղի կունենա ոչ թե այս կամ այն ազգային արժեքների, առանձին ազգերի մշակութային նվաճումների վերացման ուղիով, այլ բոլոր կոմունիստական ազգերի առավելագույն զարգացման շնորհիվ։

Կոմունիստական շինարարության արդի փուլում դաստիարակչական աշխատանքի նկատմամբ պահանջներն ավելի են մեծանում։ Դա օրինաչափ է, որովհետև սովետական ժողովրդի կողմից իրականացվող սոցիալ-տնտեսական և կուլտուրական վերափոխումների մասշտաբներն անընդհատ մեծանում են՝ կապված երկրի զարգացման արագացման հետ։ Դրա հետ մեկտեղ աճում է նաև ՍՍՀՄ ժողովուրդների բարեկամության և եղբայրության, նրանց ինտերնացիոնալ միասնության նշանակությունը՝ երկրի հզորության գլխավոր աղբյուրներից մեկը։

Մեր երկրում ազգային հարցի լուծման բազմահարուստ փորձը վկայում է, որ աշխատավորների կոմունիստական դաստիարակության, նրանց քաղաքական, ինտերնացիոնալիստական և հայրենասիրական համոզմունքների ձևավորման պրոցեսում ազգային առանձնահատկությունների, շահերի ու զգացմունքների անտեսումը կարող է նպաստել նացիոնալիզմի մնացուկների աշխուժացմանը։ Ուղեցույց նշանակություն ունի Վ. Ի. Լենինի դրույթն այն մասին, որ «անհրաժեշտ է առանձնահատուկ զգուշություն ցուցաբերել ազգային զգացմունքի նկատմամբ, հոգատարությամբ կիրառել ազգերի հավասարությունը» (ԵԼԺ, հ. 36, էջ 118)։

Մեր հասարակության առանձին մարդկանց գիտակցության մեջ նացիոնալիզմի և շովինիզմի մնացուկների պահպանմանը այս կամ այն չափով նպաստում է բուրժուական գաղափարախոսությունը։ Հակակոմունիզմի ջատագովները ամեն կերպ ճգնում են, մասնավորապես երիտասարդության շրջանում, բորբոքել ազգայնական տրամադրություններ, կեղծ հայրենասիրական հույզեր։

Ահա թե ինչու ՍՄԿԿ XXVII համագումարն այնքան մեծ նշանակություն տվեց աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակությանը։ «ՍՄԿԿ-ն,— նշված է համագումարի բանաձևում,— հավատարիմ իր ազգային քաղաքականության լենինյան սկզբունքներին, այսուհետև էլ անդուլ կամրապնդի մեր երկրի ժողովուրդների եղբայրական բարեկամությունը, աշխատավորներին կդաստիարակի սովետական հայրենասիրության և ինտերնացիոնալիզմի ոգով»։

Աշխատավորներին սովետական հայրենասիրության, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի ոգով դաստիարակության հիմնական ու գլխավոր միջոցը եղել և մնում է մարքսիզմ-լենինիզմի գաղափարների պրոպագանդան, ՍՄԿԿ և միջազգային կոմունիստական ու բանվորական շարժման պատմության, կուսակցության XXVII համագումարի նյութերի խոր ուսումնասիրությունը։ Համագումարը ազգային հարաբերությունների հետագա զարգացման առաջնահերթ խնդիրը համարեց սոցիալիստական հասարակության միասնության, սոցիալիստական ազգերի սոցիալ-դասակարգային և ինտերնացիոնալ հանրության ամրապնդումը, ազգերի ծաղկումը և մերձեցումը, սովետական ժողովրդի գաղափարաքաղաքական հիմքերի ամրակայումը, հասարակական կյանքի բոլոր բնագավառներում ինտերնացիոնալ և ազգային շահերի զուգակցումը, բազմազգ պետության և յուրաքանչյուր հանրապետության նյութական ու հոգևոր պոտենցիալի ուժեղացումը, աշխատավորների ինտերնացիոնալիզմի, հայրենասիրության ոգով դաստիարակությունը։

# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄՐՑՈՒԹՅԱՆ ԱՐԳԱՍԻՔԸ

**ՀՐ. ՀՈՎՍԵՓՅԱՆ**
*Հայկական ՍՍՀ վաստակավոր ժուռնալիստ*

Արարատի ՇՐՋԱՆԻ Վեդի ավանի Խանջյանի անվան կոլտնտեսությունը 1985 թ. բարձր արդյունքներով հաղթող ճանաչվեց համամիութենական սոցիալիստական մրցությունում և պարգևատրվեց ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի ու ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշով: Նրա անունը գրանցվեց ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության նվաճումների ցուցահանդեսի պատվո տախտակին: Սա, իհարկե, տասնմեկերորդ հնգամյակում տնտեսության առաջացած միակ պարգևը չէ: Անցած հինգ տարում նա երկուական անգամ ևս շահել է համամիութենական ու հանրապետական փոխանցիկ կարմիր դրոշներ ու արժանացել ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի պատվոգրի՝ 1984—1985 թթ. մսուրային շրջանում անասունների ձմեռումը հաջողությամբ կազմակերպելու, անասնապահական մթերքների արտադրությունն ու պետական մթերումները ավելացնելու համար:

Պարգևները հենց այնպես չեն տրվում: Դրանք սոցիալիստական մրցության պատշաճ կազմակերպման ու լայն ծավալման, արտադրության մարդկանց համառ ջանքերի և մեծ եռանդի արգասիք են: Այո՛, խանջյանցիները աշխատասեր, հողի հարգն իմացող, խոսքի տեր մարդիկ են: Այդ են վկայում տասնմեկերորդ հնգամյակում նրանց ձեռք բերած գոհացուցիչ արդյունքները: Կոլտնտեսությունը պտղի և կարտոֆիլի արտադրության հինգ տարվա պլանը կատարեց երեք, իսկ մյուս մթերքներինը՝ հիմնականում չորս տարում:

Կոլտնտեսության մարդիկ առանձնապես լավ աշխատեցին ՍՄԿԿ XXVII համագումարին նախորդած տարում: Ծավալելով սոցիալիստական մրցությունը իրենց հարևան Վանաշենի և Ծիրագլուխ կոլտնտեսությունների հետ՝ նրանք ուժերի լարումով, համառ ու հետևողական ջանքերով կատարեցին ու գերակատարեցին սոցմրցությամբ ստանձնած բոլոր պարտավորությունները: Անցած տարվա աննպաստ եղանակների պայմաններում նույնիսկ այստեղ խաղողի հեկտարի միջին բերքատվությունը կազմեց 281 ցենտներ, որը հնարավորություն տվեց պետությանը վաճառել 4.100 տոննա խաղող՝ ավելի շատ, քան նախատեսված էր պլանով: Բանջարանոցային կուլտուրաների ամեն մի հեկտարից, նախատեսված 435-ի փոխարեն, ստացվեց 813 ցենտներ բերք, ընդ որում պոմիդորի բերքատվությունը կազմեց 1.032 ցենտներ:

Անցած տարին արգասաբեր էր նաև անասնապահների համար: Տոհմային կազմի բարելավման, կերի բազայի ամրապնդման շնորհիվ կովերի միջին կաթնատվությունը, նախատեսված 2.535-ի փոխարեն, կազմեց 3.700, պետությանը հանձնված անասունների կենդանի քաշը՝ 360 կիլոգրամ:

Ուշագրավ է և հետևյալ փաստը: Հնգամյակի ավարտական տարում կոլտնտեսության դրամական եկամուտը անցավ հինգ միլիոն ռուբլուց, պլանավորածից շուրջ 2,2 **մլն** ռուբլով ավելի, կամ արտապլանային օգուտը կազմեց 287 հազար ռուբլի:

Ձեռք բերված նվաճումների տրամաբանական հետևությունն այն է, որ կուսկազմակերպությունն ու նրա բյուրոն (քարտուղար՝ Հ. Սարգսյան), կոլտնտեսության վարչությունը (նախագահ՝ Ս. Վարդանյան), արհկոմը (նախագահ՝ Մ. Սիմոնյան) ճիշտ են կազմակերպում սոցիալիստական մրցությունը, ապահովում դրա բարձր արդյունավետությունն ու ներգործունությունը: Մրցությունն այստեղ, իրոք, դիտվում է որպես աշխատավորների ստեղծագործական ակտիվությունն ու նախաձեռնությունը զարգացնելու, սոցիալիստական կոլեկտիվիզմը ձևավորելու և ամրապնդելու հզոր միջոց, աշխատանքի նկատմամբ գիտակցական վերաբերմունքի դրսևորման առավել արդյունավետ մեթոդ: Խանջյանի անվան կոլտնտեսությունում սոցիալիստական մրցության կազմակերպման փորձը ցույց է տալիս, որ մարդիկ դրսևորում են մեծ եռանդ, աշխատում ստեղծագործաբար, հասնում նշանակալից արդյունքների:

Ծանոթանում ես կոլտնտեսության կուսկազմակերպության ժողովների, բյուրոյի նիստերի արձանագրություններին ու որոշումներին և համոզվում, որ հետևողականորեն իրագործվում են կոնկրետ միջոցառումներ՝ մրցությունն արդյունավետ ու նպատակասլաց կազմակերպելու, նրա ներգործունությունն ապահովելու համար:

Մրցության կազմակերպման հիմքը կոլեկտիվ և անհատական պայմանագրերն են: Նախքան սոցիալիստական պարտավորություններ ստանձնելը, կուսբյուրոն, կոլտնտեսության վարչությունն ու արհկոմը կատարում են տնտեսագիտական մանրազնին հաշվարկներ: Ընդ որում ամենից առաջ հաշվի են առնվում առկա հնարավորություններն ու ռեզերվները և տնտեսության առջև ծառացած խնդիրներին համապատասխան մշակվում սոցպարտավորությունները: Դրանք ներառնում են գյուղատնտեսական արտադրության բոլոր ճյուղերը, արտադրամասերը, բրիգադներն ու անասնապահական ֆերմաները: Հատուկ ուշադրություն է նվիրվում այն բանին, որ ինչպես կոլտնտեսության, այնպես էլ բրիգադների ու կոլտնտեսականների ստանձնած պարտավորությունները զգալիորեն գերազանցեն արդեն նվաճված բնագծերը:

Պարտավորություններում շեշտը դրվում է տնտեսավարման նոր եղանակների ներդրման, աշխատանքի արտադրողականության բարձրացման, մթերքների որակի բարելավման, ինքնարժեքի իջեցման, կարգապահության ամրապնդման հարցերի վրա: Պարտավորությունները հաստատվում են կուսբյուրոյի, կոլտնտեսության վարչության ու արհկոմի համատեղ նիստում և կոլտնտեսականների ընդհանուր ժողովում: Պարտավորությունների ընդունումից ու հաստատումից հետո սկսվում է մրցության կազմակերպման ակտիվ փուլը: Կուսժողովներում և բյուրոյի նիստերում պարբերաբար քննարկվում են սոցիալիստական մրցությանն առնչվող բազմաբնույթ հարցեր, ընդհանրացվում է առաջավորների փորձը, ժամանակին բացահայտվում են այդ գործում տեղ գտած թերությունները: Այդ ամենը նպաստում է մրցողների աշխատանքային ակտիվության բարձրացմանն ու նախաձեռնության զարգացմանը:

Կուսբյուրոն և արհկոմը ուժեղացնում են պահանջկոտությունը մրցողների նկատմամբ, հետևում, թե կոմունիստները, արտադրության միջին օղակի կադրերն իրենց գործունեությամբ ինչպես են օգնում ու միջամտում կոլեկտիվի ստանձնած պարտավորությունների իրագործմանը, ով ինչպես է ապահովում խոսքի ու գործի միասնությունը: Այդ նպատակով կուսբյուրոյում սոցպարտավորությունների կատարման ընթացքի մասին հաշվետվություններ են տալիս բրիգադավարներն ու ֆերմայի վարիչը, առանձին կոմունիստներ: Հաշվետվությունների քննարկումների ընթացքում ևս բացահայտվում են մրցության գործի թերություններն ու թերացումները, օգնություն է ցույց տրվում ետ մնացողներին, խրախուսվում են աշխատանքում ծնունդ առած նոր նախաձեռնությունները: Դրանք էլ որոշիչ դեր են խաղում, մրցությունը դարձնում ավելի գործարար:

Սոցմրցության արդյունավետության բարձրացման համար կուսբյուրոյի մշակած միջոցառումներում մեծ տեղ է հատկացվում դիտողական ագիտացիային: Կաթնային համալիրում աչքի ընկնող տեղերում փակցված են կոլտնտեսության, ինչպես նաև ֆերմայի կոլեկտիվի, կթվոր-օպերատորների պարտավորությունները: Այստեղ, ինչպես նաև անասնապահական բոլոր շենքերում, մեքենատրակտորային հավաքակայանում, վարչական շենքում, կարմիր անկյունում փակցված գեղեցիկ պլակատները, լոզունգները և մյուս նյութերը մրցողներին կոչ են անում ստանձնել աշխատանքով կենսագործել ՍՄԿԿ XXVII և Հայաստանի կոմկուսի XXVIII համագումարների որոշումները, անվերապահորեն կատարել պլաններն ու պարտավորությունները:

Սոցմրցության ծավալման գործում հսկայական անելիքներ ունեն կուսկազմակերպության ստորին օղակները: Չէ՞ որ նրանք անմիջականորեն գտնվում են կոլեկտիվների խորքում և ամեն օր, ամեն ժամ առնչվում մրցողների հետ, քաջատեղյակ են նրանց գործերին ու հոգսերին: Եվ, իրոք, տեղամասային սկզբնական կազմակերպություններն ու կուսխմբերը մրցության լայն ծավալումը համարում են

իրենց առաջնահերթ խնդիրը: Նրանք նաև իրենց ժողովներում քննարկում են սոցպարտավորությունների կատարման ընթացքը, առաջավորների փորձը տարածելու, արմատավորելու և այլ կարևոր հարցեր: Նրանք հետևում են, որպեսզի յուրաքանչյուր կոմունիստ և կոլտնտեսական մինչև վերջ կատարի խոստումը, մրցության մասնակիցները խստորեն պահպանեն այգիների, բանջարանոցային կուլտուրաների մշակության ու ոռոգման ագրոտեխնիկական, անասունների խնամքի ու կերակրման զոոտեխնիկական կանոնները, չանտեսեն աշխատանքի որակը:

ՍՄԿԿ XXVII համագումարը երկրի սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու կարևորագույն պայման համարեց ժողովրդի, յուրաքանչյուր աշխատավորական կոլեկտիվի ստեղծագործական պոտենցիալի արդյունավետ օգտագործումը: Այդ առթիվ Կենտկոմի Քաղաքական զեկուցման մեջ ընկ. Մ. Ս. Գորբաչովն ասաց. «Ամենաէականը, որի վրա այսօր անհրաժեշտ է կենտրոնացնել կուսակցական ներգործության ամբողջ ուժը, այն բանին հասնելն է, որ յուրաքանչյուր մարդ ըմբռնի ներկա մոմենտի սրությունը, նրա բեկումնային բնույթը: Մեր ամեն մի պլան օդում կախված կմնա, եթե այն անտարբեր թողնի մարդկանց, եթե մենք չկարողանանք արթնացնել մասսաների աշխատանքային ու հասարակական ակտիվությունը, նրանց եռանդն ու նախաձեռնությունը» (**ՍՄԿԿ Կենտկոմի Քաղաքական զեկուցումը ՍՄԿԿ XXVII համագումարին,** «Հայաստան» հրատ., էջ 144):

Սոցիալիստական մրցությունն անընդհատ բարելավման ու կատարելագործման կարիք ունի: Դա կուսակցության արդի պահանջն է, որը մեկնակետ է դառնում կուսկազմակերպության համար մրցության կազմակերպման ողջ ընթացքում: Կուսբյուրոն հոգում է մրցության նոր ձևերի ու մեթոդների արմատավորման մասին: Այսպես, կուսբյուրոյի նիստերից մեկում միտք հայտնվեց մեքենայական կթի օպերատորների, ինչպես նաև մեխանիզատորների մրցույթ կազմակերպելու մասին: Դրա նպատակն էր հայտնաբերել բոլոր նրանց, ովքեր աշխատանքում առավելագույնս դրսևորում են իրենց ունակությունները, ջանում ճիշտ օգտագործել տեխնիկան, կթի ագրեգատներն ու մյուս սարքավորումները: Այն հավանության արժանացավ, և շուտով կուսբյուրոն, արհկոմը և կոլտնտեսության վարչությունը համատեղ մշակեցին մրցույթի պայմանները, հաղթողների համար սահմանեցին դրամական մրցանակներ: Պայմաններով սահմանվեց, թե կթվոր-օպերատորը նախատեսված ժամանակում ինչպես պետք է օգտագործի կթի ագրեգատը, պահպանի տեխնոլոգիական կանոնները: Մրցույթի հաղթողին որոշելու համար հաշվի է առնվում կաթի որակը: Անցած տարի կաթնապրանքային ֆերմայում երկու անգամ անցկացվել է այդպիսի մրցույթ, որի ընթացքում հաղթողներ են ճանաչվել 4.000-ական կթվորուհիներ Ս. Վարդանյանը, Ս. Հայրոյանը և Ռ. Մինասյանը: Բանջարանոցային կուլտուրաների միջշարային տարածությունների մեքենայական մշակության ժամանակ մեքենաների տեխնիկական խնամքի լավագույն կազմակերպման մրցույթի հաղթողներ դարձան և իրենց անվան դիմաց բարձր ցուցանիշներ գրանցեցին Շ. Գալստյանն ու Տ. Մկրտչյանը: Լավ արդյունք է տալիս նաև խաղողի վազ էտողների մրցույթը:

Մրցության արդյունավետ կազմակերպման գործում վճռական նշանակություն ունի մրցողների նյութական ու բարոյական խրախուսումը: Դա միաժամանակ մարդկային գործոնի ակտիվացման լավագույն միջոց է: Կուսկազմակերպությունն ու վարչությունը ճիշտ են ըմբռնում այս իրողությունը և կիրառում են խրախուսանքի բազմազան ձևեր: Այստեղ սահմանվել են միջբրիգադային դրոշներ և դրամական մրցանակներ, ինչպես նաև «Առաջավոր խաղողագործ», «Առաջավոր բանջարաբույծ», «Առաջավոր կթվոր-օպերատոր», «Առաջավոր մեխանիզատոր» հուշադրոշներ: Ամենառաջավորների լուսանկարները փակցվում են պատվո տախտակին, անունները գրանցվում աշխատանքային փառքի գրքում, մրցության հաղթողներին դրոշներն ու դրամական պարգևները հանձնվում են հանդիսավոր պայմաններում: Միայն անցած տարի մրցության հաղթողներին պարգևատրելու և լրացուցիչ վարձատրության համար հատկացվել է 125 հազար ռուբլի գումար: Այդ ամենի շնորհիվ տարեցտարի ավելանում է կոլտնտեսականների ամսական վաստակը, անցած տարի, օրինակ, այն կազմեց 340 ռուբլի:

Կուսակցական և արհմիութենական կազմակերպությունների տեսադաշտից դուրս չի մնում նաև մրցության առաջավորների ակտիվ հանգստի կազմակերպումը: Ամեն տարի 70—100 կոլտնտեսականներ, որոնք սոցպարտավորությունների կա-



տարման գործում հասել են առավել բարձր արդյունքների, տուրիստական անվճար ուղեգրերով մեկնում են Միության տարբեր վայրեր և արտասահմանյան երկրներ: Որպես կանոն 40—50 մարդու արտոնյալ պայմաններով հատկացվում են առողջարանների ու հանգստյան տների ուղեգրեր: Պարբերաբար կազմակերպվում են էքսկուրսիաներ դեպի հանրապետության տեսարժան վայրերը, կինոֆիլմերի, թատերական ներկայացումների կոլեկտիվ դիտումներ:

Սոցիալիստական պարտավորությունների կատարումն ապահովելու նպատակով կոլտնտեսության վարչությունը, կուսակցական, արհմիութենական կազմակերպությունները և ավանային սովետի գործկոմը մշտապես հոգ են տանում, որպեսզի մրցողների համար ստեղծվեն աշխատանքային անհրաժեշտ պայմաններ, ապահովվի նրանց բարձր արդյունավետ աշխատանքը:

Կոլտնտեսության դեմքը որոշող ճյուղը այգեգործությունն է: Բնականաբար, կուսկազմակերպության և վարչության հոգածության գլխավոր առարկան այդ ճյուղը արդյունաբերական հիմքի վրա դնելու, ինտենսիվ այգիներ հիմնելու, աշխատատար գործողությունները մեքենայացնելու, մրցողների ձեռքի աշխատանքը թեթևացնելու գործն է: Արդեն վերակառուցվել են 137 հեկտար խաղողի այգիներ, հները՝ կենսունակությունը կորցրածները, իրենց տեղը զիջել են ինտենսիվ տնկարկներին: Նախապատվությունը տրվել է ցրտադիմացկուն, սեղանի բարձր բերքատու սորտերին: Այս ամենը հնարավորություն է ընձեռում ամբողջովին մեքենայացնել այգիների միջշարային, միջվազային մշակությունը, պարարտացումը, հիվանդությունների ու վնասատուների դեմ տարվող պայքարը: Նկատելիորեն բարձրացել է նաև բանջարանոցային կուլտուրաների մշակության մեքենայացման մակարդակը:

Կուսակցությունն առանձնահատուկ նշանակություն է տալիս մարդկային գործոնի ակտիվացմանը: Այդ առնչությամբ կոլտնտեսությունում էական քայլեր են արվում: Կթվոր-անասնապահների ձեռքի աշխատանքը թեթևացնելու նպատակով լուրջ փոփոխություններ են կատարվել կաթնապրանքային ֆերմայում: Կառուցվել է ժամանակակից կաթնային համալիր, որտեղ կովերի կիթը, կերի ու ջրի մատակարարումը, գոմաղբի հեռացումը լիովին մեքենայացվել են: Ֆերմային կից գործում է կաթնատուն, ուր անասնապահների համար ստեղծվել են կուլտուր-կենցաղային լավագույն պայմաններ: Այն ունի ընդարձակ, գեղեցիկ կահավորված հանգստի սենյակ, կարմիր անկյուն, թեյարան, լողարան: Անասնապահները հանգստի ժամերին դիտում են հեռուստացույց, լսում ռադիո, զբաղվում ընթերցանությամբ:

Մրցության արդյունավետության բարձրացման լավ խթան է սոցիալական զարգացման հարցերի լուծումը: Այդ համակարգում վճռական նշանակություն ունի բնակարանային պայմանների բարելավումը: Միայն վերջին 3—4 տարիներին 200-ից ավելի ընտանիքների հատկացվել է հողամաս՝ նոր առանձնատներ կառուցելու համար: Քայլեր են արվում ավանի փողոցները բարեկարգելու, ասֆալտապատելու համար:

Կուսբյուրոն և արհկոմը մրցության կազմակերպման գործում ըստ ամենայնի կարևորում են առաջավորների փորձի ընդհանրացումն ու տարածումը: Լայնորեն պրոպագանդվել է կոմունիստ բրիգադավար Վ. Գասպարյանի աշխատանքի ուսանելի փորձը: Նա շուրջ երեսուն տարի բրիգադ է ղեկավարում և շարունակ ապահովում կայուն ու բարձր բերք: Վերջին երկու տարում հեկտարից ստացել է 352 ցենտներ խաղող: Բանջարեղենի արտադրության ռեկորդ է սահմանել կոմունիստ Գ. Սարգսյանի ղեկավարած բրիգադը, որն անցած տարի պոմիդորի միջին բերքատվությունը հասցրեց ավելի քան 1.100 ցենտների: Նրանց, ինչպես նաև կթվոր-օպերատորներ Սիմիզար Հայրոյանի, Սոֆիկ Վարդանյանի, բանջարաբույծներ Ժենիկ Օհանյանի, Ռիմա Մակարյանի, բրիգադավարներ Իշխան Սիմոնյանի, Ջանիբեկ Գասպարյանի և ֆերմայի վարիչ Կամո Պետրոսյանի աշխատանքի փորձը պրոպագանդվել է արտադրության բոլոր տեղամասերում:

— Հաջողությունները,— ասում է կուսբյուրոյի քարտուղարը,— ձեռք են բերվել կոլտնտեսության պատիվը բարձր պահող, գործին նվիրված կարգապահ, նախաձեռնող մեր մարդկանց ջանքերով: Նրանք բացարձակ գերակշռություն են կազմում արտադրության բոլոր ճյուղերում:

Ապա քարտուղարը հիշատակում է Լենինի և Աշխատանքային կարմիր դրոշի, Ժողովուրդների բարեկամության և «Պատվո նշան» շքանշաններով պարգևատրված

կոլտնտեսականներին՝ Գ. Մաթևոսյանին, Շուշանիկ Աղաբեկյանին, Ս. Սարգսյանին, Ս. Ավդալյանին, Վիկտորյա Գևորգյանին, Լենա Մալխասյանին:

Հանրային արտադրության դինամիկ զարգացման, պլանների ու սոցպարտավորությունների կատարման գործում ծանրակշիռ է կոմունիստների, ղեկավար և միջին օղակի կադրերի, մասնագետների ներդրումը: Տասնութ տարի է, ինչ այս բազմաճյուղ տնտեսությունը ղեկավարում է Սարիբեկ Վարդանյանը: Գործիմաց է, որոնող ու պրպտող միտք ունի— այսպես են բնութագրում նրան կոմունիստները, տնտեսության մարդիկ: Արտադրության վերելքին ուղղված նրա շատ մտահղացումներ արժանացել են կուսկազմակերպության, կոլտնտեսականների հավանությանը: Տնտեսության հոգսերով ապրելուց բացի, հանրապետության Գերագույն սովետի դեպուտատը ժամանակ է գտնում հանդիպել և ունկնդրել ընտրողներին: Պատահական չէ, որ խանջյանցիները կոլտնտեսության ակնառու նվաճումները իրավացիորեն կապում են նաև Ս. Վարդանյանի անվան հետ: Ազնիվ ու տքնաջան աշխատանքն էլ ըստ արժանվույն է գնահատվել կուսակցության և կառավարության կողմից. նա պարգևատրվել է Հոկտեմբերյան հեղափոխության, Աշխատանքային կարմիր դրոշի երկու շքանշաններով: Ս. Վարդանյանն արժանացել է մեծ վստահության, ընտրվել ՀԿԿ Կենտկոմի անդամության թեկնածու, որպես պատգամավոր մասնակցել ՀԿԿ XXVIII և ՍՄԿԿ XXVII համագումարներին, Հայկական ՍՍՀ տասնմեկերորդ գումարման Գերագույն սովետի առաջին նստաշրջանում ընտրվել Գերագույն սովետի նախագահության անդամ: Իսկ վերջերս նրան շնորհվեց սոցիալիստական աշխատանքի հերոսի կոչում:

Պատվաբեր ու ծանրակշիռ են կոլտնտեսության նվաճումները, սակայն դրանք բնավ չեն գոհացնում աշխատասեր խանջյանցիներին: Առաջիկայում նրանք ավելի ծանրակշիռ խնդիրներ են լուծելու ընթացիկ հնգամյակի առաջադրանքները կատարելու նպատակով:

Կուսակցությունը խնդիր է դրել մոտակա տարիներին ավարտել գյուղատնտեսության փոխադրումն ինդուստրիալ հիմքի վրա, ամենուրեք արմատավորել տնտեսության վարման գիտական համակարգերը, ինտենսիվ տեխնոլոգիաները, բարելավել հողերի օգտագործումը, բարձրացնել դրանց բերրիությունը, հասնել գյուղատնտեսական բոլոր կուլտուրաների բերքատվության ու անասնապահության մթերատվության նշանակալի աճի: Այս պահանջները գործողության ուղեցույց են դարձել կուսկազմակերպության և կոլտնտեսության վարչության համար: ՍՄԿԿ XXVII համագումարի որոշումների լույսի ներքո նրանք մշակել են տնտեսական ու սոցիալական զարգացման 1986—1990 թվականների և մինչև 2000 թվականն ընկած ժամանակաշրջանի կոմպլեքսային պլան: Ըստ այդ պլանի, կոմունիստների և կոլտնտեսականների ուշադրությունը բևեռված է արտադրության բոլոր ճյուղերն ինտենսիվացնելու, այգիների ցանքերի մշակության, անասունների սպասվածքի նոր տեխնոլոգիաներ կիրառելու, մեքենայական հավաքակայանը ժամանակակից տեխնիկայով հագեցնելու, եղած սարքավորումներն ու հնարավորությունները ճիշտ օգտագործելու, սոցմրցությունն արդյունավետորեն կազմակերպելու հարցերի վրա: Նախատեսված է առաջիկա հինգ տարում, անցած հնգամյակի համեմատությամբ, կոլտնտեսությունում բուսաբուծական և անասնապահական մթերքների արտադրության ծավալներն ավելացնել 20—30 տոկոսով, դրամական եկամուտները՝ հինգ միլիոն ռուբլով և հնգամյակի բնագծերը նվաճել 3,5—4 տարում: Նախանշված խնդիրները հաջողությամբ լուծելու համար կոլտնտեսությունում նորովի են մոտենում գյուղատնտեսական արտադրությունը գիտական հիմունքներով վարելուն: Այդ առումով շատ բան է արվելու գիտության ու տեխնիկայի նվաճումների, աշխատանքի կազմակերպման առաջավոր եղանակների ներդրման, մարդկային գործոնի ակտիվացման, կոլտնտեսականների պատասխանատվության բարձրացման, նրանց ստեղծագործական եռանդի ու նախաձեռնության զարգացման ասպարեզում:

---

## Գաղափարախոսական պայքարի ճակատներում

# ԴԵՄՈԿՐԱՏԻԱՅԻ ՊՐՈԲԼԵՄԸ ՍՈՑԻԱԼ-ՌԵՖՈՐՄԻԶՄԻ ՓԻԼԻՍՈՓԱՅՈՒԹՅՈՒՆՈՒՄ

**Մ. ՄԵԼՔՈՒՄՅԱՆ**
Փիլիսոփայական գիտությունների թեկնածու

*ՀԱԿԱՍՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՎ ՈՒ ԲԱՐԴ երկընտրանքներով լի արդի աշխարհում գոյություն ունեն երկու հակամարտ միտումներ. մի կողմից՝ ժամանակակից իմպերիալիզմի հետադեմ շրջանների պատերազմի քաղաքականությունը, մյուս կողմից՝ տարբեր սոցիալ-քաղաքական ուժերի և, ամենից առաջ, սոցիալիստական ընկերակցության երկրների, միջազգային կոմունիստական շարժման, այլ հեղափոխական ու առաջադիմական հոսանքների և կազմակերպությունների խաղաղության քաղաքականությունը, որոնց համակարգում նկատելի տեղ է գրավում սոցիալ-դեմոկրատիան: Նրա քաղաքական գործունեությունը դարիս վերջին քառորդում բնութագրվում է մեկ վերելքով, մեկ անկումով, որը պայմանավորված է ինչպես արդի աշխարհում սոցիալ-քաղաքական ուժերի հարաբերությունների միջև առկա որակական փոփոխություններով, այնպես էլ բուն սոցիալ-դեմոկրատների դիրքորոշման հակասականությամբ, անհետևողականությամբ: Ընդ որում Արևմուտքի քաղաքական շարժումների ընդհանուր համակարգում զբաղեցնելով էական տեղ, սոցիալ-դեմոկրատիան հույժ նկատելի ազդեցություն է գործում ժամանակակից քաղաքական ու գաղափարախոսական մթնոլորտի ձևավորման, ամբողջությամբ վերցրած Արևմուտքի մասսայական գիտակցության սոցիալ-քաղաքական կողմնորոշման վրա:*

*Սոցիալ-դեմոկրատիայի գործունեությունը դիտարկելով խաղաղության և միջազգային անվտանգության համար մղվող պայքարի քաղաքականության տեսանկյունից, ընկեր Մ. Ս. Գորբաչովը XXVII համագումարին տված ՍՄԿԿ Կենտկոմի Քաղաքական զեկուցման մեջ ընդգծեց, որ «Սովետական հասարակայնությունը պատրաստ է այսուհետ ևս զարգացնելու կապերը ոչ կոմունիստական հոսանքների ու կազմակերպությունների հետ»: Սակայն կուսակցության այս դիրքորոշումը մարքսիստների՝ սոցիալ-դեմոկրատիայի դիրքորոշման նկատմամբ ամենևին էլ գաղափարախոսական պասսիվություն չի կողմնորոշում, առավել ևս, որ գաղափարախոսական տարաձայնությունները կոմունիստների ու սոցիալ-դեմոկրատների միջև մեծ են, և իրենք՝ սոցիալ-դեմոկրատներն էլ ակտիվ պայքար են մղում գիտական սոցիալիզմի տեսության ու ռեալ պրակտիկայի դեմ: Այդ պատճառով մեր կուսակցության ծրագրի նոր խմբագրությունում նշվում է. «Երբ խոսք է գնում մարքսիզմ-լենինիզմի հեղափոխական բովանդակության... մասին, ՍՄԿԿ-ն առաջիկայում ևս հանդես կգա սկզբունքային դիրքերից»: Ահա թե ինչու կուսակցությունը ընդգծում է, որ «Հասարակական գիտության կարևոր խնդիրը եղել և մնում է պայքարն ընդդեմ բուրժուական գաղափարախոսության, ռևիզիոնիզմի և դոգ-*

փոխանցվող բնութագրերն են, որոնցից յուրաքանչյուրը ոչ թե ժխտում, այլ ընդհակառակը, ենթադրում է իր հակադրության գոյությունը։ Եվ դա ոչ թե դեմոկրատիայի անհետևողականության, անկատարության հետևանք է, ինչպես փորձում են երբեմն ներկայացնել սոցիալ-դեմոկրատական գաղափարախոսության մետաֆիզիկորեն մտածող ներկայացուցիչները, այլ նրա էության սահմանումը։

Մարքսիզմի կողմից պրոլետարիատի դիկտատուրայի՝ որպես սոցիալիստական պետության զարգացման գործում պատմականորեն անհրաժեշտ փուլի, ընդունումը նշանակում է ոչ թե հասարակության սոցիալ-քաղաքական կազմակերպության դեմոկրատական սկզբունքների ժխտում, ինչպես ճգնում են մեղադրել մարքսիզմին նրա գաղափարախոսական հակառակորդները, այլ դեմոկրատիզմի, դեմոկրատիայի որակապես նոր սկզբունքների հաստատում, որոնք բացառում են մարդու կողմից մարդու շահագործումը և ապահովում աշխատավորական ամենալայն խավերի սոցիալ-քաղաքական գործունեության առավել հնարավոր ազատությունը։

Իր առօրյա քաղաքական գործունեության մեջ ժամանակակից սոցիալ-դեմոկրատները չեն ձգտում ինչ-որ էական փոփոխություններ մտցնել հասարակության սոցիալ-տնտեսական և քաղաքական կազմակերպության կապիտալիստական ձևի, կապիտալիստական հասարակական հարաբերությունների սիստեմի մեջ։ Ուստի «դեմոկրատիա» հասկացության նրանց հարցադրումն ու մեկնաբանումը դուրս չի գալիս արդի կապիտալիստական հասարակության սոցիալ-քաղաքական իրականության շրջանակներից, որոնք ծայր աստիճան սահմանափակում են աշխատավորական մասսաների սոցիալ-քաղաքական ակտիվությունը։

Մարքսիզմի գաղափարախոսական հակառակորդները, աղավաղելով դեմոկրատիայի և դիկտատուրայի հարաբերակցության վերաբերյալ մարքսիստական հարցադրման դասակարգային իմաստը, այդ հասկացությունները հակադրում են միմյանց, «դիկտատուրան» դիտարկում սոսկ որպես բռնության հոմանիշ ու հանգում այն հետևության, որ դեմոկրատիայի սկզբունքներն իբր թե ամբողջովին բացառում են հասարակության քաղաքական կյանքի կազմակերպման դասակարգային բնույթը։ Ընդ որում գաղափարախոսական այն եղանակները, որոնց նրանք դիմում են, ձգտելով հիմնավորելու իրենց այդ բացասական վերաբերմունքը պրոլետարիատի դիկտատուրայի՝ որպես կապիտալիզմից սոցիալիզմին անցման անհրաժեշտ փուլի, մասին մարքսիզմի հիմնարար դրույթի նկատմամբ, խիստ տարբեր են։

Սոցիալ-դեմոկրատիայի քաղաքական գաղափարախոսության շրջանակները պրոլետարիատի դիկտատուրայի վերաբերյալ մարքս-լենինյան ուսմունքի համար չափազանց նեղ են, քանի որ այն ժխտում է բուրժուական հասարակության քաղաքական կազմակերպության բոլոր ձևերը։ Արդի սոցիալ-դեմոկրատիայի քաղաքական տեսաբանները, բնականաբար, չեն համաձայնում դրա հետ, որը և որոշում է նրանց խիստ բացասական վերաբերմունքը սոցիալիստական հեղափոխության մարքսիստական տեսության այդ հիմնադրույթի նկատմամբ։

«Պրոլետարիատի դիկտատուրայի վերաբերյալ մարքսիստական դրույթը, գրում է Բ. Կրայսկին,— անընդունելի է սոցիալ-դեմոկրատական շարժման համար» (B. Kreisky, Die Zeit in der wir leben, Wien, *1978*, s. *157*)։ Բանն այն է, պնդում է նա, որ «կոմունիստական երկրներում այսպես կոչված պրոլետարիատի դիկտատուրան, իրականում, արտոնյալ խմբերի քաղաքականությունն է և ըստ էության հանդիսանում է լուսավորված աբսոլյուտիզմի մի տարատեսակը»։ (W. Brandt, B. Kreisky, O. Palme, Demokratischer Socialismus in Theorie und praxis, Frankfurt O. M.,—Köln, *1975*, s. *51*)։ Նրա հետ լիովին համերաշխում է նաև Մեծ Բրիտանիայի լեյբորիստական կուսակցության գաղափարախոս Մ. Ֆիլիպսը։ «Անգլիական լեյբորիստական շարժումը,— հայտարարում է նա,— մերժել է դասակարգային պայքար մղե-



լու համար անհրաժեշտ քաղաքական կազմակերպության բնույթի վերաբերյալ Մարքսի կոնցեպցիան» («Tribune», *9*, v. *1950*, p. *7*)։

Թերևս չի կարելի չընդունել, որ թե՛ Ֆիլիպսը, թե՛ Կրայսկին ճշտորեն են արտահայտում իրենց դիրքորոշումը. այն, ինչը չի համապատասխանում ժամանակակից սոցիալ-դեմոկրատիայի քաղաքական դրույթներին և սոցիալական իդեալներին, չի կարող ճշմարտացի լինել, իսկ հետևաբար՝ անընդունելի ժամանակակից սոցիալ-քաղաքական պայմաններում։ Արդի սոցիալ-դեմոկրատիայի գաղափարախոսները սոցիալիստական երկրների սոցիալ-քաղաքական իրականությունը դիտարկում են որպես դեմոկրատական սոցիալիզմը ծայրահեղորեն սահմանափակող քաղաքական բռնություն, որը, իբր, դեմոկրատիայի հետ ոչ մի ընդհանուր բան չունի։ Դրա համար էլ սոցիալիստները «կոմունիստական դիկտատուրայի» անդրդվելի ու անզիջում հակառակորդներն են։

Ընդ որում նրանք չեն տեսնում և տարբերություն չեն դնում սոցիալիստական պետության զարգացման երկու փուլերի, այսինքն՝ պրոլետարիատի դիկտատուրայի և համաժողովրդական սոցիալիստական պետության փուլերի միջև։ Ըստ նրանց կարծիքի, այդ փուլերի միջև տարբերությունն այն է, որ պրոլետարիատի դիկտատուրան իբր բնակչության մնացած մասի վրա բանվոր դասակարգի քաղաքական բռնության ձևի տարատեսակն է (ընդ որում ինքը՝ բանվոր դասակարգն իր հերթին գտնվում է իր քաղաքական կուսակցության պաշտոնատար անձանց իշխանության ներքո), այն ժամանակ, երբ համաժողովրդական սոցիալիստական պետությունը մի դիկտատուրա և բռնություն է, որ իրականացվում է բարձրագույն կուսակցական գործիչների կողմից ամբողջ բնակչության, այդ թվում նաև բանվոր դասակարգի նկատմամբ։ Եթե ռեալ սոցիալիզմի զարգացման առաջին փուլում, պնդում են մարքսիզմի գաղափարախոսական այդ հակառակորդները, բանվոր դասակարգն ունեցել է ինչ-որ թեկուզ ոչ լրիվ իշխանություն, ապա երկրորդ՝ համաժողովրդական սոցիալիստական պետության փուլում, նա լիովին զրկվում է անգամ հասարակական զարգացման ընթացքի վրա ազդելու այդ հնարավորությունից։

Բ. Կրաքսին ջանում է ապացուցել, որ իբր թե Լենինը, համադրելով իրականության ընկալման երկու ձևերը (կամ երկու աստիճանները)՝ «տարերայինը» (բանվոր դասակարգի մասսայական, առօրեական գիտակցությանը համապատասխանող) և «գիտակցականը» (մտավորականության գիտատեսական մտածողությանը, գիտակցությանը ներհատուկ) ու սահմանելով դրանց միջև առկա տարբերությունները, իբր հանգել է այն հետևությանը, որ պատմության վերջնական նպատակների կանխատեսումը ձեռք է բերվում միայն պրոլետարիատի դասակարգային շահերի սահմաններից դուրս, իսկ իրականության ճիշտ ընկալման «արտաքին կրողը» մտավորականությունն է, որին և պատկանում է բանվորական շարժման կազմակերպման ու ղեկավարման պատմական դերը։ Ի վերջո, եզրակացնում է Կրաքսին, «սոցիալիզմը բանվոր դասակարգի պատմական խնդրից դարձել է մի ինչ-որ բան, որը պետք է ծրագրվի, ստեղծվի և ուղղություն ստանա մասսայից վեր կանգնած ինչ-որ ընտրախավի կողմից» (B. Craxi, Il Vangelo Socialista, «Espresso», Roma, *1978*, *27* ag., *24*, № *34*, p. *28*)։

Սոցիալիզմի քաղաքական իշխանության համակարգում մտավորականության դերի հարցի մասին սոցիալ-դեմոկրատիայի քաղաքական փիլիսոփայության տեսաբաններ Կրաքսիի, Պալմեի և մյուսների թույլ տված աղավաղումների էությունն այն է, որ նրանք չեն կարողանում հասկանալ, որ մտավորականությունը, անցնելով բանվոր դասակարգի դիրքերը և համակվելով նրա արմատական սոցիալ-քաղաքական շահերով, իր քաղաքական գործունեությունը ծավալելիս միաձուլվում է բանվոր դասակարգի հետ՝ իր շահերը չբաժանելով նրա շահերից։ Ուստի բանվոր դասակարգի նկատմամբ դիկտատուրայի, կուսակցական մտավորականության բռնության մասին հարցադրումը նշանակում է կեղծել պրոլետարիատի դիկտատուրայի վերաբերյալ լենինյան ուսմունքի ողջ սոցիալական իմաստն ու բովանդակությունը։

«Սոցիալ-դեմոկրատների և կոմունիստների քաղաքականության միջև վճռական հակասությունը,— հավատացնում են ԳՍԴԿ-ի հիմնական ծրագիրը կազմողները,— դրսևորվում է ոչ թե մասնավոր սեփականության նկատմամբ տարբեր վերաբերմունքում (թեպետև դա էլ է կարևոր), այլ այն հակադրությունում, որ առկա է իրավական պետականության և վոլյունտարիզմի, ազատ դեմոկրատիայի և կուսակցական դիկտատուրայի, ինքնորոշման և դրսից որոշման միջև» (Zum Verhältnis von Socialismus und Kommunismus.— «Vorwärts» Bad Godesberg, 1971, s. 11):

Բավականին տարօրինակ է ժամանակակից սոցիալ-դեմոկրատիայի տրամաբանությունը: Եթե աշխատավոր մասսաները ջարդում են հին պետական մեքենան և ստեղծում իրենց քաղաքական իշխանությունը, ապա դա, ըստ նրանց, վոլյունտարիզմի դրսևորում է, դեմոկրատական նորմերի ու սկզբունքների խախտում, դա դիկտատուրա է ու բռնություն, իսկ եթե ժամանակակից սոցիալ-դեմոկրատները, անցնելով իշխանության գլուխ, խիստ ջանադրաբար ծառայում են խոշոր կապիտալին, ճնշում աշխատավոր մասսաներին, նպաստում խոշոր կապիտալի տնտեսական և քաղաքական իշխանության ամրապնդմանը, ապա դա, սոցիալ-դեմոկրատիայի գաղափարախոսների կարծիքով, արդեն ոչ թե դիկտատուրա է, ոչ թե բռնություն, այլ՝ դեմոկրատիա ու ազատություն:

Ակներև է, որ գաղափարախոսական այդ հակառակորդների համար ցանկալի դեմոկրատիայի օրինակ է արդի կապիտալիստական սոցիալ-քաղաքական իրականությունը, այսինքն՝ բուրժուական դեմոկրատիան:

Հաղթական Հոկտեմբերից հետո մեր երկրում պրոլետարիատի դիկտատուրայի հաստատումը, սոցիալիզմի կառուցման շնորհիվ նրա վերաճումը համաժողովրդական պետության, սոցիալիստական դեմոկրատիայի հետագա խորացումն ու կատարելագործումը, սոցիալիստական ընկերակցության երկրներում պետական իշխանության ձևերի ու բովանդակության զարգացումը ցույց են տալիս սոցիալ-դեմոկրատիայի գաղափարախոսների ողջ սնանկությունը՝ պետության վերաբերյալ մարքսիզմ-լենինիզմի տեսության ու պրակտիկայի քննադատության նրանց զուր փորձերում:

Սակայն, չնայած ժամանակակից սոցիալ-դեմոկրատիայի հետ գաղափարախոսական տարաձայնությունների առկայությանը, ՍՄԿԿ-ն ամբողջությամբ վերցրած դրականորեն է գնահատում նրա գործունեությունը արտաքին քաղաքականության ասպարեզում: Մասնավորապես, Սոցինտերնի 17-րդ կոնգրեսին հղած ՍՄԿԿ Կենտկոմի դիմումի մեջ ասվում է. «Պատերազմի դեմ ճակատամարտը պետք է անպայմանորեն շահել... Մենք բարձր ենք գնահատում Սոցիալիստական ինտերնացիոնալի՝ միջազգային ասպարեզում ազդեցիկ քաղաքական ուժի, համապատասխան ջանքերը: Մենք գնահատում ենք նաև «Պալմեի հանձնաժողովի», «Դելիի վեցյակի» երկրների պարագլուխների նախաձեռնությունները, բոլոր նրանց նախաձեռնությունները, ովքեր որոնում են առճակատման դադարեցման միջոցներ, ջանում աջակցել փոխըմբռնմանը, երկխոսությանը, բանակցություններին: Խաղաղություն տանող ուղիների որոնումները բոլորի և յուրաքանչյուրի գործն է»: Հենց այդ հիմքի վրա է ՍՄԿԿ-ն ձգտում զարգացնել իր հարաբերությունները ժամանակակից սոցիալ-դեմոկրատիայի հետ:

---

## Հոգևոր բարեկամության կապեր

# ԵՂԲԱՅՐՈՒԹՅԱՆ ՈՒԺԸ

Կոմունիստական կուսակցության լենինյան ազգային քաղաքականության իրականացման շնորհիվ արմատապես վերափոխվել են ցարական Ռուսաստանի երբեմնի հետամնաց ազգային ծայրամասերը, ստեղծվել է միասնական միութենական ժողովրդատնտեսական կոմպլեքս, որակապես փոխվել է բնակչության սոցիալական կառուցվածքը, ծաղկել է սոցիալիստական բազմազգ կուլտուրան:

Մեր երկրի պատմական հաղթանակներում իր արժանի ավանդն ունի նաև Սովետական Հայաստանի աշխատավորությունը, որը երախտագիտության խորին զգացում է տածում ռուս մեծ ժողովրդի հանդեպ: Առանց ռուս ժողովրդի անշահախնդիր և եղբայրական օգնության՝ անհնարին կլինեին նրա այսօրվա սոցիալ-տնտեսական ու կուլտուրական նվաճումները:

Սովետական Հայաստանը իրենով մարմնավորում է ժողովուրդների բարեկամության և եղբայրության, կոմունիստական կուսակցության լենինյան ազգային քաղաքականության հաղթանակը: Հայ ժողովրդին բնորոշ հատկանիշներից են ինտերնացիոնալիզմը, ժողովուրդների բարեկամության գաղափարներին անմնացորդ նվիրումը: Հայաստանը ինտերնացիոնալ հանրապետություն է, այստեղ, ինչպես և մեր բովանդակ հայրենիքում, բնակվող ազգերի ու ազգությունների համախմբվածությունն ապահովված է հասարակական-քաղաքական բուն իսկ կարգով: Դրա ամենավառ օրինակը հանրապետության քուրդ աշխատավորների աննախադեպ բարգավաճումն է:

Տարբեր են ոչ միայն առանձին ազգերի, այլև միևնույն ժողովրդի տարբեր հատվածների պատմական ճակատագրերը: Ինչպես հայտնի է, արտասահմանի քուրդ բնակչության մեծ մասն առ այսօր անգթորեն ճնշվում է սեփական և օտար կեղեքիչների կողմից: Արգելված է քրդերեն լեզուն, ոտնահարվում են նրանց ամենատարրական իրավունքները: Համայն աշխարհը գիտե այդ ամենի մասին, իսկ արդյո՞ք բոլորը գիտեն քուրդ ժողովրդի այն փոքր հատվածի մասին, որը դեռևս անցյալ դարի վերջերին բնակություն հաստատեց Ռուսաստանի կազմի մեջ մտած Արևելյան Հայաստանում:

Դարասկզբին Արևելյան Հայաստանի տարածքում բնակվում էին մոտավորապես 20 հազար քրդեր: Նրանց ճնշող մեծամասնությունը՝ 98 տոկոսը, անգրագետ էր: Աշխարհի անցուդարձին, համաշխարհային մշակույթի նվաճումներին անհաղորդ մարդիկ էին, զբաղվում էին անասնապահությամբ և հողագործությամբ: Առաջին համաշխարհային պատերազմի արհավիրքը չշրջանցեց նաև նրանց՝ կեսից ավելին յաթաղանի զոհ դարձավ: Մեր ժողովրդի այս փոքր հատվածը նույնպես կանգնած էր ֆիզիկական բնաջնջման վտանգի եզրին: Եվ ահա, հայոց լեռներում լսվեց հոկտեմբերյան կարմիր հեծելազորի հաղթական քայլերգը, հյուսիսից ճառագող լենինյան ազատարար լույսը ջերմացրեց նաև քուրդ ժողովրդի այս հատվածին, նրա դարավոր երազանքին իրականացում բերեց: Հայաստանում սովետական կարգերի հաստատումը պայծառ էջ բացեց ինչպես հայ ժողովրդի, այնպես էլ հանրապետությունում ապրող քրդերի կյանքում:

Լենինյան կուսակցության և սովետական պետության ազգային իմաստուն քաղաքականության շնորհիվ, ռուս և հայ ժողովուրդների եղբայրական բարեկամությամբ քուրդ աշխատավորները պատմական շատ կարճ ժամանակահատվածում հաղ-

թափարեցին տնտեսական և կուլտուրական դարավոր հետամնացությունը, լայն հնարավորություններ ստացան զարգացնելու ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական իրենց կուլտուրան:

Ձեռնարկված ակտիվ միջոցների շնորհիվ վերացվեց քրդերի համատարած անգրագիտությունը՝ սոցիալական այդ մեծ չարիքը: Քուրդ աշխատավորների շրջանում անգրագիտության վերացման ամբողջ ծանրությունն իրենց ուսերի վրա տարան հայ մտավորականները: Նրանք քրդական գյուղերում մնացին այնքան ժամանակ, մինչև քրդերից իրենց փոխարինողներ պատրաստեցին:

Առաջին անգամ սովետական հողի վրա, մեր արևավառ Հայաստանում քուրդ ժողովրդի այս փոքր հատվածը հնարավորություն ստացավ ստեղծելու իր այբուբենը: Արդեն 1921 թվականին Լազոն (Հակոբ Ղազարյան) ստեղծեց հայատառ քրդական այբուբեն: Հաջորդ տարում Էջմիածնի տպարանում հրատարակվեց նրա կազմած «Շամս» («Արև») բազմանշանակ անունով առաջին քրդական այբբենարանը: Դա պատմական խոշոր իրադարձություն էր բազմաչարչար քուրդ աշխատավորների կյանքում: Իրականացավ սերունդների դարեր շարունակ անիրականանալի թվացող երազանքը: Հետագայում (1929 թ.) գործածության մեջ մտավ լատինատառ այբուբենը: Այժմ Հայաստանի քրդերը օգտագործում են ռուսատառ այբուբենը:

1930 թվականի մարտի 25-ին Երևանում սկսեց լույս տեսնել քրդերեն «Ռյա թազա» («Նոր ուղի») թերթը: Դա քուրդ ժողովրդի նկատմամբ սովետական կառավարության անդուլ հոգատարության ևս մի վառ վկայություն էր, պատմական խոշոր իրադարձություն ոչ միայն ՍՍՀՄ-ում, այլև մյուս երկրներում ապրող քուրդ աշխատավորների հոգևոր կյանքում: 1980 թվականին հանրապետության հասարակայնությունը հանդիսավոր կերպով նշեց «Ռյա թազա»-ի առաջին համարի լույսընծայման 50-ամյակը: Թերթը աշխատավորների կոմունիստական դաստիարակության գործին մատուցած ծառայությունների համար պարգևատրվեց «Պատվո նշան» շքանշանով:

Գյուղի սոցիալիստական վերակառուցման, համատարած անգրագիտության վերացման, սեփական այբուբենի ստեղծման, ազգային մտավորականության ձևավորման, մայրենի լեզվով տպագիր օրգանի հրատարակման, քրդերի տնտեսական ու կուլտուրական աճի ասպարեզներում Հայաստանի կոմկուսի Կենտկոմի և հանրապետության կառավարության ձեռնարկած մյուս խոշոր միջոցների իրականացման շնորհիվ անցած տարիներին վերափոխվեց քուրդ աշխատավորության կյանքը: Ամեն օր, մեկուկես ժամ տևողությամբ, Երևանից տրվում են քրդերեն ռադիոհաղորդումներ, երգ ու երաժշտություն: Ռադիոյի ձայնադարանում կան մոտավորապես 1.400 քրդական ձայնագրություններ:

Երևանը դարձավ ոչ միայն քուրդ կադրերի պատրաստման, քրդական մշակույթի և գրականության զարգացման, այլև սովետական քրդագիտության խոշոր կենտրոն: Սովետական քրդագիտության հիմնադիրը իրավամբ համարվում է աշխարհահռչակ արևելագետ, ակադեմիկոս Հովսեփ Օրբելին: Այսօր Հայկական ՍՍՀ ԳԱ արևելագիտության ինստիտուտի քրդագիտական բաժնում քուրդ գիտնականների մի խումբ զբաղվում է մեր ժողովրդի պատմության, ազգագրության, լեզվի, ժողովրդական բանահյուսության խնդիրների ուսումնասիրությամբ: Հանրապետության քրդերից հինգը գիտությունների դոկտորներ են, շուրջ քսանը՝ թեկնածուներ:

Սովետական իշխանության տարիներին հանրապետությունում ստեղծվեց և բուռն կերպով զարգացավ քրդական սովետական գրականությունը: Հանդես եկավ քուրդ գրողների մի ստվար ջոկատ, որոնց գործերը թարգմանվել են ինչպես մեր երկրում, այնպես էլ արտասահմանում: Քուրդ ընթերցողն այսօր իր մայրենի լեզվով կարդում է ինչպես հայ, ռուս և եղբայրական այլ ժողովուրդների, այնպես էլ արտասահմանի անվանի գրողների բազմաթիվ ստեղծագործություններ: Ութ քուրդ գրողներ ՍՍՀՄ գրողների միության անդամ են: Հայաստանի գրողների միության քուրդ գրողների մասնաճյուղը իր գործունեությամբ նպաստում է մեր գրականության զարգացմանը: Ամեն տարի «Սովետական գրող», «Հայաստան» և «Լույս» հրատարակչությունները քրդերեն լույս են ընծայում գեղարվեստական, հասարակական-քաղաքական և դպրոցական գրքեր: Հաջողությամբ է գործում նաև Արագածի շրջանի Ալագյազ գյուղի քրդական ժողովրդական թատրոնը: Ինչպես Սովետական Հայաստանի քրդերի կյանքի մյուս բնագավառներում, այնպես էլ քրդական սովետական



գրականության, մշակույթի հիմնադրման, զարգացման գործում մեծ է հայ մտավորականների վաստակը:

Հայ-քրդական մշակութային կապերը գալիս են դարերի խորքից: Հայերն ու քրդերը միշտ օգնել են իրար, պահպանել միմյանց մշակույթի նմուշները: Եվ դա բնական է. այդ երկու ժողովուրդները դարեր ի վեր հարևաններ են եղել, մի հողի, մի երկնքի տակ են ապրել, սիրել են միմյանց նիստուկացը, սովորույթները, սովորել են միմյանց երգն ու պարը: «Հայերս ու քրդերս,— գրել է Դերենիկ Դեմիրճյանը,— եղբայր ժողովուրդներ ենք: Մենք միասին ենք ապրել ոչ միայն հարյուր, երկուհարյուր տարի, ապրել ենք հազարավոր տարիներ: Ճիշտ է, հայերիս ու քրդերիս մեջտեղ թշնամի է եղել նստած, որը դառնացրել է մեր երկուսի կյանքը, բայց հայ և քուրդ ժողովուրդների սրտի մեջ թշնամություն չի եղել: Մեր մեջ ամեն վատ բան թշնամու ձեռքով է եղել, իսկ բարեկամությունը և եղբայրությունը՝ մեր երկուսի ձեռքով: Կա հայ-քրդական երաժշտություն, հայ-քրդական ֆոլկլոր, հայ-քրդական կենցաղ»:

Հայ մտավորականության ներկայացուցիչները միշտ էլ մեծ աշխատանք են կատարել քրդական մշակույթի պահպանման ու զարգացման համար: Այս բնագավառում ակնառու է այն հայ մտավորականների վաստակը, որոնք ուշադրություն են դարձրել քրդական բանահյուսության նմուշներին, դրանք գրի առել, ժողովել, թարգմանել: Նրանց շնորհիվ այդ նմուշները փրկվել են կորստից և հասել մեր օրերը: Այս շնորհակալ գործը սկսվել է դեռևս միջին դարերից: Քրդական ժողովրդական բանահյուսության առաջին նմուշները, որ հայ մտավորականները գրի են առել դեռևս 1711 թվականին, քրդական առածներն ու ասացվածքներն են: Դրանք այժմ պահպանվում են Մեսրոպ Մաշտոցի անվան մատենադարանում: Քրդական ժողովրդական բանահյուսության նմուշների հավաքման ու գրառման ասպարեզում մեծ վաստակ ունեն հայ նոր գրականության հիմնադիր Խաչատուր Աբովյանը, բանահավաքներ Գարեգին Սրվանձտյանը, Սարգիս Հայկունին, Սահակ Մովսիսյանը, Լազոն, Երվանդ Շահազիզը և ուրիշներ: Նրանցից ոմանք այդ նմուշները թարգմանել են ռուսերեն և եվրոպական ժողովուրդների լեզուներով:

Խաչատուր Աբովյանի շնորհիվ գերմանացիները առաջին անգամ հնարավորություն ունեցան ծանոթանալու քրդական սիրո և հերոսական մի քանի երգերի: Մեր բանահյուսության նմուշները ռուսերեն թարգմանելու գործում մեծ է Կիևի համալսարանի նախկին պրոֆեսոր Սողոմոն Եղիազարյանի վաստակը: Նա շատ լավ գիտեր քրդերեն և Լերխից հետո երկրորդ քրդագետն էր, որ քրդական բարձրարժեք բանահյուսության մի քանի ստեղծագործություններ, այդ թվում «Կառ ու Քուլուկ» էպոսի մի պատում, սիրո, հերոսական երգեր, առածներ ու ասացվածքներ թարգմանեց ռուսերեն:

Դարերից եկող այս ավանդույթները ավելի զարգացան և հարստացան, երբ Հայաստանում սովետական կարգեր հաստատվեցին, և քուրդ ժողովրդի այս հատվածին ընձեռնվեցին բոլոր պայմանները իր նոր մշակույթն ու գրականությունը զարգացնելու համար: Կարելի է անվարան ասել, որ չկա քրդական սովետական մշակույթի մի այնպիսի բնագավառ, որտեղ չլինի հայ ժողովրդի ներկայացուցիչների վաստակը:

Լազոն մեծ դեր խաղաց նաև Սովետական Վրաստանի մայրաքաղաք Թբիլիսիում քրդական նոր մշակույթի ստեղծման և զարգացման գործում: Այստեղ նրա նախաձեռնությամբ հիմնադրվեց քրդական առաջին գիշերօթիկ դպրոցը, որի շրջանավարտներից ոմանք հետագայում դարձան քրդական գրականության երախտավորներ: Լազոն, որպես ուսուցիչ և հասարակական գործիչ, տեղի քուրդ մտավորականների հետ միասին (Քամալ Բադրխան, Ահմադե Միրազի, Ամինե Ավդալ, Ասադե Ջանգո և ուրիշներ) շատ բան արեց քրդերի մշակութային կյանքի զարգացման համար: Նա իր դպրոցի մեծահասակ աշակերտների հետ քաղաքի ակումբներում, մասնավորապես Լուկաշինի անվան ակումբում, որը հատկացրել էին քաղաքի քուրդ աշխատավորությանը, երեկոներ, զեկուցումներ էր կազմակերպում, քրդական առաջին պիեսները բեմադրում:

Այս աշխատանքին զուգահեռ Լազոն ստեղծել է քրդերի կյանքին վերաբերող գեղարվեստական գործեր, որոնցից են «Խունխորը» («Արյունախումը»), «Քուրդ

Ջամեի պատմությունը» և այլն։ Նա գրել է նաև քուրդ ժողովրդի պատմությունը, գրի առել և թարգմանել քրդական բանահյուսության նմուշներ։ Նրա պատմվածքների հիման վրա Համո Բեկնազարյանը նկարահանեց «Զարե» կինոնկարը, որը 1926 թվականին դուրս եկավ միութենական էկրան։

Սովետական քրդական գրականությունը Հայաստանում է ձևավորվել, զարգացել և այստեղից տարածվել մեր երկրի քրդաբնակ վայրերը։

«Քրդական գրականության զարգացման ընթացքը,— նշել է պրոֆեսոր Հաջիե Ջնդին,— սերտորեն առնչվում է այն կադրերի հետ, որոնք կրթություն են ստացել հայկական կրթօջախներում՝ բարձրագույն ուսումնական հաստատություններում, միջնակարգ դպրոցներում։ Ուսման տարիներին նրանք արդեն ծանոթանում էին հայ հին և նոր գրականությանը, ինչպես նաև հայերենի միջոցով՝ ռուսական և եվրոպական գրականություններին։ Դա նշանակում է, որ նրանք արդեն գրական որոշակի պատրաստություն էին ձեռք բերում, հետևապես՝ այս նոր քրդական գրականության ասպարեզում կարող էին իրենց խոսքն ասել»։ Քրդական սովետական գրականության զարգացման գործում հայերենի դերի մասին լավ է ասել քուրդ բանաստեղծ Միքայելե Ռաշիդը՝ Մեսրոպ Մաշտոցին նվիրված իր բանաստեղծության մեջ.

*Քո տառերով եմ առաջին անգամ*
*Դասերս սերտել, անունս գրել,*
*Գրել անունս, որ ապրում եմ, կամ,*
*Որ հայ դպրության հետքերն եմ կրել։*

«Ինձ միշտ ուրախացրել է քրդական կյանքի ամեն մի հաջողություն,— գրել է Դերենիկ Դեմիրճյանը,— այդ պատճառով էլ միշտ բարյացակամ և պատրաստ եմ եղել քուրդ ընկերների ամեն մի դիմումին, որ նրանք արել են ինձ եղբայրաբար։ Ես միշտ ինձ զգացել եմ եղբոր վիճակում»։

Քրդական նոր գրականության սկզբնավորման և գրական կադրերի պատրաստման գործում մեծ ավանդ ունեն Արևմտյան Հայաստանի այն մտավորականները, որոնք, մանկությունից շփվելով դրացի քրդերի հետ, տիրապետում էին քրդերեն լեզվին։ Նրանցից ոմանք նույնիսկ քրդերեն ստեղծագործեցին, հանդես եկան իբրև քրդական գրականության թարգմանիչներ, իրենց աշխատանքի փորձն ու գիտելիքները հաղորդեցին մեր երիտասարդ բանաստեղծներին և արձակագիրներին։ Այդպիսի հայ երախտավորներից մեկն էր տարոնցի բանասեր և մանկավարժ Սահակ Մովսիսյանը՝ Սողոմոն Տարոնցու հայրը։ Նա քրդերենի մեջ այնքան էր մասնագիտացել, որ 1934 թվականին գրեց քրդերենի քերականության դպրոցական դասագիրք։ Մինչ այդ (1932 թ.) պրոֆեսոր Ա. Խաչատրյանը գրել և հրատարակել էր քրդերեն լեզվի քերականությունը։ Գրողներ Հարություն Մկրտչյանը և Հրաչյա Քոչարը եղել են «Ռյա թազա» թերթի խմբագիրներ։ Հրաչյա Քոչարը շատ մոտ էր կանգնած քուրդ ժողովրդի մշակույթին։ Դեռ 30-ական թվականներին նա ամեն կերպ օգնում էր նոր ձևավորված սովետական քրդական գրականությանը, հիանալի գիտեր քրդերեն։ Այդ ժամանակվա «Ռյա թազա» թերթի էջերում հանդիպում ենք նրա հոդվածներին, ակնարկներին, պատմվածքներին։ Նա քրդերեն է թարգմանել նաև հայ գրողների որոշ գործեր, ինչպես օրինակ Հովհաննես Թումանյանի «Գութանի երգը», որը լույս է տեսել «Ռյա թազա»-ում։

Ռուբեն Դրամփյանը երկար տարիներ աշխատել է «Ռյա թազա»-ի խմբագրությունում իբրև թարգմանիչ։ Նրա թարգմանությամբ քրդերեն լույս են տեսել հայ և ռուս դասական գրականության որոշ ստեղծագործություններ, Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի «Կոմունիստական կուսակցության մանիֆեստը»։ Հովակիմ Մարգարյանը, որը քրդերի մեջ հայտնի էր Նուրի կամ Նուրի Հիզանի անունով, նույնպես մեծ վաստակ ունի քրդական սովետական գրականության զարգացման գործում։ Նա շատ էր կապված «Ռյա թազա» թերթի հետ, դասավանդում էր քրդական մանկավարժական ուսումնարանում, դպրոցական մի քանի դասագրքեր է թարգմանել, իր ստեղծա-



գործություններով (նա ստեղծագործում էր քրդերեն) օգնել է քրդական գրականության զարգացմանը։ Դեռևս 30-ական թվականներին լույս են տեսնում նրա «Առավոտվա լույսը» պատմվածքների, իսկ 1962 թվականին՝ «Սեր և աշխատանք» բանաստեղծությունների ժողովածուները։ Նուրին դեռ մանկության տարիներին սիրել է քրդական բանահյուսությունը, երգն ու երաժշտությունը։ Նա անգիր գիտեր քուրդ միջնադարյան բանաստեղծ Ֆակիե Տայրանի բազմաթիվ ստեղծագործություններ, որ Ծատախում բանավոր ձևով տարածված էին ժողովրդի մեջ։

Բանաստեղծ Սողոմոն Տարոնցու առաջին ստեղծագործություններից մեկը քրդական հանրահայտ «Սիբանդ և Խաջե» վիպերգի մշակումն է։ Նա «Մամե ու Զինե» քրդական ժողովրդական նշանավոր վիպերգի հիման վրա գրել է համանուն խորագրով դրաման, որը երկար ժամանակ բեմադրվել է Ալագյազի քրդական պետական թատրոնում։ Տարոնցին մեծ հետաքրքրությամբ հետևում էր քրդական ժամանակակից գրականության զարգացմանը, իր հոդվածներում հաճախ էր անդրադառնում այդ գրականության հուզող հարցերին։ Նա հայ առաջին բանաստեղծներից մեկն էր, որ քրդական գրականությունից բազմաթիվ թարգմանություններ կատարեց։ Ս. Տարոնցին բարեխղճորեն և հոգատարությամբ խմբագրել է քրդերեն լույս տեսած մի շարք գրքեր, այդ թվում 1954 թվականին հրատարակված «Սովետական քուրդ գրողներ» ժողովածուն, ինչպես նաև քրդերենից հայերեն թարգմանված առանձին գրքեր։ Անուրանալի է նաև Սարմենի ավանդը քուրդ սովետական գրականության զարգացման գործում։ Նա ևս խմբագրել է քրդերեն գրքեր, քրդերեն թարգմանություններ կատարել։

Նաիրի Զարյանը, Վեսպերը, Միքայել Հարությունյանը, Մկրտիչ Խերանյանը, Սուրեն Քոչարյանը, Վահագն Կարենցը, Վահան Գրիգորյանը և մյուսները արժանի վաստակ ունեն քրդական սովետական գրականության նմուշները հայերեն թարգմանելու գործում։

Փաստ է նաև, որ հայ գրողների ստեղծագործությունների թարգմանությունը օգնեց քրդական սովետական գրականության զարգացմանը և հարստացմանը։ Քուրդ գրող-թարգմանիչը դաստիարակված է հայ գրականության ավանդույթներով և իր մայրենի լեզվին հավասար գիտե հայերենը։ Սրանով պետք է բացատրել, որ նա ազատ թարգմանում է քրդերեն ոչ միայն հայ գրականության լավագույն ստեղծագործությունները, այլև հայերենի միջոցով մյուս գրականությունների նմուշներ և հարստացնում իր մայրենի գրականությունը։

Անհնար է չհիշել հայ մտավորականության այն երախտավորներին, որոնց անվան հետ է կապված Ալագյազի քրդական պետական թատրոնի ստեղծումը։ Անմոռաց են քրդական թատրոնի առաջին ռեժիսոր Ցոլակ Նիկողոսյանի, առաջին գեղարվեստական ղեկավար Մկրտիչ Ջանանի, ռեժիսոր Ջ. Ժամհարյանի անունները։ Թատրոնի հետ սերտ կապերի մեջ էին քրդական մշակույթի զարգացման գործում շոշափելի դեր խաղացած արվեստի վաստակավոր գործիչ Սամսոն Գասպարյանը (որը, ի դեպ, առաջին անգամ քրդերեն է թարգմանել «Ինտերնացիոնալը»), դրամատուրգներ Սուրեն Գինոսյանը, Հարություն Ծալքյանը, Աշոտ Ծայքոնը, Վարդգես Ծողերյանը, Վաչե Հարությունյանը և ուրիշներ։

Հայրենական մեծ պատերազմի ահեղ օրերին թատրոնում ներկայացում է բեմադրել սովետահայ բեմի ականավոր վարպետ, ռեժիսոր Գուրգեն Գաբրիելյանը։ «Գ. Գաբրիելյանը մեծ մանկավարժ-ռեժիսոր է, քուրդ դերասանները նրանից շատ բան սովորեցին»— ժամանակին գրել է շրջանային թերթը։

Թատրոնին մեծ օգնություն են ցույց տվել ՍՍՀՄ ժողովրդական արտիստներ Վարդան Աճեմյանը, Վաղարշ Վաղարշյանը, արվեստի վարչության աշխատողներ Ռ. Ծիրոյանը, Ա. Տեր-Հովհաննիսյանը և շատ ուրիշներ։ Նման գործիչներն իրենց բեղմնավոր գործունեությամբ կամուրջ են դառնում ժողովուրդների մշակույթների միջև, նպաստում գրական և մշակութային կապերի ամրապնդմանը։

Փոխվել է քրդական գյուղերի դեմքը. նրանք դարձել են քաղաքատիպ ավաններ, ուր գործում են մշակույթի բազմաթիվ օջախներ, առևտրի և կենցաղի օբյեկտներ, արդյունաբերական ձեռնարկությունների մասնաճյուղեր, միջնակարգ և ութնամյա դպրոցներ։ Հանրապետության քուրդ աշխատավորության բազմաթիվ զավակ-

ներ ստացել են բարձրագույն կրթություն և, որպես ուսուցիչներ, բժիշկներ, գյուղատնտեսներ, անասնաբույժներ, ինժեներներ, գիտնականներ, իրավաբաններ, լրագրողներ, այլ մասնագիտության տեր մարդիկ, աշխատում են ինչպես Սովետական Հայաստանի, այնպես էլ մեր բազմազգ հայրենիքի տարբեր քաղաքներում և գյուղերում: Այսօր քրդերը անձնվեր աշխատանք են կատարում կոլեկտիվ և պետական տնտեսություններում, արդյունաբերական ձեռնարկություններում, գիտության և կուլտուրայի բնագավառներում, կուսակցական և պետական ապարատներում: Բազմաթիվ քրդեր ընտրվել են տեղական սովետների, իսկ երկուսը՝ հանրապետության Գերագույն սովետի կազմում: Հանրապետությունում հայտնի են Շահումյանի շրջանի կուսակցության XVIII համագումարի անվան կոլտնտեսության անդամ, Լենինի շքանշանակիր Գուլչա Սմոյի, Արագածի շրջանի Ծաղկահովտի պետական տնտեսության մեխանիզատոր, ՀՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ, ՀԿԿ XXVIII համագումարի պատգամավոր Թեմուրե Զիլոյի, Հոկտեմբերյանի շրջանի Հոկտեմբեր գյուղի կոլտնտեսության անասնապահական ֆերմայի վարիչ, Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանակիր Մաջիտե Ջալոյի և շատ ուրիշների անունները:

Հանրապետությունում ճանաչված և հարգված մարդիկ են քուրդ ժողովրդի արժանավոր զավակներ՝ Սովետական Միության հերոս Սամանդ Սիաբանդովը, ՀԿԿ Կենտկոմի անդամ, ՀՍՍՀ Գերագույն սովետի նախագահի տեղակալ, հանրապետության կուլտուրայի վաստակավոր գործիչ, «Ռյա թազա» թերթի խմբագիր Միրոե Ասադը, անվանի քրդագետ, պրոֆեսոր, գիտության վաստակավոր գործիչ, Իրաքի հանրապետության գիտությունների ակադեմիայի թղթակից անդամ Հաջիե Ջնդին և ուրիշներ:

Հոկտեմբերյան կենարար արևի ներքո, սովետական ժողովուրդների եղբայրական ընտանիքում բարգավաճում է քուրդ աշխատավորությունը, որն իր արժանի ավանդն է ներդնում Սովետական Հայաստանի, մեր սոցիալիստական մեծ հայրենիքի տնտեսական և սոցիալական զարգացման, կուսակցության նախանշած արագացման ստրատեգիայի իրականացման գործում:

**ԱՄԱՐԻԿԵ ՍԱՐԴԱՐ**
**«Ռյա թազա» թերթի խմբագրի տեղակալ**

---



# ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԸ ԹԻԿՈՒՆՔՈՒՄ

## (ՀԱՅՐԵՆԱԿԱՆ ՄԵԾ ՊԱՏԵՐԱԶՄԻ ԺԱՄԱՆԱԿԱՇՐՋԱՆՈՒՄ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԻ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՓՈՐՁԻՑ)

**Վ. ՊՈՂՈՍՅԱՆ**
Պատմական գիտությունների դոկտոր

ԱՅԺՄ, ԵՐԲ ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՈՒՐԴԸ ձեռնամուխ է եղել ՍՄԿԿ XXVII համագումարի ընդունած պատմական որոշումների իրականացմանը, ավելի հրատապ են դառնում կուսակցության գաղափարական և քաղաքական աշխատանքի փորձի իմաստավորումն ու արժեքավորումը: Հասարակական գիտությունների հետագա զարգացման համար կարևոր աղբյուր են հասարակական պրակտիկան ու պատմական փորձը: «Կենսունակ են լոկ այն գիտական ուղղությունները,— նշված է ՍՄԿԿ Կենտկոմի Քաղաքական զեկուցման մեջ,— որոնք գալիս են պրակտիկայից և այնտեղ են վերադառնում խոր ընդհանրացումներով և գործնականորեն օգտակար հանձնարարականներով հարստացած»:

Կուսակցության քաղաքական աշխատանքի զինանոցը հարուստ է բազմազան ձևերով ու մեթոդներով, նրա զարգացման աղբյուրն իր իսկ պատմությունն է, որը սոցիալիզմի համար պայքարի ու հաղթանակի պատմություն է: Սովետական ժողովրդի համար ծանր փորձություն էր Մեծ Հայրենականը, ուր կուսակցությունը հանդես եկավ որպես պատմական հաղթանակի ոգեշնչող ու կազմակերպիչ: Հայրենական մեծ պատերազմի տարիներին հանրապետությունում մասսաների քաղաքական ղեկավարն ու կազմակերպիչը Հայաստանի կոմունիստական կուսակցությունն էր՝ ՍՄԿԿ մարտական ջոկատներից մեկը:

Ֆաշիստական Գերմանիան ուխտադրուժ կերպով 1941 թվականի հունիսի 22-ին հարձակվեց մեր երկրի վրա, ավերեց արևմտյան շրջանների քաղաքներն ու գյուղերը՝ հսկայական վնասներ պատճառելով ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներին: Կոմունիստական կուսակցությունը բազմապիսի միջոցառումներ մշակեց թշնամուն արժանի հակահարված տալու համար: Կուսակցությունը ծանր փորձությունների գնով իրագործեց երկրի ամենաարագ վերակառուցումը պատերազմի պայմաններին համապատասխան, գլխավորեց միլիոնների հայրենասիրական խիզախումը ռազմաճակատում և թիկունքում, դրանով իսկ ապահովեց մեծ հաղթանակը:

Սոցիալիզմի առաջին երկրին ֆաշիզմի փաթաթած պատերազմը սովորական չէր: Դա մահացու գոտեմարտ էր սոցիալական երկու տարբեր սիստեմների միջև, գոտեմարտ՝ միմյանց հակադիր երկու աշխարհայացքների միջև: Եվ այդ գոտեմարտում մեկ անգամ ևս բացահայտվեց մարքս-լենինյան աշխարհայացքի՝ հաղթանակի գիտության կենսունակությունը:

Կուսակցությունը մասսաների շրջանում քաղաքական-գաղափարական աշխատանք կազմակերպելիս միշտ էլ ելակետ է ունեցել լենինյան այն հանճարեղ դրույ-

տերազմը» ցուցահանդեսը: Ագիտկետը, համագործակցելով պատմության թանգարանի և ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի հայկական մասնաճյուղի (Արմֆանի) հետ, կազմակերպել էր «Սովետական ժողովրդի Հայրենական մեծ պատերազմը ընդդեմ գերմանական ֆաշիզմի» ցուցահանդեսը, «Ֆաշիստական կեղծ գիտության մերկացումը» դասախոսությունների ցիկլը: Ագիտկետում ստեղծվել էր կինոխցիկ, սկսել էին ցուցադրվել հայրենասիրական ֆիլմեր[1]:

Նոր թափ ստացավ մասսաների մարքս-լենինյան դաստիարակության գործը: Առանձին գրքույկներով հրատարակվեցին սոցիալիստական հայրենիքի պաշտպանության մասին Վ. Ի. Լենինի մի շարք աշխատություններ: Քաղխմբակներում մարքս-լենինյան ուսմունքի ուսումնասիրմանը զուգահեռ սկսվեց և ամբողջ պատերազմի ընթացքում շարունակվեց ՍՍՀՄ արտաքին քաղաքականության, Հայրենական մեծ պատերազմի ընթացքի, սոցիալիստական հայրենիքի պաշտպանության կազմակերպման հարցերի նոր ու բազմակողմանի պրոպագանդումը: «Սովետական Միության Հայրենական մեծ պատերազմի մասին» վավերագրական ժողովածուն դարձավ քաղխմբակների ուսումնական ձեռնարկ: Պատերազմի տարիներին գործող քաղուսուցման 1.200 խմբակներում ընդգրկված էին 30.000 ունկնդիրներ, հազարավոր մարդիկ ինքնուրույն կերպով ուսումնասիրում էին մարքս-լենինյան ամենահաղթ ուսմունքը:

Պրոպագանդիստական աշխատանքն ուժեղացնելու նպատակով արտահաստիքային հիմունքներով համալրվեցին և ընդլայնվեցին ՀԿ(բ)Կ Կենտկոմի քաղկոմ-շրջկոմների դասախոսական խմբերը, ավելի քան կրկնապատկվեց նրանցում ընդգրկված դասախոսների թիվը: Դասախոսական խմբեր ստեղծվեցին ՀԼԿԵՄ Կենտկոմում, կոմերիտմիության քաղկոմ-շրջկոմներում, լուսժողկոմատում: 1944 թվականին դասախոսական, պրոպագանդիստական խմբեր ստեղծվեցին շրջանային-քաղաքային բոլոր կուլտլուսբաժիններում, իսկ կուլտուրայի տներին և ակումբներին առընթեր՝ 110 լեկտորիումներ[2]: Երևանի Կիրովյան շրջանում մեծ Հայրենականի առաջին տասն ամսում կարդացվել էր 171 դասախոսություն, իսկ Օրջոնիկիձեի շրջանում նույն ժամանակամիջոցում կազմակերպված 81 դասախոսություններին մասնակցել էր 7.316, Երևան քաղաքում պատերազմի տարիներին, մինչև 1945 թվականի մարտ ամիսը, կազմակերպված 4.093 դասախոսություններին՝ 405 հազար մարդ: Աշխատավորության շրջանում դասախոսություններով հանդես են եկել կուսակցական և սովետական 561 պատասխանատու աշխատողներ:

Միայն լուսժողկոմատի դասախոսական բյուրոյի ուժերով 1942 թ. կարդացվել է 1.002 դասախոսություն, դասախոսություններով հանդես են եկել 91 պրոֆեսորներ և 100 գիտությունների թեկնածուներ-դոցենտներ: Նույն դասախոսական բյուրոն 1941 թվականին 36 շրջաններում կազմակերպել է 780 դասախոսություն, այդ թվում հայերեն՝ 539, ռուսերեն՝ 145, ադրբեջաներեն՝ 57, քրդերեն՝ 39. որոնց մասնակցել է 95.054 մարդ, իսկ 1945 թվականի հունվար—օգոստոս ամիսներին կարդացվել է 701 դասախոսություն: Գիտալուսավորական պրոպագանդայի գծով 1944 թվականի նոյեմբեր—դեկտեմբերին կարդացվել է 40 դասախոսություն:

Մեծ Հայրենականի սկզբից նորից ամբողջ երկրով մեկ կյանքի կոչվեցին միտինգները, հավաքները, որոնց մասնակցում էին հազարավոր աշխատավորներ: Հետզհետե ավելի ու ավելի էր ամրապնդվում և հուժկու դառնում քաղաքական աշխատանքի միտինգային ձևը: Խնամքով նախապատրաստված միտինգներում հանդես էին գալիս կուսակցական ու պետական գործիչներ, գրողներ ու գիտնականներ: Հռետորները խոսքի ուժով և անձնական օրինակով մարդկանց մղում էին նորանոր սխրանքների:

Մարդաշատ միտինգներում, հավաքներում ծնունդ էին առնում հայրենասիրական նոր նախաձեռնություններ: 1941 թվականի սեպտեմբերի 2-ին ամբողջ երկրով մեկ տարածվեց Մոսկվայում գումարված սովետական կանանց, շատ չանցած՝ երիտասարդության հակաֆաշիստական միտինգներում ընդունված կոչերը: Նման միտինգներ անցկացվեցին նաև հանրապետության քաղաքներում ու գյուղերում:

Որքան մեծանում էր սպառնացող վտանգը, այնքան սերտ էր դառնում ժողո-

[1] *ՄԼԻ ՀՄԿԱ, ֆ. 1, ց. 30, գ. 13, թ. 14:*
[2] *ՀՍՍՀ ՀՀՍՇՊԿԱ, ֆ. 659, գ. 161, թ. 24:*



վրդի համախմբվածությունը, ամրապնդվում էին միջհանրապետական կապերը: Կովկասի պաշտպանության ծանր օրերին, 1942 թ. օգոստոսի 23-ին Թբիլիսիում կայացավ Անդրկովկասի ժողովուրդների հակաֆաշիստական միտինգը: «Թշնամու ժամանակավոր հաջողություններին,— ասված է միտինգում ընդունված բանաձևում,— մենք հակադրում ենք մեր ատելությունը դեպ թշնամին, մեր անձնվեր աշխատանքը ֆաբրիկաներում, գործարաններում, սովխոզներում ու կոլտնտեսություններում՝ մեր հարազատ կարմիր բանակին օգնելու համար, հակադրում ենք մեր կազմակերպվածությունն ու համախմբվածությունը: Օրեցօր կուժեղացնենք ռազմաճակատին ցույց տրվող օգնությունը, անձնվիրաբար աշխատելով յուրաքանչյուրս մեր աշխատամասում, մինչև արյան վերջին կաթիլը պաշտպանելով մեր հողի յուրաքանչյուր թիզը»: Անդրկովկասի ժողովուրդները կատարեցին իրենց սրբազան երդումը՝ մոտեցնելով հաղթանակի օրը: Անդրկովկասի եղբայրական ժողովուրդների անխորտակելի միասնության պողպատակուռ պարիսպներին զարնվելով՝ թշնամին ջարդեց իր «փտած ժանիքները»:

Պատերազմի ամենածանր օրերին, երբ թշնամին շրջափակել էր Լենինգրադը, սպառնում էր Մոսկվային, ուժերի մոբիլիզացման նշանաբանով անցան մեծ Հոկտեմբերի 24-րդ տարեդարձին նվիրված միտինգներն ու հավաքները ամբողջ երկրում:

1941 թ. դեկտեմբերի 13-ին հանրապետության աշխատավորությունը խանդավառությամբ ընդունեց Սովինֆորմբյուրոյի՝ «Մոսկվան շրջապատելու և գրավելու գերմանական պլանի ձախողումը» հաղորդագրությունը: Ռոստովի, Տիխվինի, Ելեցի գրավումը և Մոսկվայի մատույցներում կարմիր բանակի տարած փայլուն հաղթանակներն ավելի էին ոգևորում ու անսահման հավատ ներշնչում աշխատավորներին հաղթանակի նկատմամբ: «Այժմ ամբողջ աշխարհը տեսավ,— գրում էին Մոսկվայի մատույցներում թշնամուն պարտության մատնած սովետական ռազմիկները,— որ Եվրոպայում հեշտ արշավանքներից լկտիացած գերմանական խառնամբոխն ունի ոչ միայն անբարտավան, ինքնագոհ մռութ, այլև ռուսական ձյան վրա վազելուց փայլելու աստիճան հղկված կրունկ»:

«Պատերազմի օրերին,— գրում էր «Պրավդան»,— պետք է ավելի ուժգին բաբախի կուսակցական կյանքի զարկերակը: Կուսակցական ժողովները, կոմունիստների կողմից կազմակերպությունների մարտական հանձնարարությունների կատարումը, մասսաների շրջանում տարվող քաղաքական աշխատանքը— այս բոլորը պետք է դաստիարակի, կոփի կոմունիստներին, բարձրացնի նրանց ավանգարդային դերն արտադրության մեջ՝ ռազմաճակատի պատվերները կատարելու գործում» (18 նոյեմբերի 1941): Հայաստանի կոմունիստական կուսակցությունը, ղեկավարվելով ՀամԿ(բ)Կ Կենտկոմի ցուցումներով, պատերազմի ողջ ընթացքում չթուլացող տեմպերով բնակչության շրջանում ծավալեց մասսայական-քաղաքական վիթխարի աշխատանք: Գործարաններում և ֆաբրիկաներում, արտադրական ձեռնարկություններում հաղորդումներով, զեկուցումներով և դասախոսություններով ավելի ու ավելի հաճախ սկսեցին հանդես գալ կուսակցական ու սովետական պատասխանատու աշխատողները, ժողովրդի հեղինակությունը վաստակած գրողներն ու գիտնականները, արվեստագետներն ու մտավորականության մյուս բազմավաստակ գործիչները: Սակայն «Հավական չեն ժողովներն ու միտինգները,— գրել է Վ. Ի. Լենինը 1919 թ. ապրիլին,— հարկավոր է անձնական ագիտացիա..., հարկավոր է ամեն մեկին առանձին ներշնչել, որ նրա քաջությամբ, վճռականությամբ և անձնվիրությամբ է պայմանավորված պատերազմի վախճանը» (**ԵԼԺ**, հ. 38, էջ 396):

Հայրենիքի համար այդ ծանր օրերին բոլշևիկյան բոցաշունչ ագիտացիան կազմակերպող մեծ ուժ էր: Սովետական մարդիկ պարզորեն գիտակցում էին, թե հանուն ինչի են լարում իրենց ջանքերը, հանուն ինչի են դիմում զոհողությունների: Իրենց մեծ գործի ճշմարտության, երկրին սպառնացող վտանգի ամբողջ խորության գիտակցումը ծնում էր չտեսնված հերոսություն և խիզախություն:

Քաղաքական-մասսայական աշխատանքի առաջատար ձևը դարձավ ագիտացիան: «Ագիտատորի խոսքը,— գրում էր «Պրավդան»,— պետք է մեր օրերին հնչի իբրև մարտական կոչ՝ հայրենիքը պաշտպանելու, թշնամուն ոչնչացնելու համար» (17 հուլիսի 1941): Պատերազմի պայմաններում ծնվեցին ագիտացիոն-մասսայական աշխատանքի նոր ձևեր ու մեթոդներ: Գործարաններում և ֆաբրիկաներում,

արտելներում, մեծ թե փոքր բոլոր ձեռնարկություններում աշխատում էին ագիտատորներ: Նրանք նույն կոլեկտիվի ակտիվ անդամներն էին՝ կոմունիստներ, կոմերիտականներ, արտադրության առաջավորներ, որոնք ոչ միայն բոլշևիկյան ճշմարիտ խոսքը հասցնում էին մասսաներին, այլև իրենց անձնական օրինակով ոգևորում, աշխատավորներին դաստիարակում անձնվեր աշխատասիրության ոգով:

Քաղաքական-մասսայական աշխատանքն լայն թափ էր ստանում ոչ միայն կոլեկտիվներում: Կուսակցական կազմակերպությունները ղեկավարում էին հոսպիտալներում, բակերում, տնային տնտեսությունների և ծերերի շրջանում տարվող քաղաքական-մասսայական աշխատանքը: Ագիտատորներն ամեն օր բնակչությանը հասցնում էին մոբիլիզացնող ճշմարտացի տեղեկություններ ռազմաճակատից, պատմում սովետական ռազմիկների արիության ու խիզախության, թիկունքի մարդկանց գործերի մասին, ֆաշիզմի ավերածությունների, սովետական մարդկանց նկատմամբ ցուցաբերած գազանությունների մասին և, բորբոքելով ատելությունը թշնամու հանդեպ, ավելի ու ավելի էին երևան բերում չօգտագործված մարդկային և նյութական ռեզերվները հանուն հայրենիքի: Ագիտատորներ նշանակվեցին բոլոր այն հիմնարկ-ձեռնարկություններում, ուր մինչև պատերազմը չկային (հոսպիտալներում, բնակելի թաղերում, զինվորական հավաքակայաններում, երկաթուղային կայարաններում): Անընդմեջ գործող ձեռնարկություններում ագիտատորներ նշանակվեցին նաև գիշերային հերթափոխություններում: Պատերազմի տարիներին եռապատկվեց ագիտատորների թիվը: Այսպես, եթե 1941 թ. հանրապետությունում հաշվվում էր 4.900, ապա 1942-ին՝ արդեն 12 հազար ագիտատոր, այդ թվում 100-ը՝ կուլտուրայի և գիտության գործիչներ: Ավելի քան երկու անգամ աճեց ագիտատորների թիվը Երևան քաղաքում և հասավ 3.000 հոգու, իսկ 1945 թ.՝ 4.100-ի: ՀԿ(բ)Կ Երքաղկոմին առընթեր գործում էին վեց ագիտբրիգադներ: Տարբեր ժամկետներում գյուղում քաղաքական-մասսայական աշխատանք տանելու համար Երևանից գործուղվել են 1.500 ագիտատորներ:

Քաղկոմ-շրջկոմների կուսկաբինետները վերածվեցին ագիտկետերի, ստեղծվեցին նորերը: Պատերազմի տարիներին հանրապետությունում գործում էր 500 ագիտկետ: 1943—1944 թվականներին բերքահավաքի ժամանակ, մեկուկես ամսով քաղաքից գյուղ գործուղվեցին 1.600 ագիտատորներ: Միայն 1943 թվականին գարնանացանի կամպանիան հաջող կազմակերպելու համար քաղաքից գյուղ մեկնեցին 400 ագիտատորներ: Այս բնագավառում կոմերիտմիությունը հանդես եկավ մեծ ակտիվությամբ: Բավական է նշել, որ հանրապետությունում ագիտատորների կեսից ավելին կոմերիտականներ էին: ՀԿ(բ)Կ Կենտկոմի, ՀԼԿԵՄ Կենտկոմի դասախոսների, քաղկոմ-շրջկոմների դասախոսական խմբերի և 6.755 կոմերիտական աշխատողների ուժերով 1943 և 1944 թթ. երիտասարդության համար կազմակերպվել էին 6.291 դասախոսություն, հարց ու պատասխանի երեկո, տեսական կոնֆերանս, որոնց մասնակցել էր 537.414 մարդ:

Մասսաների քաղաքական ակտիվացմանն էին ուղղված մամուլը և ռադիոն, գրականությունն ու արվեստը, ինֆորմացիայի բոլոր միջոցները: Հաստատվեց պատերազմի պայմաններին համապատասխան քաղաքական աշխատանքի կուռ համակարգ, որը պատվով քննություն բռնեց մեծ փորձությունում:

Պատերազմը ոչ միայն ստուգման ենթարկեց երկրի զինված ուժերը, տնտեսությունը, այլև կուսակցական մարմինների կուսակցական-քաղաքական աշխատանքը: Պատերազմի տարիներին հանրապետության արդյունաբերական ձեռնարկությունների, կոլեկտիվ ու պետական տնտեսությունների կուսկազմակերպությունները, կուսակցության շրջկոմ-քաղկոմները ու Կենտկոմը հաջողությամբ հաղթահարեցին շատ դժվարություններ, լուծեցին իրենց առջև ծառացած բարդ ու դժվարին խնդիրները և ժողովրդական մասսաների բոլոր ունակություններն ու հնարավորությունները ի սպաս դրեցին Հայրենական, ազատագրական մեծ պատերազմի հաղթական ավարտի սրբազան գործին:

---



# ԼԻԱՐԺԵՔ ՕԳՏԱԳՈՐԾԵԼ ԼՐԱԳՐԱՅԻՆ ԺԱՆՐԵՐԸ

Սովետական ժողովուրդը ձեռնամուխ է եղել երկրի սոցիալ-տնտեսական զարգացման արագացմանը, որի իրականացումը պահանջում է յուրաքանչյուր մարդու, աշխատավորական կոլեկտիվի ստեղծագործական պոտենցիալի առավել լիարժեք դրսևորում: Հասարակությանը դեպի կյանքի բեկումնային խնդիրների լուծումը շրջելը մեծապես պայմանավորված է մարդկային գործոնի ակտիվացմամբ, աշխատավորների հոգեբանության, նրանց մտածելակերպի, կուսակցական և մյուս կազմակերպությունների աշխատանքի վերակառուցմամբ:

ՍՄԿԿ XXVII համագումարում հաստատված ծրագրերի իրականացման գործում անգնահատելի դեր ունեն մասսայական ինֆորմացիայի և պրոպագանդայի միջոցները: Այդ մասին ամենայն հստակությամբ համագումարում նշեց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. Գորբաչովը. «Այժմ է՛լ ավելի մեծ նշանակություն է ձեռք բերում մասսայական ինֆորմացիայի միջոցների գործունեությունը: Կենտրոնական կոմիտեն հանձինս նրանց տեսնում է արարման գործիքի, գերատեսչականության ու տեղայնության հետ անհամատեղելի հասարակական տեսակետ արտահայտողի»:

Հիրավի, ՍՄԿԿ-ն այսօր պահանջում է, որ մեր մամուլի, հեռուստատեսության, ռադիոյի աշխատանքում գերակշռեն լրջախոհությունն ու օպերատիվությունը, համարձակությունն ու բարձր գաղափարայնությունը, պատահական կամ սենսացիոն նյութերի փոխարեն հրապարակվեն բովանդակալից հոդվածներ, ակնարկներ, ֆելիետոններ, հարցազրույցներ, ռեպորտաժներ և այլն:

Անհերքելի է այն իրողությունը, որ ընթերցողները, հեռուստադիտողները, ռադիոունկնդիրները դարձել են ավելի պահանջկոտ, կիրթ և իրազեկ: Բայց գաղտնիք չէ և այն, որ ինֆորմացիայի ու պրոպագանդայի մեր միջոցները տակավին չեն օգտագործում բոլոր հնարավորությունները մարդկանց հարաճուն պահանջմունքները բավարարելու համար: Մենք նկատի ունենք ոչ միայն նյութերի օպերատիվության պակասը, մանրաթեմայնությունը, երբեմն դրսևորվող գորշությունը, այլև մատուցման հնացած եղանակները, խրթին գրելաոճը: Հաճախ կարդում ենք այնպիսի հոդված կամ ունկնդրում հաղորդում, որոնք ոչ մի ազդեցություն չեն գործում մեզ վրա, անկիրք են, անհասցե: Դա ոչ միայն կարևոր փաստի բացակայության, այլև, ընդհանրապես, նյութի ոչ բավարար ինֆորմացիոն հագեցվածության, երևույթների և իրադարձությունների մեջ պատշաճ ձևով չխորանալու և անհրազեկության հետևանք է:

Կուսակցության Կենտկոմը պահանջում է՝ արմատապես բարելավել մասսայական ինֆորմացիայի և պրոպագանդայի միջոցների ազդեցության ոլորտը, այն հաշվով, որ մամուլում յուրաքանչյուր հրապարակում, ռադիոհեռուստատեսային ամեն մի հաղորդում լինի երևույթ, հուզի, մտորելու տեղիք տա, խանդավառի ու ոգեշնչի մարդուն, մի խոսքով՝ նրա հոգում հետք թողնի:

Հայտնի է, որ մարքսիզմի դասականները իրենց ժուռնալիստական-հրապարակախոսական գործունեության մեջ մեծ ուշադրություն էին դարձնում տպագիր խոսքի ազդեցությանը: Լենինը խմբագրություններից պահանջում էր հրապարակել բնութագրական փաստերով հագեցած տարբեր ժանրի նյութեր, որոնք բոլոր դեպքերում գրված լինեն հստակ, հակիրճ «հեռագրական ոճով»: Նա կարևորություն էր տալիս բոլոր ժանրերին: Առաջնորդի խմբագրած պարբերականներում ընթերցողը հանդիպում էր նամակների, թղթակցությունների, խմբա-

գրական հոդվածների, ֆելիետոնների, տեսությունների և այլ ժանրով գրված նյութերի, որոնք տոգորված էին կուսակցականությամբ, բարձր գաղափարայնությամբ, ճշմարտացիությամբ: Մի առիթով Լենինը նշել է, որ «Իսկրայի» խմբագրություն մըտնող նամակներից ինքը զգում էր ռուսական կյանքի զարկերակը:

Վ. Ի. Լենինը խիստ կարևոր էր համարում, որ թերթերում տպագրվող տարբեր ժանրերի նյութերը՝ հոդված, ինֆորմացիա, նամակ, թղթակցություն և այլն, զետեղվեն իրենց ուրույն տեղում, գրավեն ընթերցողի ուշադրությունը: Նա քննադատում էր այն թերթերը, որոնք չեն տպագրում խմբագրականներ, առաջնորդողներ, ֆելիետոններ, պամֆլետներ: Չէ որ այդ ժանրերը լայն հնարավորություններով են օժտված՝ պատկերելու հասարակական կյանքի տարբեր երևույթները: 1922 թվականի ապրիլի 12-ին Ն. Օսինսկուն գրած նամակում Վ. Ի. Լենինը, ողջունելով «Պրավդայի» այդ օրվա համարում լույս տեսած նրա հոդվածը, միաժամանակ դիտողություն է անում տեսություններ չկազմելու համար: «Վախենում եմ տան գաղտնիքը դուրս հանել,— գրում է մեծ առաջնորդը,— վախենում եմ զուտ ճշմարտությունից, խույս եմ տալիս դրանից՝ «չտեսնելու տալով»...» (**ԵԼԺ**, հ. 54, էջ 284):

Զարգացնելով բոլշևիկյան ժուռնալիստիկայի լենինյան ավանդույթները, կուսակցական մամուլը, սովետական կարգերի հաղթանակից հետո, իր ստեղծագործական զինանոցը ծառայեցրել և ծառայեցնում է նոր կյանքի հաստատմանը:

Սովետական մամուլի տարեգրության էջերը մարմնավորել են սոցիալիստական հասարակարգի առաջընթացն ու աննախադեպ արարումները: Եվ երբ հայացք ենք ձգում նրա անցած փառավոր ուղուն, ապա կինոժապավենի պես անցնում են մեր մեծ հայրենիքի կարևոր իրադարձությունների չխամրող դրվագները:

Սովետական իշխանության արշալույսին, երկրի վերաշինման տարիներին պարբերական մամուլի օրգանները աշխատավորական լայն զանգվածների հետ խոսում էին նրանց մատչելի լեզվով, տարբեր ժանրերով գրված նյութեր տպագրում մարդկանց խանդավառության, սոցիալիստական գիտակցականության աճի, մարքս-լենինյան աշխարհայացքի ձևավորման, գաղափարական դաստիարակության մասին: Թերթերը հոդվածներ, ինֆորմացիաներ, ակնարկներ և այլ նյութեր էին հրապարակում աշխատանքի վայրերից, ցույց տալիս հեղափոխական այն վերափոխումները, որ իրականացնում էր լենինյան կուսակցությունը: Սովետական ժուռնալիստները նոր ձևեր ու միջոցներ էին գործադրում տպագիր խոսքն ավելի հատու և մարտական դարձնելու համար: Կյանք էին առնում հնգամյակի հաջողությունների պրոպագանդման ավելի արդյունավետ ձևեր, գործում էին մշտական խորագրեր, բաժիններ, կազմվում նպատակային էջեր, անկյուններ:

Ոչ միայն կենտրոնական, այլև ազգային լեզուներով հրատարակվող պարբերականներում մշտական տեղ էին գրավում լրագրագեղարվեստական ժանրերը՝ ակնարկն ու ֆելիետոնը: Դա մի կողմից բացատրվում է նրանով, որ հարկավոր էր ուսանելին, առաջավորը, նորը պրոպագանդել ծավալուն կերպով՝ ակնարկների միջոցով, մյուս կողմից՝ բացասական երևույթները խարազանել երգիծանքի ուժով՝ ֆելիետոններով: Երևանում 1923 թվականին լույս տեսնող «Ծեչտում», 1924 թվականին՝ «Զռնգայում», 1926—27 թթ.՝ «Կարմիր մոծակում» ֆելիետոններով պարբերաբար հանդես էին գալիս Դերենիկ Դեմիրճյանը, Վահան Թոթովենցը, Լեռ Կամսարը, Էդուարդ Խոջիկը և մեր մյուս երգիծաբանները: Նրանց ֆելիետոններում բարձրացվում էին կենսական հարցեր, քննադատվում էին կեղծ ընկերասիրությունը, ագահությունը, գռեհկությունը, անքաղաքավարությունը: Դ. Դեմիրճյանի «Գրանիտ ընկերությունը» երգիծական ծավալուն խոսքի մեջ, որ լույս տեսավ «Կարմիր մոծակի» 1926 թվականի առաջին երեք ամիսների համարներում, յուրատիպ մանրամասներով մերկացվում էին մարդկային թուլությունները, քինախնդրությունն ու վրիժառությունը, նահապետական հնացած սովորությունները:

Գրական-գեղարվեստական-լրագր ա յ ի ն ժանրերի զարգացման հետ մամուլը պատշաճ ուշադրություն էր դարձնում ինֆորմացիոն ժանրերին՝ հաշվետվությունների, սովորական, ծավալուն և հակիրճ լուրերի, տեղական և միութենական հաղորդումների հրապարակմանը: Դա նպաստում էր ոչ միայն տպագրվող նյութերի թեմատիկայի հարստացմանը, այլև փաստերի, օրինակների հարմար ձևերով մատուցմանը:

Երեսնական թվականներին սովետական ժուռնալիստիկան նոր ձևերով է արտացոլում մեր իրականությունը, լուսաբանում ժամանակի կարևորագույն հարցերը, պրոպագանդում առաջավորը, պայքարում ժողովրդական տնտեսության զարգացման ա-



րագ տեմպերի, ՍՍՀՄ-ում սոցիալիզմի հաղթանակի համար: Ինֆորմացիաներից, հոդվածներից, թղթակցություններից և այլ ժանրերով գրված նյութերից զատ անհրաժեշտություն է դառնում թերթերի էջերում ամսական, եռամսյակային, տարեկան տեսությունների տպագրումը՝ առաջին հնգամյակի պլանների կատարման, երկրի առջև դրված վիթխարի խնդիրների կենսագործման տնտեսական-քաղաքական կարևորագույն նշանակության մասին:

Շրջանային և ֆաբրիկագործարանային մամուլի ստեղծումը նշանավորվեց տպագիր խոսքի դերի է՛լ ավելի բարձրացմամբ: Տեղական մամուլի լայն ցանցի միջոցով երկրի սոցիալ-տնտեսական զարգացման, այդ գործում աշխատավորական լայն զանգվածների խնդիրները սկսեցին ավելի հանգամանորեն լուսաբանվել: Հարցազրույցն ու ռեպորտաժը և այլ կարգի ժանրեր դառնում են մասսայական, որոնց միջոցով կարելի է երկխոսությամբ, աշխույժ լեզվով, թարմ փաստերով ու օրինակներով ընթերցողներին ներկայացնել առօրյան, պատմել այն մասին, թե ինչպես է աստիճանաբար փոխվում սովետական մարդու մտածելակերպը, աշխարհայացքը, վերաբերմունքը ընդհանուրի նկատմամբ:

Մամուլի տեսությունը ևս դառնում է կարևոր ժանր՝ հատկապես կենտրոնական և հանրապետական պարբերականների համար: Դա, մի կողմից, բացատրվում է շըրջանային և բազմատպաքանակ թերթերի նոր ջոկատի հրապարակ գալով, մյուս կողմից՝ անհրաժեշտություն է դառնում պրոպագանդել նորաստեղծ տպագիր օրգանների առաջավոր փորձը, ցույց տալ լրագրային աշխատանքի լենինյան ավանդույթների կիրառման կարևորությունը, սովետական մամուլի սկզբունքներն ու հիմունքները:

Սոցիալիստական մրցության ծավալման համար թերթերը դիմում են դիմանկարի օգտագործման: Շրջանային և քաղաքային թերթերում «Մեր առաջավորները», «Նըրանց օրինակով» և այլ խորագրերի ներքո պարբերաբար ներկայացվում են աշխատանքի հերոսները, ցույց տրվում նրանց ուսանելի աշխատանքի փորձը:

Մ. Գորկու, Վ. Մայակովսկու, Մ. Կոլցովի, Ե. Պետրովի, Յա. Գալանի և մյուս վարպետների օրինակով մեր շատ անվանի գրողներ ու լրագրողներ պարբերաբար հանդես են գալիս թերթերում և հանդեսներում՝ իրենց ակնարկներով, աշխատանքի մարդկանց նկարագրով, ֆելիետոններով, հրապարակախոսական այնպիսի ելույթներով, որտեղ ներկայացվում են ոչ միայն փաստն ու օրինակը կոնկրետ կերպով, այլև ուրվագծվում են նորին հասնելու ուղիները: Դ. Դեմիրճյանի, Ն. Զարյանի, Հր. Քոչարի, Հ. Սիրասի, Հ. Մկրտչյանի և մյուսների լրագրային նյութերում խոսքը սավառում էր անվարան, կրքոտությամբ, համոզչականությամբ, հավատով: Կարևորը,— մի առիթով ասել է Հր. Քոչարը,— ոչ թե այն է, որ խոսքը ծավալուն է, հանգամանալից, այլ այն, թե ինչպես ես ասում, ում ես հասցեագրում: Հիրավի, այդ ժամանակ մեր գրողների և լրագրողների հրապարակային ելույթներում իշխողը խոսքի թարմությունն էր ու դիպուկությունը:

Հայրենական մեծ պատերազմը քննություն էր նաև սովետական մամուլի ուժի և կարողության համար: Պարբերական մամուլը գաղափարական պայքարի առաջին գծում էր: Նրա խոսքը հատու էր, համոզիչ: Թերթերը «Ամեն ինչ ռազմաճակատի համար, ամեն ինչ հաղթանակի համար» մըշտական խորագրի տակ զովերգում էին ռազմաճակատի և թիկունքի մարդկանց սխրագործությունները՝ օգտագործելով լրագրային հիմնական ժանրերը: Նամակը դառնում է իղձերի և ցանկությունների արտահայտման առավել մատչելի և մասսայական ժանրը: Անհատական և կոլեկտիվ ստորագրությամբ նամակները՝ ճակատից և թիկունքից, դարձել էին յուրաքանչյուր տպագիր օրգանի ամենօրյա նյութերը:

Թերթերը՝ ակնարկներով, նամակներով, թղթակցություններով և վերլուծական այլ ժանրերով գրված նյութերով, ցույց էին տալիս սովետական մարդու անկոտրում կամքը, ջերմ հայրենասիրությունը, վեհանձնությունը և հերոսականությունը: Սակայն թոհուբոհի այդ օրերին պարբերականների էջերում առկա էին նաև ֆելիետոնը, երգիծական խոսքը, ծաղրանկարը, որոնք մերկացնում էին հանրօգուտ աշխատանքից խուսափողներին, պորտաբույծներին, կաշառակերներին, պաշտոնը չարաշահողներին:

Մ. Շոլոխովի, Ա. Ֆադեևի, Լ. Լեոնովի, Կ. Սիմոնովի, Բ. Գորբատովի, Ի. Էրենբուրգի և մյուսների հրապարակախոսական ելույթները, որոնք բովանդակում էին լրագրային շատ ժանրերի տարրեր, անսասան հավատ էին ներշնչում մեր հաղթանակի նկատմամբ: Ընթերցողը խորապես հավատում էր նրանց խոսքին:

Մեծ հայրենականի օրերին ևս սովետահայ մամուլի խոսքը ազդու էր, հեղինա-

կավոր: Ավ. Իսահակյանի, Ն. Զարյանի, Հր. Քոչարի և մյուսների բազմաժանր նյութերը մեր ժողովուրդն ընդունում էր որպես հավատի, հաղթանակի ներշնչանք: Նրանք հետաքրքիր մանրամասներով, բնութագրական դրվագներով արտացոլում էին և՛ նախնիների, և՛ այսօրվա հայ քաջորդիների անօրինակ սխրագործությունները: Անմոռանալի է Նաիրի Զարյանի «Ցասման զավակը» վերնագրով ակնարկը Նելսոն Ստեփանյանի մասին:

Մամուլի վերակառուցումը պատերազմի պահանջներին համապատասխան հետապնդում էր գլխավոր նպատակ՝ հրապարակախոսությունը դարձնել մարտնչող, բոլոր ժանրերը գործի դնել՝ կոչերի, դիմումների, թևավոր խոսքերի, ժողովրդական իմաստությունների, աֆորիզմների հաճախակի օգտագործմամբ: Ժամանակը պահանջում էր նաև շատ լուրեր հաղորդել հատկապես ռազմաճակատներից: Հրամայական պահանջ դարձավ տպագրել ոչ միայն սովորական կամ ծավալուն, այլև հակիրճ, մի քանի տողով գրված լուրեր, փաստը պրոպագանդել առանց միջամտության ու մեկնաբանումների:

Մամուլի համապարփակ նշանակությունն այն էր, որ պատերազմական տարիներին ավելի ակնառու դարձավ նրա՝ կոլեկտիվ պրոպագանդիստի, ագիտատորի և կազմակերպչի դերը, գաղափարական նպատակաուղղվածությունը, քաղաքական ուղղվածությունը:

Մեր երկրի աշխատավորները, պատերազմի հաղթական ավարտից հետո մեծ ուժ ու եռանդ են ներդնում խաղաղ շինարարության, ժողովրդական տնտեսության վերականգնման և սոցիալիստական հասարակարգի հետագա զարգացման պայքարում: Այս ասպարեզում անուրանալի է նաև պարբերական մամուլի դերը: Իր գանձարանում ունենալով կյանքի լուսաբանման և նոր նախաձեռնությունների հարուստ փորձ՝ մամուլը վիթխարի ուժ է դառնում ձեռնարկություններում, կոլտնտեսություններում, սովխոզներում և աշխատանքային բոլոր կոլեկտիվներում՝ սոցիալիստական մրցությունը լայնորեն ծավալելու, պետական առաջադրանքները կատարելու և գերակատարելու գործում: Շատ թերթեր և ամսագրեր ժուռնալիստական բազմազան ձևերով պրոպագանդում են սովետական հայրենասիրությունն ու պրոլետարական ինտերնացիոնալիզմը, հայրենական գիտության և տեխնիկայի նվաճումները, մեր մարդկանց խիզախումները աշխատանքի տարբեր բնագավառներում:

Կուսակցական-սովետական մամուլի զարգացումն իր արտահայտությունն է գտնում խաղաղ շինարարության հետագա տարիներին, երբ անհրաժեշտ էր, որ մամուլի օրգանները մարտականորեն, ակտիվ կերպով լուսաբանեն հարազատ կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ մեր երկրի ձեռք բերած ակնբախ նվաճումներն ու հետագա խնդիրները:

Այսօր կուսակցությունը ավելին է պահանջում մամուլից: ՍՄԿԿ XXVII և ՀԿԿ XXVIII համագումարների որոշումները մամուլի աշխատողների առջև նոր խնդիրներ դրեցին՝ կյանքի տարբեր բնագավառները լուսաբանել տպագիր խոսքի բոլոր հնարավորություններով ու տարբեր ժանրերով, օգնել լայն զանգվածներին՝ կուսակցության ստրատեգիան, նրա սոցիալական քաղաքականությունը արագորեն կենսագործելու:

Մեր հանրապետության պարբերական մամուլը, հեռուստատեսությունն ու ռադիոն համագումարների ընդունած որոշումների ոգով վերակառուցում են իրենց աշխատանքը, ավելի հետաքրքիր և թարմ ձևերով լուսաբանում կյանքի տարբեր ոլորտները՝ ուղենիշ ունենալով մարդկային գործոնի ակտիվացման, նրա համար նոր, առավել հարմարավետ պայմանների ստեղծման խնդիրը: Ի վերջո պարզ է, որ բոլոր մեծ ու փոքր հարցերի լուծման կենտրոնում մարդն է, աշխատանքի մարդը, որը պետք է օժտված լինի հարուստ ներաշխարհով, կոմունիստական մտածելակերպով վերակառուցվելու մտահոգությամբ:

«Սովետական Հայաստան», «Կոմունիստ», «Սովետ Էրմանիստանի», «Ավանգարդ», «Երեկոյան Երևան», «Բանվոր», «Կայծ» թերթերը, շրջանային թերթերից՝ մասնավորապես «Արտաշատը», «Արշալույսը» (Աբովյան), «Այգաբացը» (Ծամշադին), «Աշտարակը» հանրապետության տնտեսական կյանքի հարցերը լուսաբանելիս հանդես են բերում ոչ միայն հետևողականություն, այլև համարձակություն, խորանում են երևույթների ու փաստերի մեջ, վառ կերպով ցույց տալիս այն նորն ու ուսանելին, որ ծնվում են մեր օրերում՝ մարդկային բանականության և աշխատանքի միաձույլ զուգորդմամբ: Նրանցում ավելի հաճախ են տպագրվում մեր իրականության մեջ դեռևս գոյություն ունեցող հոռի երևույթները մերկացնող, քննադատող բազմաժանր նյութեր և հետևում դրանց ներգործունությանը:

«Արագացում. ահա մեր նշանաբանը», «Կենսագործենք ՍՄԿԿ XXVII համագումարի որոշումները», «Գիտատեխնիկական առաջընթաց. մշակումներ, ներդրումներ, արդյունքներ», «Համագումարյան ուղենիշ» և այլ խորագրեր հաստատուն տեղ են գրավում մեր տարբեր թերթերում: Մամուլի էջերում իրենց խոսքով հանդես են գալիս արտադրության, գիտության, մշակույթի, արվեստի, գրականության և ընդհանրապես ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերի ղեկավար ու շարքային աշխատողներ՝ բարձրացնելով կենսական նշանակություն ունեցող հարցեր, առաջարկություններ:

Երգիծական գրչով գրված նյութերը պատշաճ տեղ են գրավում ոչ միայն հանրապետական կամ քաղաքային, այլև տարբեր շրջանային թերթում: «Աշտարակում» աշխույժ է գործում «Քարաքաղնիս» երգիծական էջը՝ նյութերը մեծ մասամբ ուղեկցվելով ծաղրանկարներով: Հումորով, երբեմն էլ սուր սարկազմով խարազանվում են առանձին կոլեկտիվներում գոյություն ունեցող թերությունները, սոցիալիստական ապրելակերպին անհարիր երևույթներ:

«Արշալույս», «Այգաբաց» և շրջանային այլ թերթերում տպագրվող նամակները, թղթակցությունները, նյութերը լուսաբանում են տարբեր տնտեսությունների, հիմնարկ-ձեռնարկությունների առօրյան, պրոպագանդում նորը, ուսանելին և, ընդհակառակն, մերկացնում չարն ու այլանդակը, իր դարն ապրածը:

«Արարատ», «Արտաշատ», «Կոմունիզմի ուղիով» և այլ թերթերում հարգի են հոդվածն ու ինֆորմացիան, ռեպորտաժն ու հարցազրույցը, «Հրազդանում»՝ մեծ մասամբ թղթակցությունն ու հաղորդումը:

Սակայն դա չի նշանակում, թե ամեն ինչ բարվոք է, և մասսայական ինֆորմացիայի միջոցներն այլևս անելիք չունեն:

Խոսելով մամուլի, հեռուստատեսության և ռադիոյի առաջիկա խնդիրների մասին՝ ընկեր Կ. Ս. Դեմիրճյանը ՀԿԿ XXVIII համագումարում ուղղակի ասաց. «Մարդկանց մտքի ու սրտի վրա ներգործությունն ուժեղացնելու խնդիրը նրանցից պահանջում է մշտապես հարստացնել հրապարակվող ու եթեր հաղորդվող նյութերի գաղափարական բովանդակությունը, բարելավել դրանց որակը, կարողանալ լսարանի հետ վարել շիտակ, անկեղծ խոսակցություն, լինել ճշմարտացի և ստույգ, խուսել առանց թերասումների և շրջահոս դարձվածքների, խուսափելով ինչպես հաջողություններով արբենալուց և թերությունները լղոզելուց, այնպես էլ մեր հասարակական կյանքի բացասական երևույթները սենսացիոն կերպով ուռճացնելուց»: Սա նշանակում է, որ մամուլի և մասսայական ինֆորմացիայի մյուս միջոցների առաջնահերթ խնդիր մնում են աշխատանքների կազմակերպման կատարելագործումը, ընթերցողների հետ կապի ամրապնդումը, կյանքի երևույթների մեջ խորանալը, տպագրվող նյութերի որակի բարձրացումը, լեզվական կուլտուրայի կատարելագործումը:

Յուրաքանչյուր խմբագրություն պարտավոր է հոգալ այն մասին, թե այսօր, այս համարը հոգևոր ի՞նչ «սնունդ» է տալիս ընթերցողին, հրապարակվող նյութերը հագեցվա՞ծ են կարևոր փաստերով, թե՞ երկրորդական փաստերն էլ բավարարում են մեզ:

Կյանքը տալիս է նյութեր, փաստեր՝ միտքը, գաղափարը, ասելիքը տարբեր ձևերով, տարբեր ժանրերով արտահայտելու համար: Սակայն հրապարակախոսական-ժուռնալիստական այդ հնարավորությունը պետք է կարողանալ օգտագործել հմտորեն: Կարողանալ ժուռնալիստական բազմազան ձևերով և խոսքի թովչությամբ արտացոլել աշխատանքի մարդկանց ոչ միայն արտադրական ցուցանիշները, այլև նրանց հոգևոր աշխարհը, մտածելակերպը, զգացումներն ու խոհերը. այս պետք է լինի լրագրային աշխատողների հիմնական նպատակը:

Կյանքի զարգացման ներկա փուլում, երբ ավելի է հարստացել սովետական մարդկանց հոգևոր աշխարհը, նրանք մամուլից ակնկալում ու պահանջում են ստեղծագործական հնարների բազմազանություն, նյութի մատուցման զինանոցի թարմացում:

Այնուհանդերձ, հանրապետության մի շարք թերթեր լիովին չեն վերակառուցել իրենց աշխատանքը նոր պահանջներին համապատասխան: Ուղղակի կարող ենք ասել, որ ֆելիետոնը մեր պարբերականներից գրեթե իսպառ վերացել է: Եվ դա այն դեպքում, երբ ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թվականի ապրիլյան պլենումը, կուսակցության XXVII համագումարը ամենայն վճռականությամբ մերկացրին ու դատապարտեցին մեր առաջընթացը խանգարող երևույթները: Քննադատության ոգին, մեր կյանքի առողջ մթնոլորտը ապականող մանրէները

պետք է ձաղկվեն նաև երգիծական ժանրի բոլոր միջոցներով: Սակայն իրողություն է, որ մեր առանձին թերթեր բավարարվում են միայն դեպքից-դեպք թույլ հումորեսկի հրապարակմամբ: Այսպես, «Արագած» շրջանային թերթում հազվադեպ տպագրըվող այդպիսի նյութերն անգամ չեն բավարարում ընթերցողին՝ ոչ միայն կարևոր փաստ չներկայացնելու, այլև ժուռնալիստական պատշաճ մակարդակով չգրելու պատճառով:

Ինչպես վերոհիշյալ, այնպես էլ Ղուկասյանի շրջանային «Գառնի» թերթում գրեթե չկան ռեպորտաժ, հարցազրույց, ակնարկ, թղթակցություն, նամակ: Ի դեպ, խմբագրությունների փոստում նամակների սակավությունը ցույց է տալիս, որ թույլ է տվյալ տպագիր օրգանի կապը ընթերցողների հետ:

Շատ հազվադեպ են տպագրվում կարճ, համառոտ ինֆորմացիաներ: Հաճախ տեղական ինֆորմացիաներին փոխարինում են միութենական նյութեր, որոնք միաժամանակ լույս են տեսնում կենտրոնական և հանրապետական թերթերում կամ ամսագրերում: Լուսանկարային ռեպորտաժը տակավին չի դարձել շրջանային թերթի պարբերաբար տպագրվող նյութ:

Խմբագրությունները պարտավոր են, ինչպես այդ մասին նշվեց ՍՄԿԿ XXVII համագումարին տրված Քաղաքական զեկուցման մեջ, լիովին գործադրել իրենց հնարավորությունները, տպագրել միայն լիարժեք նյութեր, որոնք հարազատ լինեն ընթերցողի սրտին ու հոգուն:

Կյանքի լայն լուսաբանումը խմբագրությունների պարտավորեցնում է ավելի մոտ կանգնել իրականությանը, նյութ քաղել աշխատավորական կոլեկտիվների բազմաբեղուն գործունեությունից, նրանց առօրյան պատկերել հետաքրքիր ձևով: Իսկ այդ բանին նրանք կհասնեն, եթե օրավուր բարձրացվի մամուլի լուսակցական դեկավարումը, խմբագրությունների աշխատողների ժուռնալիստական վարպետությունը, լիարժեք կադրեր պատրաստվեն հերթափոխի համար, հոգատարություն հանդես բերվի նրանց նկատմամբ:

**Ս. ԱՎԱԳՅԱՆ**
**Բանասիրական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր**

*Հանձնված է շարվածքի՝ 14.07.86 թ.: Ստորագրված է տպագրության՝ 8.08.86 թ.: ՎՖ 10705: Ֆորմատ՝ 70×108¹/16: Տպագրություն՝ բարձր, 8,4 պայմանական տպ. մամ., 9,4 հրատ. մամ.: Տպաքանակը՝ 17.732: Պատվեր՝ 1411:*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա № 2:*